

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՄԻ՛ՇՏ ՇԱՐՔՈՒՄ

## ՀԱՆԴԻՊՈՒՄ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԻ ՀԵՏ 1983 թ. օգոստոսի 15-ին

Կուսակցությունը ստեղծարար աշխատանքի և խաղաղության լենինյան կուրսով է առաջնորդում սովետական ժողովրդին՝ ռահվիրա ժողովրդին: Անձնուրաց, ինքնամոռաց աշխատանքը, մասսայական հերոսությունը և անմահ զինվորական սխրանքը դարձել են լենինյան կուսակցության միլիոնավոր ու միլիոնավոր հավատարիմ որդիների կենսագրությունների ընդհանուր ուղենիշները:

Կոմունիստները միշտ էլ եղել են առջևում, միշտ էլ մարդկանց ոգևորել են իրենց օրինակով, իրենց տոկունությամբ, սկզբունքայնությամբ, անկեղծությամբ, թե՛ զանգվածներին գլխավորելու և թե աշխատանքի հեղափոխական մեծ բանակի շարքային մարտիկներ լինելու մշտական պատրաստակամությամբ: Նրանք այսօր ևս արիաբար են աշխատում գործարանների արտադրամասերում, կոլտնտեսությունների ու սովխոզների դաշտերում, կոնստրուկտորական բյուրոներում և գիտական լաբորատորիաներում, ամենուրեք ցույց տալով իրենց քաղաքացիական, կուսակցական պարտքի կատարման բարձր օրինակներ: Իսկ նրանք, ովքեր վաստակած հանգստի են անցել, չեն դադարում երիտասարդության հետ աշխատելուց, հանդես են գալիս որպես կոմունիստական գաղափարների բոցաշունչ պրոպագանդիստներ:

1983 թ. օգոստոսի 15-ին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում տեղի ունեցավ ընկերներ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ, Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ, Գ. Վ. ՌՈՄԱՆՈՎԻ, Մ. Վ. ԶԻՄՅԱՆԻՆԻ, Ի. Վ. ԿԱՊԻՏՈՆՈՎԻ, Ն. Ի. ՌԻԺԿՈՎԻ հանդիպումը կուսակցության վետերանների հետ: Հանդիպումը բաց արեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԸ:

Հանդիպման ժամանակ հանդես եկան Վ. Պ. ՎԻՆՈԳՐԱԴՈՎԸ՝ 1915 թվականից ՍՄԿԿ անդամ, սովետների I համամիութենական համագումարի մասնակից, Լենինգրադի Հոկտեմբերյան հեղափոխության պետական թանգարանին աջակցող կուսակցության վետերանների խորհրդի նախագահ,, սոցիալիստական աշխատանքի հերոս. Պ. Դ. ԲՈՐՈԴԻՆԸ՝ 1932 թվականից ՍՄԿԿ անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս. Վ. Ի. ԿԻՍԵԼՅՈՎԸ՝ 1918 թվականից ՍՄԿԿ անդամ, Հայրենական մեծ պատերազմի և աշխատանքի վետերան, ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավոր, Կիև քաղաքի Պեչորսկի շրջանի կուսակցության վետերանների խորհրդի նախագահ. Պ. Կ. ԿՈԼԵՍՆԻԿՈՎԸ՝ 1932 թվականից ՍՄԿԿ անդամ, «Ռոստսելմաշ» գործարանի ռանդող բանվոր, բազմահաստոցայինների գործարանային շարժման նախաձեռնող, Դոնի կոմունիստական աշխատանքի առաջին հարվածայիններից մեկը. Ն. Դ. ՄՈՒԽԻՆԸ՝ 1930 թվականից ՍՄԿԿ անդամ, Բելոռուսիայի հողագործության գիտահետազոտական ինստիտուտի աշնանացան հացահատիկային կուլտուրաների սելեկցիայի և առաջնային սերմնաբուծության բաժնի վարիչ, սոցիալիստական աշխատանքի հերոս, Բելոռուսական ՍՍՀ գի-

**տության վաստակավոր գործիչ. Վ. Մ. ԲԱԽՈԼԴԻՆԱՆ՝ ՍՄԿԿ անդամ 1940 թվականից, ինժեներ, սոցիալիստական աշխատանքի հերոս, ՌՍՖՍՀ վաստակավոր մեխանիզատոր. Մ. Դ. ԹԱՇՄՈՒՀԱՄԵԴՈՎԸ՝ 1931 թվականից ՍՄԿԿ անդամ, պաշտոնաթող գեներալ-մայոր. Ն. Ն. ԳՈԼՈՎԱՅԿԻՆ՝ 1931 թվականից ՍՄԿԿ անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս, Ղազախական ՍՍՀ Թալդի-Կուրգանի մարզի «Հոկտեմբերի 40 տարին» կոլտնտեսության նախագահ. ՅԱ. Դ. ՉԱՆԻՇԵՎԸ՝ 1917 թվականից ՍՄԿԿ անդամ, քաղաքացիական պատերազմի և Հայրենական մեծ պատերազմի վետերան, պաշտոնաթող գեներալ-լեյտենանտ. Տ. Վ. ՖՅՈԴՈՐՈՎԱՆ՝ 1939 թվականից ՍՄԿԿ անդամ, սոցիալիստական աշխատանքի հերոս, Մոսկվայի «Մետրոշինի» պետի տեղակալ:**

**Ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԸ, որին հավաքվածները դիմավորեցին ջերմորեն: Նրա ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր ծափահարություններով:**

**ՍՄԿԿ-ի ղեկավարների հետ կուսակցության և աշխատանքի վետերանների հանդիպումն անցավ սրտագին, ընկերական մթնոլորտում: Վետերանները կուսակցությանը, նրա Կենտրոնական կոմիտեին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացրին, որ իրենց բոլոր ուժերը, գիտելիքները, փորձը նոր եռանդով ի սպաս կդնեն հայրենիքի սոցիալ-տնտեսական և հոգևոր զարգացման, նրա հզորության բազմապատկման և ժողովրդի բարեկեցության բարձրացման խնդիրների լուծմանը, մեր մարտական հերթափոխի՝ սովետական մարդկանց երիտասարդ սերնդի դաստիարակմանը:**

## ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Թանկագին ընկերնե՛ր:

Մեր խոսակցությունը, ինչպես և սպասում էինք, ստացվեց բովանդակալից, օգտակար, հենց այնպիսին, ինչպիսին որ ակնկալում էր քաղբյուրոն: Ես թերևս կառանձնացնեի այստեղ եղած ելույթների երեք բնորոշ գծեր:

Նախ՝ ակտիվությունը, կուսակցական խոր համոզվածությունը: Համոզվածությունը կոմունիստական իդեալների անանց նշանակության նկատմամբ, այն ուղու ճշտության նկատմամբ, որով ընթանում է կուսակցությունը: Եվ համոզվածությունն այն բանում, ընկերներ, որ այն ամեն լավի համար, որին մենք հավատում ենք, որին ձգտում է սովետական ժողովուրդը, հարկավոր է պայքարել, պայքարել անձնվիրաբար: Հենց վերջերս մենք նշեցինք ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-րդ տարեդարձը, համագումար, որտեղ ստեղծվեց աշխարհում առաջին նոր տիպի պրոլետարական կուսակցությունը: Հզոր, անպարտելի ուժ է դարձել բոլշևիկ-լենինյանների կուսակցությունը, որին վիճակվել էր համաշխարհային պատմական մեծ առաքելություն՝ նոր դարագլուխ բացել մարդկության պատմության մեջ, սկսել նոր, կոմունիստական քաղաքակրթության կառուցումը: Եվ այդ առաքելությունը ՍՄԿԿ-ն պատվով է կատարում:

Երկրորդ՝ ուրախացնում են մեր թե՛ հաջողությունների և թե այն պրոբլեմների գնահատման ռեալիզմը, կշռադատվածությունը, որոնք տակավին սպասում են իրենց լուծմանը: Չէ որ գիտականորեն հիմնավորված քաղաքականության անկապտելի նախադրյալներ են փաստերը տեսնել այնպես, ինչպես դրանք կան, ըմբռնել հասարակական կյանքի բարդությունը, նրա երևույթների հակասականությունը, ոչինչ չգունազարդել, բայց և չնսեմացնել արդեն կատարվածը:

Եվ, վերջապես, չեմ կարող չնշել այստեղ պարզորոշ հնչած ստեղծագործական-նորարարական երանգները: Չէ որ պատահում է, և այն էլ ոչ այնքան սակավ, որ կուտակված փորձը, հաստատված պատկերացումները,



սովորույթները, վարժվածությունը խանգարում են ընկալելու նորը, անսովորը: Բայց կոմունիստները, իսկական կոմունիստները բոլորովին այլ են: Նրանց համար կենսական փորձն ասես մի գագաթ լինի, որի վրա բարձրանալով կարելի է ավելի լավ տեսնել բացվող հորիզոնները: Այդպիսի փորձը ոչ թե բթացնում, այլ սրում է նորի զգացողությունը, առանց որի անկարելի է, անհնար է լուծել այն խնդիրները, որ մեր առջև դնում են կյանքը, զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրակտիկան:

Այնպես որ, կարելի է արձանագրել, որ կուսակցության վետերանների, աշխատանքի վետերանների կորպուսը լավ վիճակում է, աշխատանքային վիճակում: Սա շատ հաճելի է: Ասենք՝ ուրիշ կերպ չի էլ կարող լինել: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր: Կուսակցության ու ժողովրդի մեջ վետերանները միշտ էլ խոր հարգանք են վայելել: Այդ բառը սկզբնապես, ինչպես գիտեք, նշանակել է «հին զինվոր», իսկ ներկայումս «վետերան» հասկացությունը մեզանում հարստացել է նոր, հումանիստական իմաստով: Ո՛չ միայն կոփված ռազմիկ, այլև կադրային բանվոր, գյուղի աշխատավոր, վաստակավոր գիտնական, արտիստ, ուսուցիչ, բժիշկ՝ նրանց բոլորին շնորհակալությամբ և երախտագիտությամբ անվանում են վետերաններ: Դրանք անսպառ եռանդի, բարոյական բարձր հատկանիշների տեր մարդիկ են, հայրենիքին, կուսակցությանը հավատարմորեն ծառայող մարդիկ:

Վետերանները ողջ մարդկությանը հարստացրած նոր կյանքի կառուցման եզակի փորձ կրողներն են: Այդ փորձի պատմական դիապազոնն ընդգրկում է մի քանի սերունդների մեծագործություններ: Թվում է, թե այնքան էլ վաղուց չէր, որ վետերան կոչումով պատվում էին նախահեղափոխական ստաժ ունեցող կուսակցականներին, լենինյան գվարդիայի անձնուն մարտիկներին: Այնուհետև մեզ համար վետերաններ դարձան հարվածայինները՝ սովետական առաջին հնգամյակների ժամանակների սոցիալիստական մրցության նախաձեռնողները:

Ձեր մեջ կան նաև այնպիսիները, որոնցից մենք խորապես շնորհակալ ենք Հայրենական մեծ պատերազմի տարիներին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, թշնամուն ջախջախելու համար և աշխատանքային արիության համար:

Իսկ ժամանակը սրընթաց առաջ է գնում, և ահա արդեն այսօր վետերանների աստղաբույլին գումարվում են մեր և ձեր ժամանակակիցները, նրանք, ովքեր հերկել են խոպանը, կառուցել աշխարհի խոշորագույն հիդրոէլեկտրակայանները, գրոհել տիեզերքը... Այսպես է հյուսվում ժամանակների կապը: Յուրաքանչյուր սերնդի բաժին է ընկնում ընդհանուր մեծ աշխատանքի իր մասը: Եվ միայն կոմունիստական շինարարության բուն փորձն է միասնական ու անբաժանելի: Եվ մենք իրավունք չունենք կորցնելու այդ փորձի արժեքավոր թեկուզ մեկ հատիկը:

Ձեզ, ընկերներ, հրավիրելով Կենտրոնական կոմիտե, Կենտկոմի քաղբյուրոն հենց այն հույսն է ունեցել, որ խորհուրդ անենք ձեզ հետ, միասին մտածենք, թե ինչպես ավելի խելացիորեն և կոմունիզմի գործի համար առավելագույն օգտակարությամբ տնօրինենք վետերանների փորձը: Ընդ որում, ինչպես այստեղ իրավացիորեն շեշտվում էր, խոսքն այն մասին է, թե ավագ սերունդների փորձն ինչպես օգտագործենք մեր ժամանակի կոնկրետ խնդիրների, մեծապես նոր և նորովի բարդ խնդիրների լուծման համար:

Ընկերներն արդեն խոսեցին այդ խնդիրների մասին: Թույլ տվեք ես էլ մի քանի խոսք ասեմ նույն այդ թեմայով:

Դուք բոլորդ էլ, իհարկե, ծանոթ եք ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների նյութերին, պլենումներ, որոնք կուսակցության XXVI համագումարի որոշումները կոնկրետացրին տնտեսական շինարարության և գաղափարախոսական աշխատանքի պահանջմունքներին համեմատ:

Գործի էությունը, եթե խոսելու լինենք էկոնոմիկայի մասին, այն է, որ մենք թևակոխել ենք երկրի տնտեսական զարգացման նոր փուլ, մի այնպիսի

փոլ, երբ աճած հնարավորությունները և աճած հանրային պահանջմունքները թելադրում են տնտեսական ողջ աշխատանքի մակարդակը լրջորեն բարձրացնելու, էկոնոմիկայի արդյունավետությունն էականորեն մեծացնելու, մեր ողջ հսկայական տնտեսությունն անխափան գործող, լավ կարգավորված մեխանիզմ դարձնելու անհրաժեշտությունը: Այս մասին խոսվել է թե՛ կուսակցության համագումարներում և թե Կենտրոնական կոմիտեի պլենումներում:

Բայց պատշաճը հատուցելով այն աշխատանքին, որ կատարվել է այդ տարիների ընթացքում, մենք չենք կարող չխոստովանել, որ վերջին համագումարների առաջադրած խնդիրները տակավին հեռու են կատարված լինելուց: Եվ ամենից առաջ մեզ չեն կարող բավարարել էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղի փոխադրելու տեմպերը: Այստեղ պատճառները տարբեր են: Ըստ երևույթին ազդել է նաև այն, որ նոր խնդիրների լուծման ուղիները մենք փնտրել ենք անբավարար եռանդով, հաճախ դիմել ենք կիսատ-պռատ միջոցառումների, չենք կարողացել բավականաչափ արագ հաղթահարել կուտակված իներցիան:

Այժմ հարկավոր է լրացնել բաց թողնվածը: Սա, ի թիվս այլ միջոցառումների, նաև կպահանջի փոփոխություններ կատարել պլանավորման կառավարման ասպարեզում, տնտեսական մեխանիզմի մեջ: Եվ մենք պարտավոր ենք կատարելու այդպիսի փոփոխություններ, որպեսզի նոր հնգամյակ թևակոխենք, ինչպես ասում են, կազմ ու պատրաստ:

Իհարկե, ընկերնե՛ր, այնպիսի մասշտաբի և բարդ էկոնոմիկայի պայմաններում, ինչպիսին մերն է, պետք է միանգամայն զգույշ լինել: Ամենից շատ այստեղի համար է ասված այն առածը, թե յոթ չափիր, մեկ կտրիր: Հենց այս պատճառով էլ, պատրաստելով կարևոր որոշումներ, մենք ջանում ենք մանրակրկիտ կերպով ուսումնասիրել յուրաքանչյուր հարց, կատարում խոշոր մասշտաբի փորձեր, որպեսզի հանգիստ, առանց շտապելու ուսումնասիրենք, թե ինչպես են գործում առաջարկվող նորամուծությունները, դրանք ինչպես են ազդում պլանային և աշխատանքային կարգապահության վրա, աշխատանքի արտադրողականության, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության վրա:

Այժմ՝ գաղափարախոսական աշխատանքի մասին: Պլենում մենք անցկացրել ենք: Որոշում ընդունել ենք: Մնացել է գլխավորը՝ կատարել այդ որոշումը: Իսկ սա գործնականում ի՞նչ է նշանակում: Սա նշանակում է հաղթահարել խոսքի և գործի միջև, ցավոք, տակավին եղած խզումը: Սա նշանակում է սովորել մարդկանց հետ խոսել լրջորեն, անկեղծորեն, չշրջանցելով սուր անկյունները: Սա նշանակում է սիստեմատիկաբար բարձրացնել աշխատավորների քաղաքական կուլտուրան, որպեսզի յուրաքանչյուր մարդ, ընկերնե՛ր, դառնա հասարակական կյանքի գիտակից, անպայման գիտակից մասնակից:

Պարզ բան է, որ միայն խոսելով, նույնիսկ ամենալավ խոսքերով, ամենաընտիր խոսքերով այդ բանն անկարելի է անել: Մենք արդարացիորեն խոսում ենք տնտեսական աշխատանքի գաղափարախոսական ապահովման մասին: Բայց ոչ պակաս, եթե ոչ ավելի մեծ նշանակություն ունի գաղափարախոսական աշխատանքի տնտեսական կամ, ավելի լայնորեն՝ սոցիալական ապահովումը: Չէ որ ամեն կարգի անկարգությունները, անտնտեսվարությունը, օրենքների խախտումները, ընչաքաղցությունը, կաշառակերությունը արժեզրկում են հազարավոր ագիտատորների ու պրոպագանդիստների աշխատանքը:

Հետևաբար, խոսելով գաղափարախոսական աշխատանքի բարելավման մասին, մենք մեր առջև ունենք կոմպլեքսային, բազմապլանային այնպիսի մի խնդիր, որի լուծումը ենթադրում է ակտիվ գործողություններ բոլոր բնագավառներում: Եվ սա վերաբերում է ոչ միայն գաղափարախոսությանը: Յուրաքանչյուր խոշոր խնդիր պահանջում է այնպիսի կոմպլեքսային լուծում, որը հաշվի առնի թե՛ հոգևոր, թե՛ նյութական և թե կազմակերպական գործոնները: Օրինակի համար վերցնենք կարգապահության հարցերը: Սոցիա-



լիստական հասարակության բնույթին ներհատուկ է գիտակցական կարգապահությունը, որի արդյունքն է լավ, բարեխիղճ աշխատանքը: Իսկ որոշ տեղերում կարգապահության ամրապնդման կոչը մեկնաբանեցին լոկ որպես աշխատանքն սկսվելու պահից մինչև ավարտվելու պահն իր աշխատատեղում յուրաքանչյուրի ներկայության նկատմամբ վարչական անխոնջ ու անդադար վերահսկողություն: Իհարկե, հարկավոր է դրան էլ հետևել, պատժել գործալիքներին:

Բայց հարկավոր է մտածել նաև մի այլ բանի մասին: Իսկ իր աշխատատեղում մարդն ի՞նչ է անելու աշխատանքն սկսելու պահից մինչև ավարտելու պահը, ինչքանո՞վ է նա ծանրաբեռնված, ինչպե՞ս է նա կատարում իր առաջադրանքը, նրա համար արդյոք ստեղծվա՞ծ են արտադրողական աշխատանքի անհրաժեշտ պայմաններ: Ահա այս հարցերի մասին, իսկ սրանք վճռական հարցեր են, հոգացել են ամենևին էլ ոչ ամենուրեք:

Մինչդեռ սոցիալիստական կարգապահության էությունը յուրաքանչյուրի կողմից իր աշխատատեղում լրիվ հատուցում տալն է: Իհարկե, այդպիսի վիճակի հասնելն ավելի դժվար է, քան ուշացողներին մուտքի մոտ բռնելը: Բայց հենց այստեղ է գլխավորն ու հիմնականը: Այստեղ շատ բան բնականաբար կախված է գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի լավ դրվածքից: Բայց այդ աշխատանքը պետք է անպայման հենվի աշխատանքի ժամանակակից կազմակերպման վրա, մարդկանց խելացի տեղաբաշխման, նյութատեխնիկական հստակ ապահովման վրա, բարոյական ու նյութական խրախուսման բազմազան ձևերի ու միջոցների կատարելագործման վրա: Մի խոսքով՝ հենց հիմա իմ հիշատակած հոգևոր, նյութական ու կազմակերպական գործոնների զուգակցումը միայն կարող է տալ աշխատանքի բարձր կուլտուրա՝ արտադրության մեջ կարգուկանոնի և կարգապահության ամենահուսալի երաշխիքը:

Ես այս խնդիրների ու պրոբլեմների մասին այստեղ խոսում եմ այն պատճառով, որ դրանցից յուրաքանչյուրի լուծման գործում կուսակցությանը, ժողովրդին հարկավոր են ձեր փորձն ու գիտելիքները, թանկագին ընկերներ: Չէ որ սոցիալական ստեղծագործությունը, դեպի ապագա կատարվող շարժումն օրինաչափորեն ենթադրում են այն ողջ արժեքավորի պահպանում, երիտասարդության մասին վեճը այս կամ այն ձևով միշտ էլ եղել է. վա՛տն է երիտասարդությունը, թե՞ լավը իր նախորդներից:

Բայց կա աշխատանքի մի տեղամաս, որտեղ վետերանների փորձն ու գիտելիքները հարկավոր են առանձնապես: Կարծում եմ, դուք արդեն կռահեցիք, որ խոսքը վերաբերում է երիտասարդության հետ կատարվող աշխատանքին:

Մեր հասարակությունում կոնֆլիկտ չկա սերունդների միջև, ինչպես երբեմն ասում են՝ հայրերի ու որդիների միջև: Բայց սա բնավ չի նշանակում, թե այս հարցում մեզանում ամեն ինչ հարթ է: Չէ որ պատահական չէ, որ երիտասարդության մասին վեճը այս կամ այն ձևով միշտ էլ եղել է. վա՞տն է երիտասարդությունը, թե՞ լավը իր նախորդներից:

Երբեմն պատկառելի տարիքի մարդիկ փնթփնթում են, թե այս ի՞նչ երիտասարդություն է: Մի՞թե մենք այդպիսին էինք: Մյուս կողմից էլ կան նաև այնպիսի երիտասարդներ, որոնք հակում ունեն «հայրերի» մեղքը տեսնելու այն ամենի մեջ, ինչ իրենց դուր չի գալիս:

Անկեղծ ասած՝ այդպիսի վեճերը, իմ կարծիքով, նվազ արդյունավետ են: Երիտասարդ սերունդը մերինից ոչնչով վատը չէ: Նա միայն ուրիշ է, նորը: Իսկ նոր սերունդները չեն վերարտադրվում, ինչպես որ կատարում է պատճենահան մեքենան: Նրանցից յուրաքանչյուրը, անխուսափելիորեն հենվելով նախորդի փորձի վրա, աշխարհը գնահատում և յուրացնում է իր ձևով, ստեղծարար գործունեության մեջ ներդնելով նոր եղանակներ ու միջոցներ, հարմարվելով իր ժամանակի պայմաններին ու իրադրությանը:

Իսկ ընդհանուր առմամբ, ընկերնե՛ր, հարկ է խոստովանել, թեպետև այս բանը ոչ բոլորին է հեշտությամբ հաջողվում, որ յուրաքանչյուր նոր սերունդ մի ինչ որ բանով ուժեղ է նախորդից, ավելին գիտե, ավելի հեռուն է

տեսնում: Ձեզ հիշեցնեմ Լենինի խոսքերը. «Մենք պայքարում ենք ավելի լավ, քան մեր հայրերը: Մեր զավակները կպայքարեն առավել լավ, և նրանք կհաղթեն»: Այնպես որ, մենք և դուք, երբ սովորեցնում, դաստիարակում ենք երիտասարդությանը, պետք է հիշենք Լենինի այս խոսքերը:

Ի դեպ, չի կարելի մոռանալ նաև մի այլ բան: Երիտասարդները, ինչպես որ մյուս հասակների մարդիկ, տարբեր են լինում: Ներկայիս երիտասարդների գերակշիռ մեծամասնությունը կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցներ են, հայրերի գործի արժանավոր ժառանգորդներ և շարունակողներ: Բայց այս իսկ ընդհանուր փոնի վրա առանձնապես աչք են ծակում խնամառության, աշխատանքային ու հասարակական պասիվության, անկարգապահության փաստերը, որոնք հատուկ են երիտասարդության մի ինչ որ մասին: Չի կարող անհանգստություն չառաջացնել նաև երիտասարդության միջավայր թափանցող քաղքենիության վտանգավոր բորբոսը:

Նման երևույթների դեմ, նման տրամադրությունների դեմ հարկավոր է վճռականորեն պայքարել: Անհրաժեշտ է մեր ժառանգորդներին կյանքի նկատմամբ այնպիսի հայացք պատվաստել, որի դեպքում նյութական բարիքները (իսկ ժամանակի ընթացքում դրանք պետք է ավելի շատ լինեն ու ավելի շատ կլինեն) չճնշեն մարդուն, այլ ծառայեն նրա ամենաբարձր պահանջմունքների բավարարմանը: Միայն մարդու հոգևոր հարստությունն է հիրավի անսահման: Ու թեև այն դրամապանակի մեջ չես դնի և պատից չես կախի ի ցույց դնելու համար, մենք այդպիսի հարստության կուտակման կողմնակից ենք, որը մարդուն, սովետական մարդուն վայել միակ հարստությունն է:

Անանց նշանակություն ունի նաև երիտասարդների ռազմահայրենասիրական դաստիարակությունը, ինչի մասին այստեղ ճիշտ խոսեցին ընկերները:

Ընդհանուր առմամբ երիտասարդության հետ պետք է աշխատել և աշխատել՝ մշտապես հաշվի առնելով նրա առանձնահատկությունները, այն նոր պայմանները, որոնցում նա ապրում է: Եկեք հարցը դնենք այսպես. կուսակցության ամեն մի վետերան, աշխատանքի ամեն մի վետերան պետք է լինի երիտասարդության դաստիարակ: Թե ինչ ձևով կիրականացվի այդ առաքելությունը, թե ինչպես պետք է գործն ավելի լավ կազմակերպել, պետք է վետերանների հետ միասին մտածեն կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները:

Եվս մի դիտողություն՝ կապված երիտասարդության հետ: Ընկերնե՛ր, երիտասարդությունը մեր հերթափոխն է: Այս ֆրազը ծամծմված է հնչում: Սակայն այն բնավ էլ ծամծմված չէ ըստ էության: Ժամանակը բանում է երիտասարդության օգտին: Դա այդպես էլ պետք է լինի: Կարևոր է միայն վստահ լինել, որ մեզ փոխարինելու են գալիս այնպիսի մարդիկ, որոնք ոչ մի բանում չեն նահանջի Հոկտեմբերի դրոշից, Լենինի գաղափարներից, որոնք լավ, հիմնավորապես գիտեն իրենց գործը:

Կուսակցության և ժողովրդի հանդեպ մեր վետերանների մեծ ծառայությունն այն է, որ նրանք մեզ համար արժանի հերթափոխ են պատրաստում: Նրանց տեղը գրավում են այնպիսի մարդիկ, ովքեր ընդունակ են շարունակելու սկսված գործը, երբեմն նույնիսկ՝ ավելի մեծ հաջողությամբ: Եվ վետերանը պետք է միայն հպարտանա դրանով: Դա իրոք կուսակցական մոտեցում է, որն ապահովում է մեր փառապանծ լենինյան կուսակցության մեծ գործի հաջորդայնությունը:

Ամփոփենք արդյունքները: Կենտկոմի քաղբյուրոն լրիվ համամիտ է այստեղ արտահայտված այն կարծիքին, որ անհրաժեշտ է բարձրացնել վետերանների դերը բոլոր ոլորտներում, է՛լ ավելի արդիական բովանդակությամբ հարստացնել տնտեսական և հասարակական կյանքին նրանց մասնակցության առկա ձևերը: Վետերանները առանձնապես կարևոր ծառայություն կարող են մատուցել այնտեղ, որտեղ խոսքը վերաբերում է անհատի կատարելագործմանը, որտեղ ձևավորվում են բնավորությունները: Դրանք



պրոֆեսիոնալ վարպետության դպրոցներն են, քաղինֆորմացիայի սիստեմը, զինակոչիկների ու դեռահասների հետ, ինչպես նաև ըստ բնակության վայրի բնակչության հետ տարվող աշխատանքը, ժողովրդական համալսարանները, գիտատեխնիկական ստեղծագործության խմբակներն ու խմբերը, ժողովրդական վերահսկողությունը և ուրիշ շատ բան:

Ես համաձայն եմ նաև այն բանի հետ, որ անհրաժեշտ է հոգալ վետերանների ակտիվության բարձրացման մասին այն կուսակցական կազմակերպություններում, որտեղ նրանք հաշվառման մեջ են: Կբերեմ մի պճապիսի թիվ. այն կոմունիստների թիվը, որոնց հանձնված է «ՍՄԿԿ-ում գտնվելու 50 տարի» կրծքանշանը, մեզ մոտ գրեթե 220 հազար է: Դա մեծ ուժ է: Եվ հարկավոր է, որ կուսակցական կազմակերպությունների հետ նրանց կապերը չսահմանափակվեն, ինչպես որ պատահում է, անդամավճարների մուծումով և կուսակցական ժողովներին ներկա գտնվելով: Մասնավորապես լավ կլինեն, եթե կոմունիստների ավագ սերունդը գործուն կերպով մասնակցեր կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներին և կոնֆերանսներին, որոնք նախատեսված է անցկացնել 1983 թվականի վերջերին, 1984 թվականի սկզբներին:

Ընկերնե՛ր: Ասածս լիովին վերաբերում է նաև սովետներին, արհմիութենական և մյուս հասարակական կազմակերպություններին: Օգտակար կլինեն աշխուժացնել և նոր բովանդակությամբ հարստացնել վետերանների զանազան խորհուրդների գործունեությունը, որոնք գոյություն ունեն ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում, բանակում, տեղական շատ կուսակցական կազմակերպությունների կից:

Չի կարելի չնշել նաև այնպիսի մի ուրախալի փաստ, ինչպիսին է վաստակած հանգստի գնացած շատ վետերանների ձգտումը՝ ուժերը ներածին չափ շարունակելու աշխատանքային գործունեությունը: Այդ ազնիվ ձգտման համար պետք է ստեղծվի առավել բարենպաստման ռեժիմ: Այստեղ հսկայական դեր են խաղում տակտը, ուշադրությունը, հոգատար վերաբերմունքը վետերանների առողջության, նրանց անձնական ձգտումների նկատմամբ, որպեսզի յուրաքանչյուրի համար գործ գտնվի ըստ նրա ուժերի ու նրա սրտով: Ի դեպ, այդպես պետք է վերաբերվել վետերաններին բոլոր դեպքերում՝ խոսքը վերաբերի նրանց աշխատանքային ավանդին, թե նրանց հասարակական գործունեությանը:

Չեմ ուզում շրջանցել նաև մյուս ոչ պակաս կարևոր հարցերը: Տարիքն այնուամենայնիվ տարիք է, և վետերանի վաստակած հանգստի անցնելը կապված է սովորական կենսական ստանդարտների փոփոխման հետ: Հեշտ չէ սիրած գործով ակտիվորեն զբաղվելուց հեռանալը: Մարդու տարիքի համեմատ հետամուտ են լինում հիվանդությունները: Երբեմն այդ ամենն ուղեկցվում է հոգեկան ծանր ապրումներով: Այդ ամենից լրիվ ազատվել չի կարող նույնիսկ ամենակատարյալ հասարակությունը: Բայց թեթևացնել թե՛ հոգեկան ապրումները և թե նյութական դժվարություններն այնտեղ, որտեղ դրանք կան, մենք կարող ենք ու պետք է անենք:

Վերջերս որոշում ընդունվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության և քաղաքացիական պատերազմի մասնակիցների անհատական կենսաթոշակների մասին: Այստեղ կան նաև ավելի ընդհանուր հարցեր: Եվ մենք կզբաղվենք դրանցով: Թեև ֆինանսական հնարավորությունները թույլ չեն տալիս այդ բանն անել այնքան արագ, որքան կուզենայինք:

Բայց չէ որ, ընկերնե՛ր, ամեն ինչ չէ, որ հանգում է ֆինանսներին: Ավելի շատ հոգատարություն, ավելի շատ պարզ մարդկային ուշադրություն, կարեկցանք, հարգանք: Ահա թե ինչ է հարկավոր: Եվ յուրաքանչյուր կուսակցական կամ արհմիութենական կազմակերպություն, յուրաքանչյուր պետական հիմնարկություն, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ և յուրաքանչյուր մարդ պետք է միշտ հիշի այդ բանը:

Վերջում, թանկագին ընկերնե՛ր, ահա թե ինչ կուզենայի ասել: Մեր հանդիպումը տեղի է ունենում, ինչպես ասում են, նեղ շրջանակով: Բայց ես այն

հասկանում եմ որպես անկեղծ խոսակցություն միլիոնավոր վետերանների հետ: Եվ ես համոզված եմ. այն, ինչ ասվեց այստեղ, ըմբռնում և պաշտպանություն կգտնի բոլոր նրանց կողմից, ովքեր անցել են կյանքի այն նույն ուղիներով, ինչ և դուք:

Խորին շնորհակալություն ձեզ, ընկերնե՛ր, զրույցին ակտիվորեն մասնակցելու համար: Ձեր արտահայտած բոլոր մտքերը, ձեր բոլոր առաջարկությունները կուսումնասիրվեն ամենայն մանրակրկիտությամբ:

Թույլ տվեք ձեզ և ձեր մերձավորներին մաղթել առողջություն, հաջողություններ, ամենայն բարիք: **(Երկարատև ծափահարություններ):**

# ԸՆԿԵՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԲԱՑՄԱՆ ԽՈՍՔԸ

Հարգելի ընկերնե՛ր:

Թույլ տվեք ինձ, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնարարությամբ, ողջունել այս դահլիճում հավաքված կուսակցության վետերաններին, աշխատանքի վետերաններին:

Ե՛վ այսօրվա մեր հանդիպումը ՍՄԿԿ Կենտկոմում, և՛ սովետական հասարակության տարբեր սերունդների, սոցիալական տարբեր խմբերի ներկայացուցիչների հետ մյուս հանդիպումները ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն դիտում է որպես լենինյան ավանդույթի շարունակում:

Ընկերնե՛ր: Դուք ներկայացնում եք սովետական մարդկանց այն սերունդներին, որոնց վիճակվել էր շատ ծանր և դրա հետ մեկտեղ ամենապատվավոր պատմական առաքելությունը՝ հեղափոխություն կատարել, փլատակներից բարձրացնել երկիրը, դնել սոցիալիզմի հիմքը: Ձեզնից շատերը խանձվել են պատերազմի հրեղեն շնչով:

Դրանք դժնդակ ժամանակներ էին: Մենք մահու կռիվ էինք մղում: Ստիպված էինք կիսաքաղց մնալ ու թերասնվել: Ստիպված էինք աշխատել, ինչպես ասվում է, հյուծվելու աստիճան: Բայց վեհ նպատակը մեծ եռանդ էր ծնում: Սովետների երկիրը ոտքի էր կանգնում, ամրապնդվում, առնականանում, զենքը ձեռքին պաշտպանում իրեն: Եվ այստեղ հավաքվածներից յուրաքանչյուրը, ինչպես և ձեր միլիոնավոր հասակակիցները, կարող է հպարտությամբ հետադարձ հայացք նետել անցած ուղուն՝ ինքնամոռաց աշխատանքի և հերոսական մեծագործությունների ուղուն:

Անշուշտ, մենք ձեզ կուսակցության Կենտրոնական կոմիտե ենք հրավիրել ոչ միայն նրա համար, որ կրկին հարգանքի ու երախտիքի խոսքեր ասենք: Կուսակցության վետերանները, աշխատանքի վետերաններն իրենց մեջ կուտակում են ողջ սովետական ժողովրդի հսկայական փորձը: Եվ ցանկալի կլինեի, որ այդ փորձը և ձեր գիտելիքները շարունակեին առավել ակտիվորեն ծառայել մեր ընդհանուր գործին, այն խնդիրների լուծմանը, որ այժմ կանգնած են կուսակցության ու ժողովրդի առջև, սովետական մարդկանց բոլոր սերունդների առջև:

Ահա թե ինչու, այսօր հանդիպելով ձեզ հետ, լենինյան կուսակցության հարգելի վետերաններ, մենք կցանկանայինք խոսակցություն բացել այն մասին, թե ինչպես ավելի լավ, ավելի մեծ օգտակարությամբ օգտագործել ձեր փորձն ու գիտելիքները: Հասկանալի է, նման խոսակցությունը ենթադրում է և՛ հարցադրումներ, և՛ քննադատական դատողություններ, և՛ թերությունների վերլուծություն: Մի խոսքով, եկեք խոսենք անկեղծորեն, կուսակցականորեն, լենինաբար:

Ահա թե ինչ էի ուզում ասել որպես փոքր ներածություն մեր զրույցի առթիվ:

Իսկ այժմ, խնդրեմ, ընկերնե՛ր, ո՞վ կսկսի: Ո՞ւմ տալ խոսքը:



# ՀԱՆԴԻՊՄԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻ ԵԼՈՒՅԹՆԵՐԸ

Վ. Պ. ՎԻՆՈԳՐԱԴՈՎ: Դիմելով ընկեր ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻՆ նա ասում է. Թույլ տվեք նախ և առաջ անկեղծորեն, ամբողջ հոգով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին շնորհակալություն հայտնել կուսակցության վետերանների հանդեպ ցուցաբերվող մշտական ուշադրության համար: Այսօր մենք մեծ գոհունակությամբ ենք զգում, թե Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի գործերում ինչպես է մարմնավորվում կուսակցական ղեկավարման լենինյան ոճը: Դա առանձնակի ուժով դրսևորվեց այն գործնական միջոցառումներում, որ կուսակցությունը ձեռնարկում է ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների որոշումներին և Ձեր, Յուրի Վլադիմիրովիչ, ելույթներում շարադրված դրույթներին համապատասխան:

Մենք՝ կուսակցության վետերաններս, ջերմորեն պաշտպանում ենք սոցիալիստական կարգապահությունն ու կարգուկանոնն ամրապնդելու կուսակցության և կառավարության որոշումները: Մենք, որ մեր աշխատանքային ու հեղափոխական դպրոցն անցել ենք բանվորական կոլեկտիվներում, լավ ենք հասկանում, որ միայն գիտակից, ստեղծագործական ու կարգապահ աշխատանքն է ստեղծում մեր բոլոր արժեքներն ու հարստությունները, կռում ժողովրդի բարեկեցությունը: Մեզանից շատերը դա լսել են անձամբ մեծ Լենինի շուրթերից:

Այսօր ես ուզում եմ զեկուցել, որ ՍՄԿԿ-ի վետերանները շատ բան են անում, որպեսզի բարձրացնեն մեր երիտասարդության դասակարգային գիտակցությունը, նրան դաստիարակեն մեր կուսակցության և ժողովրդի հեղափոխական, աշխատանքային ու մարտական ավանդույթներով: Այստեղ ներկա է Միխայիլ Վասիլևիչ Ռուսյակովը: Նա ակտիվորեն աշխատում է որպես կուսակցության Լենինգրադի Մոսկովյան շրջկոմին առընթեր վետերանների խորհրդի նախագահ:

Վետերանները մեծ ուշադրություն են դարձնում բանվորական պրոֆեսիաների նկատմամբ սեր ու հարգանք դաստիարակելուն՝ մասնավորապես պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների սովորողների շրջանում, բանվոր դասակարգի արժանի համալրման պատրաստմանը: Այսօր ութ հարյուրից ավելի լենինգրադցի բանվորներ, աշխատանքի վետերաններ, արտադրության առաջավորներ փոխադրվել են աշխատելու պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում: Իրենց վարպետությունը, կյանքի հարուստ փորձը երիտասարդությանն են հաղորդում սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոսներ Վասիլի Ալեքսանդրովիչ Սմիռնովը՝ Բալթիական գործարանից, և Իժորցի փականագործ Աֆանասի Պրոկոֆևիչ Միխալևը, սոցիալիստական աշխատանքի հերոս, «Բարիկադա» միավորման ամրանագործ Բորիս Ալեքսանդրովիչ Ժուրավլյովը և շատ ու շատ ուրիշներ:

Մենք բոլորս էլ ձգտում ենք, որ երիտասարդների հետ յուրաքանչյուր հանդիպում գաղափարական տոկունության և սովետական հայրենասիրության լիցք հաղորդի պատանիներին ու աղջիկներին: Իսկ այդ ժամանակ մենք մոռանում ենք մեր տարիքը:

Դրա հետ մեկտեղ, հանդիպելով երիտասարդության հետ, մենք հաճախ նկատում ենք սպառողական վերաբերմունք կյանքի նկատմամբ, պատանիների ու աղջիկների մի մասի խնամառուական տրամադրությունները: Դա բացատրվում է նախ և առաջ նրանց աշխատանքային դաստիարակության մեջ եղած վրիպումներով: Եվ կարծում ենք, որ Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումում շատ ժամանակին դրվեց մեր դպրոցի ռեֆորմի հարցը:

Իհարկե, վերակառուցման կոնկրետ ուղիներն ու ձևերը կառաջարկեն մեր գիտնականներն ու մասնագետները, բայց դրա իմաստը, կարծում եմ, պետք է հանգի նրան, որ դպրոցը ուսուցումն ավելի լավ միահյուսի արտադրական աշխատանքի հետ, ընդհանուր կրթության հետ միասին պատանիներին ու աղջիկներին տա բանվորական մասնագիտություն: Լենինգրադում և մարզում պրոֆտեխուսումնարանների սիստեմի միջոցով միջնակարգ կրթության որակյալ

բանվորների պատրաստման մեծ փորձ է կուտակված։ Մեր կարծիքով, այդ փորձը պետք է ավելի լավ օգտագործվի։

Ըստ երևույթին պետք է ավելի պահանջկոտ մոտեցում ցուցաբերել նաև ընտանեկան դաստիարակության նկատմամբ, արդեն ունեցած փորձն ու աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքը լայնորեն օգտագործել երեխաների վարքագծի ու բարոյական նկարագրի համար ծնողների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով։ Եվ առաջին հերթին պետք է ավելի խստիվ հաշիվ պահանջել կոմունիստ ծնողներից։

Բոլորս էլ խոր գոհունակությամբ ընդունեցինք ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախապատրաստման առնչությամբ Ձեր, Յուրի Վլադիմիրովիչ, արտահայտած դրույթները։ Այդ դրույթները գաղափարատեսական ու քաղաքական լավ հիմք են հանդիսանում այն բանի համար, որ կուսակցական ծրագիրը տա ներկայի ռեալիստական վերլուծությունը, հստակորեն սահմանի ապագա անելիքները։

Պ. Դ. ԲՈՐՈԴԻՆ։ Այսօր ես առանձնակի գոհունակությամբ եմ ուզում շեշտել, ասում է նա, որ մեր Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների որոշումները ջերմ արձագանք են գտել սովետական մարդկանց սրտերում, խորապես բարերար ներգործություն են ունենում մեր ողջ կյանքի, մեր բոլոր գործերի վրա։

Սա իսկական լենինյան ավանդույթ է, երբ պետական ու հասարակական կյանքի խոշոր հարցերը, որոնց վերաբերյալ կարևոր որոշումներ են կայացվում, նախապես քննարկվում են աշխատավորական կոլեկտիվներում։ Ես դա գիտեմ Լիխաչովի անվան գործարանի բազմահազարանոց կոլեկտիվի փորձով, որտեղ ես քսան տարի դիրեկտոր եմ եղել և որի հետ մինչև օրս էլ ամենասերտ կապերս չեմ խզում։ Նախքան աշխատանքային կարգապահության վերաբերյալ որոշում ընդունելը Կենտրոնական կոմիտեն նախագծի հետ ծանոթացրեց և լսեց աշխատավորական շատ կոլեկտիվների, այդ թվում և՝ Լիխաչովի անվան գործարանի կարծիքը։ Դա շատ դուր եկավ մարդկանց։ Նրանք ասում են, որ հենց դա է մեր իսկական սովետական դեմոկրատիան, կուսակցության կապը զանգվածների հետ։

Մենք այժմ մոտեցել ենք տնտեսական ոլորտի մի շարք հանգուցային խնդիրների լուծմանը, որոնցից կարևորագույններն են աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացումը և գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացումը։ Այդ կապակցությամբ ես կկամենայի որոշ նկատառումներ հայտնել։ Մենք բոլոր հնարավորություններն ունենք, որ նոր տեխնիկայի ներդրման տեմպերն ու օգտագործման արդյունավետությունն զգալիորեն ավելի բարձր լինեն, քան այսօր։

Պետք է ավելի ազդու միջոցներ ձեռնարկել՝ ապահովելու այն ճյուղերի ավելի արագ զարգացումը, որոնք, վերջին հաշվով, տեխնիկական առաջընթացի հիմքն են, այն է՝ ժամանակակից էլեկտրոնային հաշվողական տեխնիկան, տեխնոլոգիական սարքավորումների կառավարման համակողմանի համակարգերը, ավտոմատ նախագծման միջոցները, հաստոցաշինությունը, ռոբոտատեխնիկան, նոր պրոգրեսիվ նյութերը։ Դրանով է անմիջականորեն պայմանավորված արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության աճը։ Իհարկե, այստեղ խնդիրը հեշտ չէ, բայց հավանաբար պետք է մշակել երկարաժամկետ կոմպլեքսային նպատակային ծրագիր, որն ապահովեր արդյունաբերության տեխնիկական վերազինումը։

Վերջերս ընդունվեց «Պլանավորման ու տնտեսական գործունեության բնագավառում արդյունաբերության արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքներն ընդլայնելու և աշխատանքի արդյունքների համար նրանց պատասխանատվությունն ուժեղացնելու լրացուցիչ միջոցառումների մասին» որոշումը։ Այն նախատեսում է տնտեսական լայն գիտափորձ ձեռնարկել, մասնավորապես ընդլայնում են ձեռնարկությունների իրավունքները։

Կենսագործելով այդ որոշումը, օգտակար կլիներ բարձրացնել արտա-



դրական կոլեկտիվների դերն ու պատասխանատվությունը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության իրականացման, այդ թվում նվազագույն ծախսերով տեխնիկական առաջընթացի նվաճումների ներդրման գործում։ Ձեռնարկությունները կապիտալ ներդրումների համար միջոցները պետք է վաստակեն, այլ ոչ թե խնդրեն վերադաս մարմիններից։ Այդ դեպքում նրանք այդ միջոցները նույնպես կծախսեն առավելագույն արդյունավետությամբ։ Ձեռնարկությունները նոր շինարարության կդիմեն միայն գործող արտադրության հնարավորություններն սպառելուց հետո։ Այդ դեպքում զարգացման ֆոնդը կստանա իր նպատակահարմար նշանակությունը։

Վ. Ի. ԿԻՍԵԼՅՈՎ։ Այս դահլիճում ներկա գտնվող մեզանից յուրաքանչյուրի համար մեծ պատիվ է լինել հին բոլշևիկների հետ կուսակցության ղեկավարների հանդիպման մասնակիցը։ Վստահ եմ, որ ՍՄԿԿ Կենտկոմում այս հանդիպումը ջերմ արձագանք կգտնի ամեն մի վետերանի սրտում, ուժերի նոր հորձանք կառաջացնի մեր մեջ։

ՍՄԿԿ Կենտկոմը շատ բան է արել վերջին ժամանակներս։ Նրա անդուլ գործունեության մասին են վկայում նաև սիստեմատիկ հաղորդումները ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում քննարկված հարցերի մասին։ Հանդիպելով ընկերներիս, լինելով աշխատավորական կոլեկտիվներում, ես տեսնում եմ, թե մարդիկ ինչպիսի միահամուռությամբ են հավանություն տալիս արտադրությունն ինտենսիվացնելու, կարգապահությունը, կազմակերպվածությունն ու կարգուկանոնը ամրապնդելու կուսակցության գծին։ Դա մեր բոլոր պլանների կատարման, նախատեսված նպատակների իրականացման անհրաժեշտ պայմանն է։ Ահա թե ինչու ամբողջ սրտով քվեարկում ենք զանազան կարգի խախտումներն արմատախիլ անելու օգտին, այն բարձր պահանջկոտության օգտին, որ ներկայացվում է բոլոր աստիճանների խախտողներին՝ բանվորից մինչև մինիստրը, շարքային կոմունիստից մինչև կուսակցական կոմիտեի քարտուղարը։

Պարենային և էներգետիկ ծրագրերը նպատակամղված են խաղաղ խնդիրների լուծմանը, երկրի հզորության աճին։ Էներգետիկ ծրագիրը հունիսյան պլենումում անվանվեց յուրատեսակ ԳՈԷԼՌՈ ժամանակակից պայմաններում։ ԳՈԷԼՌՈ-ի պլանի կատարմանը մասնակցելը իմ կենսագրության մի մասնիկն է։ Սովետների VIII համառուսաստանյան համագումարում՝ 1920 թվականի դեկտեմբերին ես քվերակեցի դրա ընդունման օգտին։ Այնուհետև աշխատել եմ այդ վիթխարի պլանի իրականացման համար։ Եվ ինչ երջանկություն է տեսնել, որ մեծ գործերի էստաֆետը շարունակվում է։

Բայց հաջողությամբ նոր հասարակություն ստեղծելու, պայծառ ապագա կառուցելու համար հարկավոր է նախ և առաջ «կերտել» հենց իրեն՝ մարդուն, ձևավորել կոմունիստական իդեալների իրականացման համար պայքարող տոկուն, համոզված մարտիկի։ Մենք միանգամայն ճիշտ ենք համարում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի այն դրույթը, որ պատանեկությանը պետք է ավելի լայնորեն ներգրավել օգտակար աշխատանքի, հասարակական գործունեության մեջ, ուժեղացնել նրա ռազմահայրենասիրական դաստիարակությունը։

Երիտասարդությանը հարկավոր է դաստիարակել վստահությամբ, պատասխանատու հանձնարարություններ տալով։ Այդ ինչպե՞ս է, որ քաղաքացիական կռիվների, Հայրենական պատերազմի տարիներին անբեղ պատանիները կարողանում էին ղեկավարել ստորաբաժանումներ։ Կամ վերցնենք ողջ երկրին հայտնի մեխանիզատոր, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս Ալեքսանդր Վասիլևիչ Գիտալովին, որը 13 տարեկանում արդեն տրակտոր էր վարում։ Եվ դեռ ինչքա՞ն այդպիսի օրինակներ կարելի է բերել։ Մինչդեռ այսօր նրա գրեթե կրկնակի տարիքն ունեցող մասնագետը արտադրությունում հաճախ համարվում է ոչ հասուն։ Նրան երբեմն չեն համարձակվում ինքնուրույն աշխատանք հանձնարարել։ Արդյոք դա չի՞ հարուցում մեր երիտասարդության մի մասի հասարակական պասիվությունը։

Կուսակցության՝ Սովետական Ուկրաինայի մայրաքաղաքի վետերանները, վերջում ասաց Վ. Ի. Կիսելյովը, ինձ խնդրել են ՍՄԿԿ Կենտրոնական կոմի-

տերին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին սրտագին շնորհակալություն հայտնել այն մեծ հոգատարության համար, որ ցուցաբերվում է հին բոլշևիկներիս հանդեպ: Մեր ոգին ջահել է: Եվ քանի դեռ բաբախում են մեր սրտերը, մենք եռանդագին կաշխատենք հօգուտ հանուր բարօրության, կպայքարենք հանուն մեծ Լենինի գործի:

Պ. Կ. ԿՈԼԵՍՆԻԿՈՎ: Շուտով արդեն կլրանա ութսունս: Աշխատանքային ստաժս 60 տարուց ավելի է: Դրանից 52-ը աշխատում եմ «Ռոստսելմաշում»: Ասեմ, որ ուժեր ունեմ, մտադիր չեմ թողնել աշխատանքը և դեռ կաշխատեմ Հարազատ գործարանում որպես ռանդող: Հպարտանում եմ, որ իմ աշակերտներից շատերը շարունակում են իմ գործը:

Արդեն կես դար է, ինչ լենինյան կուսակցության շարքերում եմ: Եվ ինձ համար ուրախալի է տեսնել, թե ինչպես է աճել մեր կուսակցությունը, թե որքան մեծ է նրա հեղինակությունը ներքին ու միջազգային գործերում, թե ինչպես հավատարմորեն է նա ծառայում ժողովրդին: Մենք գիտենք, կուսակցությունն ամեն ինչ անում է, որ մեր երկիրը լինի է՛լ ավելի ամուր, իսկ մարդիկ ապրեն է՛լ ավելի լավ: Կուսակցության քաղաքականությունը մեր՝ ժողովրդի քաղաքականությունն է:

Ելույթ ունենալով մոսկվացի հաստոցաշինարարների առջև, Դուք, Յուրի Վլադիմիրովիչ, ասացիք, որ «Դոն—1500»-ը գյուղատնտեսության համար պետքական մեքենա է: Ձեր այդ խոսքերը ռոստսելմաշցիներիս համար կուսակցության պատվիրան են: Եվ ես կարող եմ կուսակցության Կենտրոնական կոմիտեին զեկուցել, որ նոր կոմբայնի թողարկման նախապատրաստությունն ընթանում է ըստ պլանի: Բայց պետք է ուղղակի ասեմ, որ մենք կարող էինք շատ ավելիին հասնել, եթե գործի դնեինք մեր բոլոր հնարավորությունները: Իսկ մեզ մոտ չօգտագործված ռեզերվները դեռ քիչ չեն:

Վերցնենք թեկուզ կարգապահությունը: Բանվորները լավ ընդունեցին կարգապահության ամրապնդման միջոցառումները: Բանվորներն ասում են, որ այդ միջոցառումները հասունացել էին, դրանք համապատասխանում են մեր շահերին: Պետք է ասել, անփույթ մարդիկ դեռ շատ կան: Այդպիսիք կան նաև կոմունիստների շրջանում. աշխատում են առանց եռանդի, անցնում թեթևությունների կողքով, ապրում «Իմ բանը չէ» սկզբունքով: Կարծում եմ, որ անտարբերությունն այսօր էլ մնում է ամենամեծ չարիքը: Ուղղակի կասեմ, մեզ մոտ անչափ շատացել են գթասիրտ մարդիկ, իսկ մենք ամենքս պետք է լինենք ավելի խստապահանջ, երբ խոսքը վերաբերում է ժողովրդի, երկրի շահերին:

Երկու խոսք վարպետի դերի մասին: Լավ եմ հիշում այն ժամանակները, երբ վարպետը ամենահեղինակավոր մարդն էր: Իսկ հիմա, դատում եմ մեր գործարանի օրինակով, նրա դերը նվազում է: Երբեմն նույնիսկ հաշվի էլ չեն առնում նրա կարծիքը: Հարկավոր է մտածել նաև նրա աշխատանքի վարձատրության մասին: Մի խոսքով, վարպետի հեղինակությունը պետք է բարձր լինի: Վարպետը՝ դա կարգապահություն է, դա որակ է, դա արտադրողականություն է:

Բանվորներին հուզում է այնպիսի մի բացասական երևույթ, ինչպիսին հարբեցողությունն է: Դեռևս շատ կան սպեկուլյացիայի, կաշառակերության, հասարակության հաշվին առանձին անձանց հարստանալու փաստեր: Առանձնապես ուզում եմ խոսել սպառման մասին: Երբեմն խոսքը վերաբերում է ոչ թե առաջին անհրաժեշտության ապրանքներին, այլ պերճանքի առարկաներին: Սպառողական կրքերը երբեմն անչափ բորբոքվում են: Կարծում եմ, հարկավոր է ավելի խիստ հսկողություն հաստատել աշխատանքի և սպառման չափի նկատմամբ: Հասունացել է նաև մի այսպիսի հարց. հայտնի է, որ մեզ մոտ վարձատրությունը կատարվում է գլխավորապես հետևյալ կերպ. ավելի շատ բան ես արել՝ ավելի շատ ստացիր: Այսօր պետք է դրան մոտենալ նոր ձևով. ավելի լավ ես արել՝ ավելի շատ ստացիր: Հարկավոր է աշխատավարձն ավելի սերտորեն կապել աշխատանքի որակի հետ:

Պ. Կ. Կոլեսնիկովն իր ելույթի վերջում ասաց.



Մենք գիտենք, թե այժմ որքան է շիկացած մթնոլորտն աշխարհում: Թշնամիներն ուզում են դանդաղեցնել մեր առաջընթացը, նույնիսկ վերջ տալ կոմունիզմին: Բայց մենք հիշում ենք նախնիների պատգամը. բարուն՝ բարով, խոտորնակին՝ խոտորնակ: Թշնամիների մտահղացումները վիժեցնելու համար կա միայն մի ուղի՝ ամրապնդել սիրելի հայրենիքի հզորությունը: Եվ մենք ջանք չենք խնայի հայրենիքի հզորությունը մեր աշխատանքով բազմապատկելու համար:

Ն. Դ. ՄՈՒԽԻՆ: Լենինյան կուսակցության ղեկավարությամբ, ասում է նա, սովետական մարդկանց բոլոր սերունդների աշխատանքով ստեղծված էկոնոմիկան, դրա ներկայիս մասշտաբները և զարգացման հնարավորությունները պահանջում են է՛լ ավելի ուժեղացնել պետական, պլանային և աշխատանքային կարգապահությունը: Առանց պատշաճ կարգապահության մենք չենք կարողանա արագորեն առաջ ընթանալ: Սակայն ինչպես որ ամեն մի մեծ գործում, մեզ մոտ կան այնպիսի երևույթներ, որոնք արգելակում են առաջընթացը, մեծ վնաս հասցնում մեր երկրի էկոնոմիկային: Դա գործալիքների, չվողների, այն մարդկանց առկայությունն է, ովքեր ձգտում են հարստանալ հասարակության հաշվին:

Մեր էկոնոմիկային պակաս վնաս չեն հասցնում նաև որոշ ղեկավարների շրջանում նկատվող անկարգապահությունը, անպատասխանատվությունը: Ի՞նչ ենք տեսնում երբեմն: Առանձին աշխատողներ չեն ապահովում պլանների, պայմանագրային պարտավորությունների կատարումը: Եվ նրանք այդ բանը մարսում են: Նրանք տարիներ շարունակ զբաղեցնում են պոստեր, ձախողելով գործը: Հարկավոր է ավելի խիստ պատասխան պահանջել այդպիսի ղեկավարներից, իսկ աշխատել չիմացողներին՝ ազատել:

Կուսակցությունն ու կառավարությունը մեզ՝ գիտնականներիս, ամեն տեսակ աջակցություն և ուշադրություն են ցույց տալիս: Պատասխանելով կուսակցության հոգատարությանը, մեր երկրի գիտնականները գիտությունը հարստացրել են նոր հայտնագործություններով և գյուտերով: Բայց արդյոք բոլո՞ր գիտական մշակումներից է, որ մենք համապատասխան հատույց ենք ստանում: Դժբախտաբար՝ ոչ: Դրանցից շատերը պահվում են պահարաններում և հնանում, իսկ չէ որ դրանց վրա ժամանակ, ուժեր ու միջոցներ են ծախսվել: Իմ կարծիքով, չեն մշակված գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների ներդրման սիստեմ և հստակ մեխանիզմ:

Մենք լավ գիտենք, թե ինչպիսի բարդ պրոբլեմներ էլ որ մեզ մոտ ծագեն, դրանք անկասկած հաջողությամբ լուծվում են, եթե դրանց լուծմանը ձեռնարկում են կուսակցությունը, ՍՄԿԿ Կենտկոմը: Ուստի, ըստ երևույթին, նպատակահարմար կլիներ, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցը քննության առնվեր ՍՄԿԿ Կենտկոմում: Դա, անկասկած, հսկայական դեր կխաղար արտադրողական ուժերի հետագա զարգացման գործում:

Վերջում Ն. Դ. Մուխինն ասաց. Մենք՝ պատերազմների ողբերգությունը տեսած վետերաններս, ջերմորեն պաշտպանում ենք ՍՄԿԿ Կենտկոմի և նրա քաղբյուրոյի խաղաղասիրական քաղաքականությունը: Աշխարհում իրադրությունը սրվում է, այն շիկացնում են ամերիկյան իմպերիալիստները: Բայց նրանք պետք է իմանան՝ սովետական մարդկանց չես ահաբեկի:

Թույլ տվեք իմ ընկերների՝ Սովետական Բելոռուսիայի կուսակցական կազմակերպության վետերանների անունից ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին անկեղծ շնորհակալության ու երախտագիտության խոսքեր հղորդել աշխարհի խաղաղության պահպանման, երկրի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման նպատակով կատարվող հսկայական, հիրավի վիթխարի աշխատանքի համար: Թույլ տվեք ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին հավաստիացնել, որ մենք՝ ավագ սերնդի կոմունիստներս, այսուհետ ևս հավատարմորեն կծառայենք լենինյան կուսակցությանը, մեր ուժերի ներածին չափ ավանդ կներդնենք կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում:

Վ. Մ. ԲՄԽՈԼԴԻՆԱ։ Ավագ սերնդի փորձն ուժերի անձնուրաց նվիրաբերման, կուսակցության գործին, հայրենիքին անսահման նվիրվածության օրինակ է։ Եվ մեզ՝ վետերաններիս համար առանձնապես ուրախալի է, որ այդ փորձը պահպանվում և բազմապատկվում է։

Իմ բախտը երջանիկ է դասավորվել։ Դրա հիմքը, իմ կարծիքով, եղավ այն, որ ես ողջ կյանքումս ջանացել եմ աղնվորեն աշխատել և անցել եմ մեծ ուղի՝ շարքային տրակտորիստուհուց մինչև Ալթայի երկրամասի Շիպունովսկի մեքենատրակտորային կայանի դիրեկտորի պաշտոնը։ Թեև ջահել չեմ, բայց շարունակում եմ աշխատել որպես պետգյուղտեխհսկողության ինժեներ, գլխավորում եմ կին մեխանիզատորների շրջանային ջոկատը։ Մի շղթայի մեջ միացնելով կյանքիս փուլերը, ուզում եմ ասել, որ ինձ համար, ինչպես որ բոլոր սովետական մարդկանց համար, նոր ուղենիշ դարձան ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի պատմական որոշումները։

Որպես գյուղի աշխատավորուհի, ինձ, իհարկե, շատ մոտ է պարենային ծրագիրը։ Այդ ծրագիրը հարկավոր է լուծել ճիշտ այնպես, ինչպես սահմանել է ՍՄԿԿ Կենտկոմը՝ յուրաքանչյուրի կազմակերպվածությամբ, կարգապահությամբ, բարեխիղճ աշխատանքով, հզոր տեխնիկայի լավագույն կիրառմամբ, որով այնքան է հարստացել մեր գյուղը։

Մենք հաճախ ենք լսում, որ գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատող ձեռքերը չեն բավականացնում։ Եվ դա բացատրում են գիտականորեն. ժողովրդագրություն։ Իսկ ինչո՞ւ այդ ժողովրդագրությունը կառավարչական ապարատը չի շոշափել։ Այն աճում է, և ամենքը դա տեսնում են։ Գրասենյակներում, տրեստներում, վարչություններում, միավորումներում դատարկ աթոռներ չկան։

Մի՞թե դա ճիշտ է։ Արդյո՞ք ավելի օգտակար չէր լինի լրացնել առաջին հերթին այն աշխատատեղերը, որտեղ անմիջականորեն նյութական արժեքներ են արտադրվում։ Թող ժողովրդագրության բարդություններն առաջին հերթին անդրադառնան գրասենյակների վրա, իսկ արտադրությունն ապահովված լինի անհրաժեշտ ամեն բանով՝ թե՛ մարդկանցով և թե նյութերով։

Կասեմ նաև աշխատանքի կարգապահության մասին։ Այսպես եմ կարծում. հարկավոր է աշխատել այնքան, որքան գործն է պահանջում։ Ջտեսնված բան է, որ առաջ գյուղում բերքահավաքի ժամանակ հանգստյան օր լիներ, նույնիսկ երկու հանգստյան օր, որ մարդիկ տուրիստական արշավի գնային կամ արձակուրդ վերցնեին։ Իսկ հիմա ամենաեռուն ժամանակ՝ խոտհնձի, բերքահավաքի ժամանակ, երբ թանկ է յուրաքանչյուր րոպեն, տեղ-տեղ աշխատում են միայն մեկ հերթափոխով, ամեն կիրակի հանգստանում են։

Ժողովուրդը շատ լավ ընդունեց աշխատանքային և պետական կարգապահության ամրապնդման մասին հարցադրումը։ Դժբախտաբար, երբեմն այն խախտում են ղեկավարներն իրենք։ Մարդիկ աչալրջորեն հետևում են պաշտոնով իրենցից ավագի վարքին, և նրա կողմից ամենափոքր խախտումը կըշտամբանքի տեղիք է տալիս։ Պետք է ասել, որ կադրերի նկատմամբ հոգատարությունը ոմանք հասկացան այսպես. ինչպես ասում են, մի տեղում կառչած մնալ տասնամյակներ շարունակ, ավելի շատ սեփական անձի մասին մտածել, քան գործի։ Արդեն այս կամ այն պետին այլ աշխատանքի տեղափոխելն իսկ դժվար բան է դարձել։

Հարկավոր է բարձրացնել նաև ծնողների պատասխանատվությունը երեխաների աշխատանքային դաստիարակության համար։ Իսկ դա հիմնվում է չափահասների փորձի, նրանց օրինակի վրա։ Աշխատանքը մեծ ջանքերի ու դժվարությունների հետ է կապված, իսկ դժվարություններին հարկավոր է ընտելացնել։

Ես այստեղ անկեղծորեն իմ մտքերն արտահայտեցի, որովհետև կյանքի այլ իմաստ չունեմ, քան ուժերս ներածին չափ իմ սիրելի հայրենիքին, հարազատ կուսակցությանն օգնել՝ հաջողությամբ լուծելու առաջադրված խնդիրները։



Մ. Դ. ԹԱՇՄՈՒԽԱՄԵԴՈՎ։ Ժողովրդի բարօրության նկատմամբ կուսակցության հոգատարությունը բազմակողմանի է։ Այդ հոգատարությունն զգում են բնակչության բոլոր խավերը, այն տարածվում է երկրի բոլոր հանրապետությունների ու ռեգիոնների վրա։ Վերջերս Տաջիկստանը խորապես հուզվեց այն լուրից, որ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հավանություն է տվել հանրապետության մայրաքաղաք Դուշանբեի քաղաքային տնտեսության զարգացման միջոցառումներին։ Դա լենինյան ազգային քաղաքականության ևս մի ակնբախ դրսևորում է։ Կուսակցության ամեն մի որոշում, նրա բոլոր պլաններն ու գործերը ունեն մի նպատակ՝ որպեսզի աշխատավոր մարդիկ ավելի լավ ապրեն։

Մեզ բախտ է վիճակվել նոր կյանք կառուցել։ Եվ սիրտդ ուրախանում է, երբ տեսնում ես, թե որքան լայնորեն ու վստահորեն է քայլում մեր ժողովուրդը։ Մեր աչքի առջև մարմնավորվում են ամենահամարձակ պլանները, որոնց մասին մենք միայն երազել կարող էինք։ Հայրենիքիս՝ Տաջիկստանի լեռներում տարածվել է Նուրեկի ծովը։ Մի նոր հսկա է կառուցվում Ռոգունում։ Լեռնաշղթայի միջով փորվում է բազմակիլոմետրանոց թունել։ Այն շուտով ջուր կտա Դանգարինի տափաստանին։ Եվ այդ բանն անում են ոչ թե հեքիաթային հերոսները, այլ մեր սովետական մարդիկ, ժողովուրդը։

Կյանքիս մեծ մասը կապված է բանակի, քաղաշխատանքի հետ։ Եվ ես շատ բանի վրա նայում եմ իմ անձնական փորձի տեսանկյունից։ Երբ քայլում է դասակը, և մեկն սկսում է շեղվել, ոչ համաքայլ գնալ, ամբողջ շարքը խախտվում է։ Խոսում ես այդպիսի զինվորի հետ, և հաճախ պարզվում է, որ մեղավոր են ոչ թե ոտքերը, այլ գլուխը։ Նրա գիտակցությունը կաղում է, հավաք ու ձիգ չէ, չունի կարգապահություն։ Է՛լ ավելի վատ է, երբ այդպիսի «կաղությամբ» տառապում է հրամանատարը, ղեկավարը։

Ինձ շատ հասկանալի են այն միջոցները, որ կուսակցությունը ձեռնարկում է, որպեսզի մարդկանց գիտակցությունը, պատասխանատվությունը, կազմակերպվածությունը, կարգապահությունը բարձրացնելու միջոցով արագացնի մեր առաջընթացը։ Ես, որպես զինվորական մարդ, հաճախ եմ մտածում երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության մասին, հայրենիքը պաշտպանելու նրա պատրաստականության մասին։ Աշխարհում իրադրությունն այնպիսին է, որ ամեն օր, ամեն ժամ հարկավոր է զենքը պատրաստ պահել։ Կարևոր է յուրաքանչյուր երիտասարդի գիտակցությանը հասցնել, որ ինքը հայրենիքի պաշտպան է, ուստի և պարտավոր է բարոյապես ու ֆիզիկապես մարտական լրիվ պատրաստ վիճակում լինել։ Մեր պարտքն է օգնել երիտասարդությանն այդ գործում։

Ն. Ն. ԳՈԼՈՎԱՑԿԻ։ Ինձ մեծ պատիվ վիճակվեց այստեղ ներկայացնելու Սովետական Ղազախստանը, ասում է նա։ Ղազախստանի աշխատավորները, ինչպես և բոլոր սովետական մարդիկ, ամբողջովին հավանություն են տալիս և իրենց անդուլ աշխատանքով պաշտպանում են մեր կուսակցության լենինյան կուրսը, նրա արտաքին ու ներքին քաղաքականությունը։ Կենդանի բովանդակությամբ են լցվում, կենսագործվում են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների որոշումները, որոնք առաջացրին մասսաների աշխատանքային ու քաղաքական ակտիվություն։

Ես ավելի քան երեսուն տարի գլխավորում եմ կոլտնտեսությունը։ Այդ տարիներին շատ բան եմ տեսել, շատ բան եմ վերապրել։ Այսօր գլխավոր հոգսը այս տարվա բերքը ժամանակին և անկորուստ հավաքելն է, ամբողջովին հնգամյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարումն ապահովելը։ Այդ խնդիրներին են ենթարկված նաև մեր կոլեկտիվի ջանքերը։ Ամեն տարի մենք պետությանը մատակարարում ենք ավելի քան չորս միլիոն փութ հացահատիկ։ Ուրախալի է զեկուցել, որ հացահատիկի գծով հնգամյակի պլանը կկատարվի երեք տարում։ Ընթացիկ տարում մենք որոշել ենք պետությանը մատակարարել յոթ հազար տոննա միս, այսինքն կատարել երկու տարվա պլան։ Հենց սա է մեր կոնկրետ ներդրումը պարենային ծրագրի իրականացման գործում։





Մենք հասկանում ենք. ձեռք բերված հաջողությունները կարող էին շատ ավելի մեծ լինել։ Պատրաստվելով հանդիպմանը, ես շատ խորհեցի այն մասին, թե այսօր, այնուամենայնիվ, ինչը մեզ չի բավականացնում։ Նախ և առաջ մեզ հուզում է գյուղում կադրերին ամրացնելու և երիտասարդությանը հանրային արտադրության մեջ ներգրավելու պրոբլեմը։ Երկարամյա փորձը հուշում է, որ հարկավոր է վաղ հասակից պատանիներին ու աղջիկներին սեր պատվաստել հողի, հողագործի, անասնապահի աշխատանքի նկատմամբ։ Եվ դրան պետք է նպատակամղված լինի երիտասարդության ուսուցման և պրոֆեսիոնալ-տեխնիկական պատրաստման պետական սիստեմը։ Ես ամբողջովին ու լիովին պաշտպանում եմ այդ հարցի առթիվ ավելի վաղ ելույթ ունեցած ընկերների առաջարկությունները։

Առաջին անգամ արտադրություն եկած երիտասարդին այսօր բացահայտորեն պակասում են կազմակերպչի ունակությունները, մարդկանց հետ աշխատելու կարողությունը։ Ճիշտ կլիներ սահմանել երիտասարդ մասնագետների՝ գյուղատնտեսական ինստիտուտների և տեխնիկումների շրջանավարտների պարտադիր ստաժավորում երկրի առաջավոր սովխոզներում ու կոլտնտեսություններում։ Դա կօգներ նրանց համակելու հաճույքով գյուղում աշխատելու ցանկությամբ։ Այնժամ, գուցե, չլինեին այնպիսի այլանդակ երևույթներ, երբ երիտասարդ գյուղատնտեսը գարեջրի առևտուր է անում ասֆալտի վրա, իսկ զոոտեխնիկը միս է վաճառում խանութում։ Այս գործում, ըստ երևույթին, պակասում են նաև օրենսդրական միջոցները։ Ակամայից ինքդ քեզ հարց ես տալիս. մասնագետին ինչո՞ւ է ձեռնտու ավելի պակաս որակյալ աշխատանք կատարելը։

Այսօր մենք ավելի շատ բան ենք սպասում գիտական հիմնարկություններից։ Օրինակի համար մեր կոլտնտեսությունում եգիպտացորենի աճեցման, հավաքման, տեսակավորման աշխատանքների շատ տեսակներ կատարվում են ձեռքով, իսկ դա նվազ արտադրողական է։ Մեզ մոտ քիչ է մասնագիտացված տեխնիկան։ Գյուղատնտեսության առջև կանգնած խնդիրները մեծ են։ Դրանց կատարման համար մենք, պրակտիկայի և գիտության մարդիկ, պետք է համատեղ պատասխանատու լինենք։

Թույլ տվեք հավաստիացնել, որ մենք ջանք ու եռանդ չենք խնայի հանուն այն բանի, որ կուսակցության խոսքը միշտ իրողություն, կենդանի գործ դառնա, մարմնավորվի զարգացած սոցիալիզմի նոր նվաճումներով։

ՅԱ. Դ. ՋԱՆԻՇԵՎ։ Ես կուսակցության մեջ եմ 1917 թվականի մարտի 15-ից և 45 տարի՝ հերոսական կարմիր բանակի շարքերում։

Ես բախտ եմ ունեցել երկու անգամ հանդիպելու Լենինի հետ. միտինգում և կուսակցության տասներորդ համագումարում։ Մեծ Լենինի ղեկավարությամբ մեր կուսակցությունը և մեր ժողովուրդը ծանրագույն պայմաններում հաղթանակ տարան ներքին հակահեղափոխության և ինտերվենտների դեմ, ձեռնամուխ եղան սոցիալիզմի հիմքերի ստեղծմանը։ Ինչո՞ւ հաջողվեց հասնել դրան։ Կասեմ միայն երկու բան։ Նախ, Վլադիմիր Իլյիչը մշտապես հոգ էր տանում կուսակցության մեջ ամուր կարգապահության մասին, բոլշևիկ կուսակցականների ավանգարդային դերի մասին։ Երկրորդ, Լենինը խստապահանջ էր ղեկավար կոմունիստների նկատմամբ։

Մենք ասում ենք. Լենինը բարի էր։ Եվ դա իրոք այդպես է։ Բայց երբ խոսք էր լինում կուսակցության շահերի, ժողովրդի շահերի մասին, նա ոչ ոքի թույլ չէր տալիս անտեղի ներողամտություն ցուցաբերել այն մարդկանց նկատմամբ, ովքեր վարվում էին այդ շահերին հակառակ։

Մենք շատ գոհ ենք, որ կուսակցության Կենտրոնական կոմիտեի ղեկավարությունը գործերը վարում է լենինաբար, բոլշևիկորեն։ Եվ մենք խնդրում ենք ձեզ, ներողամիտ մի եղեք նրանց նկատմամբ, ովքեր մտածում են ոչ թե ընդհանուր բարիքի, ոչ թե աշխատանքի մասին, այլ միայն անձնական բարեկեցության մասին։



ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎ։ Այդ բանը մենք ձեզ խոստովանում ենք (Երկարատև ծափահարություններ)։

Ես, ընկերներ, շարունակեց Յա. Դ. Ջանիշևը, հաճախ եմ լինում զորամասերում։ Մենք հիանալի բանակային երիտասարդություն ունենք գրագետ, քաջարի։ Բայց մարտական աշխատանքը շատ դժվարին է։ Չէ որ երկու տարում հարկավոր է տիրապետել ժամանակակից տեխնիկային, պատրաստ լինել հայրենիքի պաշտպանությանը, ինչպես ասում են, և՛ բարոյապես, և՛ ֆիզիկապես։ Ու մենք, վետերաններս, ջանք չպիտի խնայենք օգնելու երիտասարդությանը նախապատրաստելու սովետական բանակում ծառայության համար, բարձրացնելու սովետական զինվորի ու սպայի վարկը։

Տ. Վ. ՖՅՈԴՈՐՈՎԱ։ Այս տարի լրացավ կես դարն այն օրվանից, երբ տասը հազար մոսկվացի կոմերիտականներ եկան եղակի, աննախադեպ կառույցը՝ Մոսկվայի մետրոն։ Այսօր մենք երջանիկ ենք, որ քառակի շքանշանակիր մեր կոլեկտիվում աճել են նշանավոր շատ մարդիկ, և արդեն շատ մետրոշիններ ու մետրոպոլիտեններ են գործում մեր երկրում։

Այսօր Մոսկվա, Լենինգրադ մետրոշին են գալիս կոմերիտականներ բանակից, այլ մարզերից և քաղաքներից։ Նրանք հրաշալի տղաներ են։ Երեսնական թվականների կոմերիտական կամավորների ժառանգորդները։ Իսկ ահա նրանց նկատմամբ վերաբերմունքը պետք է լինի ավելի ուշադիր։ Նրանք այդ բանը վաստակել են։ Խոսքը վերաբերում է ամենից առաջ նրանց ժամանակին բնակարան տալուն։ Առանձնապես նրանց, ովքեր որոշել են ընտանիք կազմել։ Դա երիտասարդներին կօգներ խուսափելու կենցաղային շատ անախորժություններից, իսկ վերջին հաշվով կօգներ ավելի լավ, ավելի արտադրողաբար աշխատելու։

Եվ երկրորդ։ Այստեղ ընկերները ճիշտ ասացին, որ հարկավոր է մարդկանց ղեկավարելու բարոյական իրավունք ունենալ։ Իսկ ահա լինում են այնպիսի ղեկավարներ, որոնք անվայել արարքներ են թույլ տալիս։ Ինչ բարոյական իրավունքի մասին կարելի է խոսել, եթե մարդը օգտագործում է պաշտոնական դիրքը և իր համար ամառանոց կառուցում, հարստանում իր ղեկավարած ձեռնարկության հաշվին կամ պարզապես բարոյալքվել է։ Նման մարդկանց նկատմամբ մենք պետք է լինենք անհաշտ ու խիստ։

Վերջում կուզենայի բանվոր դասակարգի վետերանների անունից ասել, որ մենք միշտ կուսակցության հետ ենք՝ որպես նրա հավատարիմ մարտիկներ և միշտ բոլոր ուժերով կօգնենք կատարելու Կենտրոնական կոմիտեի ընդունած որոշումները։ Չէ որ դրանք կենսականորեն այնքան կարևոր են մեր երկրի համար, մեր ժողովրդի համար։

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԻ ՀԵՏ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմը որոշում է ընդունել կուսակցության վետերանների հետ ընկեր Յու. Վ. Անդրոպովի, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարների 1983 թվականի օգոստոսի 15-ի հանդիպման արդյունքների վերաբերյալ։ Որոշման մեջ ասված է. ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն գտնում է, որ տվյալ հանդիպումը կարևոր հասարակական-քաղաքական իրադարձություն է, կոմունիստական իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում կուսակցության շարքերի, սովետական մարդկանց բոլոր սերունդների միաձույլ միասնության, ՍՄԿԿ-ին, Լենինի մեծ գործին հավատարմության համոզիչ վկայություն։ Հանդիպումը ցույց տվեց կուսակցության խոր հարգանքը վետերանների փառապանծ զվարդիայի նկատմամբ, մշտական հոգատարությունը կուսակցական կյանքի լենինյան ավանդույթների, հեղափոխական, մարտական և աշխատանքային փորձի պահպանման ու բազմապատկման, մասսաների հետ կապերի ամրապնդման նկատմամբ։

Հանդիպման ընթացքում շեշտվեց, որ ղեկավարման ոճի և մեր երկրի կյանքի բոլոր կողմերի կատարելագործման, կադրերի նկատմամբ պահանջկոտության բարձրացման, կարգապահության և կազմակերպվածության ամրապնդման, արտադրության ինտենսիվացման նպատակով ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մշակած և իրականացվող միջոցառումները համապատասխանում են բոլոր սովետական մարդկանց շահերին, բարերար ազդեցություն են գործում էկոնոմիկայի զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման վրա։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն բարձր գնահատեց կուսակցության վետերանների կողմից ՍՄԿԿ-ի ներքին ու արտաքին քաղաքականության միահամուռ պաշտպանությունը, կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների որոշումների իրականացման համար սովետական ժողովրդի պայքարում նրանց ներդրած ավանդը, աշխատավորների, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիարակության համար նրանց արգասավոր գործունեությունը։

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին հանձնարարված է ապահովել հանդիպման նյութերի լայն պրոպագանդումն ու պարզաբանումը կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում և ըստ բնակության վայրի բնակչության շրջանում։ Տեղական կուսակցական կոմիտեներին հանձնարարված է կանոնավոր կերպով հանդիպումներ անցկացնել կուսակցության և աշխատանքի վետերանների, տարբեր սերունդների ներկայացուցիչների հետ։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական մարմիններին պարտավորեցրեց մանրակրկիտ կերպով ուսումնասիրել վետերանների կողմից առաջադրվող հարցերը և դրանց վերաբերյալ ձեռնարկել համապատասխան միջոցներ, մշտական հոգատարություն ցուցաբերել արտադրական և հասարակական գործունեության բոլոր ոլորտներում վետերանների դերի բարձրացման նկատմամբ, նրանց մեծ կենսափորձն ու քաղաքական փորձն օգտագործել կազմակերպական-կուսակցական և գաղափարախոսական աշխատանքում, լենինյան իդեալներին հավատարմության, սոցիալիստական հայրենիքին, կոմունիստական կուսակցության գործին նվիրվածության ոգով սովետական մարդկանց դաստիարակության ասպարեզում։

Կենտկոմի քաղբյուրոն անհրաժեշտ է համարում, որպեսզի յուրաքանչյուր կուսակցական և արհմիութենական կազմակերպությունում, յուրաքանչյուր պետական հիմնարկությունում և աշխատանքային կոլեկտիվում վետերանների, նրանց կարիքների ու հոգսերի նկատմամբ ապահովվի զգայուն, ուշադիր և հարգալից վերաբերմունքի իրադրություն։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն պարտավորեցրել է կենտրոնական և տեղական թերթերի խմբագրություններին, հեռուստատեսությանն ու ռադիոյին, մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցներին՝ ապահովել վետերանների հետ հանդիպման արդյունքների լայն լուսաբանումը, ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում պարունակվող դրույթների և եզրահանգումների պրոպագանդան։ Անհրաժեշտ է վետերանների հեղափոխական, մարտական և աշխատանքային գործունեության օրինակների հիման վրա վառ կերպով բացահայտել կոմունիստական իդեալների հաղթանակի համար ՍՄԿԿ-ի և սովետական ժողովրդի պայքարի հերոսական էջերը։

Օգոստոսի 16-ին ՍՄԿԿ Կենտկոմում հանդիպման մասնակից կուսակցության վետերաններն այցելեցին Վ. Ի. Լենինի դամբարան և պսակ դրեցին։

Նրանք եղան նաև «Վ. Ի. Լենինի աշխատասենյակը և բնակարանը Կրեմլում» թանգարանում, Վ. Ի. Լենինի Կենտրոնական թանգարանում։



# ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

**Պ. Գ. ՓԻՐՈՒՄՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի բաղլուստան վարիչի տեղակալ

ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ, ԱՇԽԱՏԱՎՈՐ զանգվածների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման գործում առանձնահատուկ տեղ է գրավում քաղաքական կրթության համակարգը։ «Քաղաքական ուսուցման իմաստն այն է,— ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում ասաց Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը,— որ յուրաքանչյուր ոք ավելի խոր ըմբռնի կուսակցության քաղաքականությունն արդի պայմաններում, կարողանա պրակտիկայում կիրառել ստացած գիտելիքները, ավելի պարզորոշ պատկերացնի և գործնականում կատարի իր սեփական պարտքը»։

Պրոպագանդիստը կուսակցության գաղափարական մարտիկն է, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման ջատագովը։ Նա կոչված է բարձրացնելու մարդկանց քաղաքական մակարդակը, զարգացնելու նրանց աշխատանքային ու սոցիալական ակտիվությունը, նրանց մեջ սերմանելու հասարակական երևույթներին դասակարգային մոտեցման, սոցիալ-տնտեսական խնդիրների իմաստավորման ունակություններ։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր. «Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը հենց այն է, որ լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող» (ԵԼԺ, հ. 21, էջ 26)։

Մարքս-լենինյան տեսության ուսումնասիրությունը միայն այն ժամանակ կարող է արդյունավետ լինել, երբ պրոպագանդիստի ջանքերի շնորհիվ ունկընդիրների ձեռք բերած գիտելիքները դառնում են համոզմունք և օգտագործվում կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների, սոցիալ-տնտեսական ծրագրերի իրականացման նպատակով։

Նոր մարդու մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, կոմունիստական գիտակցականության դաստիարակության գործում հիմնականը գաղափարական-քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումն է՝ աշխատավորների տարբեր խմբերի առանձնահատկությունների, նրանց քաղաքական պատրաստականության մակարդակի ու հետաքրքրությունների շրջանակի հաշվառման հիման վրա։

Պրոպագանդիստի վարպետությունը ներառում է ուսուցման ակտիվ ձևերի և մեթոդների մշակում ու օգտագործում, մանկավարժական ու հոգեբանական ներազդման միջոցների սիստեմավորում, նյութի հստակ ու տրամաբանված շարադրում։ Կարևոր է, թե պրոպագանդիստն ինչպես է մշակում և օգտագործում նյութի շարադրման առավել արդյունավետ եղանակներն ու մեթոդները, կուսակցության տեսության քաղաքականության ու պրակտիկայի

հարցերի ընկալման միջոցները, ինչպես է ուսումնական, դաստիարակչական պրոցեսը շաղկապում գործնական աշխատանքների հետ:

Այս տեսակետից ուշադրության արժանի է Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի Ախթալայի հանքերի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Վ. Տիրացվյանի աշխատանքը: Պրոպագանդիստը յուրաքանչյուր պարապմունքին պատրաստվում է հանգամանորեն: Նա նախօրոք լինում է իր ունկնդիրների արտադրական տեղամասերում, ուսումնասիրում աշխատանքի դժվարությունների, չլուծված պրոբլեմների պատճառները, խորհրդակցում մասնագետների հետ, ապա մշակում գործնական առաջարկություններ:

Քաղպարապմունքների անցկացման ժամանակ պրոպագանդիստը լայնորեն կիրառում է ռեֆերատների ընթերցումներ, բանավեճեր, հարցազրույցներ և այլն: Նա առանձնապես ուշադրություն է դարձնում ունկնդիրների ստեղծագործական, աշխատանքային և քաղաքական ակտիվության բարձրացմանը, դրանով իսկ նպաստում սոցիալիստական պարտավորությունների կատարմանը: Իր լավագույն պրոպագանդիստական աշխատանքի համար Վ. Տիրացվյանը արժանացել է ՀՍՍՀ «Կուլտուրայի վաստակավոր աշխատողի» կոչման:

Պրոպագանդիստական աշխատանքում կարևոր գործոն է ունկնդիրների հոգեբանական առանձնահատկությունների, մտածելակերպի, հետաքրքրությունների ու պահանջմունքների ուսումնասիրումը: Այս առումով ուսանելի է Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսության կուսակցական կազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ, սոցիալիստական աշխատանքի հերոս Զաքար Զաքարյանի աշխատանքի փորձը: Լավն այն է, որ պրոպագանդիստն ուսումնասիրվող դասընթացի տեսական նյութը շաղկապում է արտադրական, դաստիարակչական ու կարգապահական խնդիրների հետ: Գործնական սեմինար-պարապմունքներում նա քննարկման է դնում ունկդիրներին նախապես տրված առաջադրանքների՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, կատարողական կարգապահության և այլ բնույթի հարցեր: Անհրաժեշտ վերլուծություններից հետո պարապմունքում մշակվում են օպտիմալ լուծումներ, որոնք ներդրվում են արտադրության մեջ: Նման մեթոդների կիրառումը տալիս է դրական արդյունքներ: Այսպես, ունկնդիրներից մի քանի կթվորուհիներ 1983 թ. առաջին կիսամյակում մեկ կովի կաթնատվությունը հասցրին 4.200 կգ-ի, իսկ կոմունիստ Ռիտա Առաքելյանը յուրաքանչյուր կովից ստացավ 4.800 կգ կաթ, դաշտավարական բրիգադի բրիգադավար, կոմունիստ Մինաս Ավետիսյանն ամեն մի հեկտարից ստացավ 45 ցենտներ հացահատիկ: Օրինաչափ է, որ Զաքարյանի վարած պարապմունքներն անցնում են հետաքրքիր ու բովանդակալից:

Լայն տարածում է ստացել Հրազդանի շրջանի Ջրառատի կաթնանասնապահական սովխոզի սկզբնական կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ, կուսկոմիտեի քարտուղար Մնացական Հարությունյանի աշխատանքի փորձը: Քաղպարապմունքների անցկացման ժամանակ նա տեսական նյութը, քաղաքական աշխատանքը հմտորեն շաղկապում է կազմակերպչական ու գործնական խնդիրների հետ: 1982 թ. կթվորուհի ունկնդիրները յուրաքանչյուր կովից ստացել են 4 հազար կգ կաթ: Ունկնդիրների մեծ մասը, լինելով արտադրության առաջավորներ, միաժամանակ ակտիվորեն մասնակցում է հասարակական-քաղաքական աշխատանքներին: Նրանցից 8-ը կատարում են զեկուցողի, ագիտատորի և քաղինֆորմատորի պարտականություններ:

Նաիրիի շրջանի տրակտորների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հարավային մասնաճյուղի սկզբնական կուսկազմակերպության տեսական սեմինարում (պրոպագանդիստ՝ Հ. Հովհաննիսյան) ընդգրկված կոմունիստները անհատական պլանով ուսումնասիրում են «Սոցիալիստական ապրելակերպը» պրոբլեմը: Պարապմունքներից մեկում, որտեղ քննարկվում էր «Սոցիալիստական ապրելակերպը և հոգևոր կուլտուրան սոցիալիզմի օրոք»



թեման, կարդացվեցին ռեֆերատներ, որոնցով հանդես եկան կոմունիստներ Լ. Վարդանյանը («Աշխարհայացքի առաջատար դերը անհատի կուլտուրայի կողմնորոշման գործում») և Ռ. Սարիբեկյանը («Կուլտուրական կենցաղաձևը սոցիալիստական հասարակարգում»): Ռեֆերատների ընթերցումից հետո ծավալվեց մտքերի գործարար փոխանակություն: Բնորոշն այն է, որ ունկնդիրները փաստացի օրինակները վերցրել էին իրենց ձեռնարկության կոլեկտիվի կյանքից, կենցաղից:

Կուսակցական ուսուցման կազմակերպման այսպիսի տարբերակված, անհատական մոտեցումը նպաստում է ունկնդիրների քաղաքական մակարդակի բարձրացմանը, սոցիալ-քաղաքական ու աշխատանքային ակտիվության աճին:

Պրոպագանդիստի վարպետությունը պայմանավորված է սոցիալիստական հասարակության տնտեսական և հոգևոր հասունության մակարդակի ըմբռնմամբ, մարդու աշխարհայացքի, քաղաքական համոզմունքների ու պահանջմունքների իմացությամբ, տեսության ու պրակտիկայի միասնության մեթոդաբանական սկզբունքների ճիշտ կիրառմամբ: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, պրոպագանդիստները պետք է լինեն հեղինակավոր, կրթված մարդիկ: Հարկավոր է նրանց գործունեության համար ստեղծել անհրաժեշտ պայմաններ, հոգ տանել նրանց որակավորումը սիստեմատիկաբար բարձրացնելու մասին: Գաղափարախոսական ճակատի կադրերի գործունեության գնահատման չափանիշը մեկն է՝ մասսաների քաղաքական գիտակցականության և աշխատանքային ակտիվության մակարդակը:

Քաղդպրոցի կամ սեմինարի ունկնդիրների կազմը տարասեռ է՝ գաղափարական-տեսական պատրաստականության, կենսափորձի, հետաքրքրությունների բնույթի և սոցիալական կողմնորոշման տեսակետից: Պրոպագանդիստի հետևողական աշխատանքով ունկնդիրները սովորում են ինքնուրույն խորհրդածել, վերլուծել իրադարձությունները: Նրանցից շատերը դառնում են քաղաքական մեկնաբաններ, ինֆորմատորներ: Ուստի, որքան քաղաքական պրոպագանդան, բանավոր խոսքը լինեն նպատակասլաց, օպերատիվ, այնքան բարձր կլինի դրանց արդյունավետությունը: Այս առումով ուշադրության արժանի է պրոպագանդիստներ Մ. Մարգարյանի (Լենինականի գուլպա-նասկեղենի արտադրամիավորում), Ն. Վարդանյանի (Ստեփանավանի շրջանի Վարդաբլուր գյուղի միջնակարգ դպրոց), Ա. Հովսեփյանի (Երևանի «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորում) և շատերի աշխատանքի դրական փորձը:

1982—83 ուստարում հանրապետությունում քաղուսուցման ցանցում ընդգրկված են 39.821 պրոպագանդիստներ և կոնսուլտանտներ, որոնցից կոմունիստներ են 19.669-ը, բարձրագույն կրթություն ունեն 30.349-ը: Պրոպագանդիստների և կոնսուլտանտների ընդհանուր թվի 25 տոկոսը ավարտել է ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինինզմի համալսարանը: Տասը տարուց ավելի աշխատանքի փորձ ունեն 14.177 պրոպագանդիստներ, 23.971-ի տարիքը չի անցնում 40-ից: Միայն անցած ուսումնական տարում պրոպագանդիստական աշխատանքում ներգրավվել էին 645 կուսակցական և սովետական, 597 տնտեսական ղեկավար աշխատողներ, որոնք ընդգրկված են ՀԿԿ քաղկոմների, շրջկոմների կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցներում:

Ունենալով նման մակարդակի պրոպագանդիստական կադրեր՝ կուսակցական կոմիտեները հատուկ ուշադրություն են նվիրում նրանց ուսուցման կազմակերպմանը, տեսական մակարդակի և մեթոդական վարպետության բարձրացմանը: ՀԿԿ Կենտկոմի քաղլուսատունը սիստեմատիկաբար անցկացնում է պրոպագանդիստական կադրերի վերապատրաստման մեկշաբաթյա դասընթացներ, որտեղ ուսումնասիրվում են մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության հրատապ պրոբլեմները, կուսակցական ուսուցման մեթոդիկայի, պրոպագանդիստական աշխատանքում մանկավարժության, հոգեբանության, տրամաբանության և հռետորական արվեստի կիրառման հարցերը, ինչպես նաև պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր փորձը: Դասընթացների մասնակիցները սեմինար պարապմունքներում հանդես են գալիս ռեֆերատներով, զեկուցումներով, կատարում են սոցիոլոգիական հետազոտություններ:

Կուսակցության քաղկոմներում ու շրջկոմներում մշտապես գործում են պրոպագանդիստների սեմինարներ։ Երևանի, Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի քաղաքային, Թումանյանի, Ղափանի, Կամոյի, Ստեփանավանի, Նաիրիի, Ախուրյանի շրջանային սեմինարներում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում պարապմունքների ուսուցման առաջավոր մեթոդների կիրառման, ունկնդիրների աշխատանքային ու հասարակական գործունեության և պրոպագանդիստական աշխատանքի արդյունավետության բարձրացման հարցերին։

Կուսակցության քաղկոմների, շրջկոմների պրոպագանդիստների մշտական գործող սեմինարներում, տեսական ու մեթոդական զեկուցումների հետ մեկտեղ, քննարկվում է նաև աշխատանքի առաջավոր փորձը, ծավալվում է մտքերի ակտիվ փոխանակություն։ Բնորոշն այն է, որ սեմինարներում գործնական պարապմունքները տարբերակվում են։ Կուսակցական ուսուցման պրոպագանդիստները մասնակցում են հենակետային դպրոցների ու սեմինարների պարապմունքներին, ուսումնասիրում աշխատանքի փորձը, այն ընդհանրացնելուց հետո ներկայացնում գրավոր հանձնարարականներ՝ պարապմունքների անցկացման մեթոդների վերաբերյալ։ Կոմերիտական քաղաքական լուսավորության պրոպագանդիստների համար գործնական պարապմունքն անցկացվում է գիտության ու կուլտուրայի անվանի գործիչների, աշխատանքի վետերանների, վարպետ-դաստիարակների հետ հանդիպումների ու զրույցների ձևով և այլն։

Պրոպագանդիստի վարպետության և գաղափարախոսական աշխատանքի մակարդակի բարձրացմանը նպաստում են գիտամեթոդական և տեսական կոնֆերանսների անցկացումը, մեթոդխորհուրդների մշակած գրավոր երաշխավորագրերը։ Տնտեսագիտական կրթության համակարգի պրոպագանդիստներն իրենց գործնական պարապմունքը շարունակում են համապատասխան արդյունաբերական ձեռնարկություններում, ուսումնասիրում, թե տնտեսագիտական կրթությունն ինչպես է շաղկապվում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման հետ, որից հետո տվյալ ձեռնարկության փորձի հիման վրա ներկայացնում են գրավոր երաշխավորագիր։ Այսպես, 26 կոմիսարների անվան շրջանի պրոպագանդիստները «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում ունկնդրեցին միավորման գլխավոր դիրեկտոր, պրոպագանդիստ Բենիամին Թումասյանի պարապմունքը, որը նվիրված էր «Աշխատանքային կոլեկտիվի դերը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման գործում» թեմային։ Պրոպագանդիստը նյութի շարադրումը ուղեկցում էր «Լույս՝ նվիրված մարդկանց» ֆիլմի ցուցադրումով, որը պատմում է իրենց կոլեկտիվի առօրյայի, արտադրության առաջավորների, հասարական-քաղաքական կյանքի մասին։ Նման օրինակներ կարելի է բերել նաև այլ կազմակերպություններից։ Առանձնակի նշանակություն ունի եղբայրական հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների գաղափարաքաղաքական աշխատանքի փորձի ուսումնասիրությունը։ Վերջին տարիներին լավ ավանդույթ են դարձել Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի պրոպագանդիստական խմբերի փոխայցելությունները։ Ուսումնասիրությունների արդյունքներն ընդհանրացվում և օգտագործվում են պրոպագանդիստական աշխատանքներում։

Հանրապետության մի շարք քաղաքային և շրջանային կուսակցական կազմակերպություններում ավանդույթ են դարձել պրոպագանդիստական աշխատանքի փոխադարձ ուսումնասիրությունները, պարապմունքների մասսայական ունկնդրումները։ Այդ տեսակետից հարուստ փորձ է կուտակվել Երևանում, Լենինականում, Սևանում, Ապարանում։

ՀԿԿ Կենտկոմի քաղլուսատան մեթոդական կաբինետներում և կուսակցության քաղկոմների, շրջկոմների քաղլուսկաբինետներում պարբերաբար կազմակերպվում են պրոպագանդիստների խմբակային ու անհատական կոնսուլտացիաներ։ Պրոպագանդիստական կադրերի պատրաստման գործում կարևոր տեղ ունի ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանը, որտեղ (Լենինականի ու Կիրովականի մասնաճյուղի հետ միասին) 1982—1983 ուստարում գաղափարախոսական ֆակուլտետում ընդգրկված էին 1821 ունկնդիրներ։ Համալսարանում ստեղծված է կուսակցական պրոպագանդայի մեթոդիկայի ամբիոն, որը զգալի աշխատանք է կատարում պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր ու արդյունավետ մեթոդների մշակման ու կիրառման բնագավառում։

Գաղափարադաստիարակչական ընդհանուր խնդիրներին զուգընթաց, որ առաջադրում է կոմունիստական շինարարության արդի փուլը, յուրաքանչյուր պրոպագանդիստ, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների որոշումների դրույթներից, ձգտում է պրոպագանդիստական աշխատանքը դարձնել նպատակասլաց, կոնկրետ և գործարար։

Կուսակցական պրոպագանդայի ճշմարտացիության հիմքը յուրաքանչյուր պրոպագանդիստի համոզվածությունն ու սկզբունքայնությունն են։ Կուսակցությունը սովորեցնում է, որ շրջանցել սուր հարցերը, խուսափել դրանց պատասխանելուց՝ նշանակում է պրոպագանդան զրկել գործնականությունից, այն սակավ ազդեցիկ դարձնել։ Պրոպագանդիստի հեղինակության գլխավոր պայմանը խոսքի և գործի միասնությունն է։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը խիստ կարևորեց քաղաքական ուսուցման ցանցի աշխատանքի ոճի փոփոխությունը։ Նախ և առաջ հարկավոր է վերջ տալ ձևամոլությանը, այս կամ այն ընդհանուր դրույթների մեխանիկական, կյանքից կտրված սերտմանը (կամ բարձրաձայն ընթերցանությանը)։ Կարևոր է հասնել այն բանին, որ բոլոր կոմունիստները, աշխատավորները խորապես յուրացնեն Մարքսի, Էնգելսի, Լենինի հեղափոխական ուսմունքը, որը տալիս է հասարակական զարգացման ամենաբարդ պրոբլեմների ըմբռնման և լուծման բանալին։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման փուլում կուսակցության ստրատեգիայի հիմքը մարքս-լենինյան տեսությունն է։ Մենք, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, պետք է պատշաճ կերպով ուսումնասիրենք այն հասարակությունը, որի մեջ ապրում ենք ու աշխատում, լիովին բացահայտենք նրան բնորոշ, հատկապես տնտեսական օրինաչափությունները։

Կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգերի նոր ուսումնական տարվա անելիքները հանգամանորեն շարադրված են «Պրավդայի» 1983 թ. օգոստոսի 2-ի «Մարքսիզմ-լենինիզմին խորապես տիրապետելու համար» խմբագրական հոդվածում։ Այդ պահանջի հիման վրա և հաշվի առնելով լայն մասսաների հսկայական հետաքրքրությունը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի առաջադրած հարցերի նկատմամբ՝ հուլիս—սեպտեմբեր ամիսներին աշխատավորների համար անցկացվեց երկու պարապմունք՝ «Նոր մարդու ձևավորումը կոմունիստական շինարարության նպատակն ու պայմանն է» և «Սոցիալ-տնտեսական խնդիրների գաղափարախոսական ապահովումը» թեմաների շուրջ։

Պլենումի նյութերի խոր և բազմակողմանի ուսումնասիրումը կշարունակվի նոր ուսումնական տարում։ Այն կսկսվի «Գաղափարախոսական աշխատանքը ողջ կուսակցության, յուրաքանչյուր կոմունիստի գործն է» թեմայով։ Պարապունքի նպատակն է, որ կոմունիստներն ավելի խորությամբ ըմբռնեն կուսակցության գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման ուղիները և իրենց անձնական պատասխանատվությունն այդ աշխատանքի որակի և արդյունավետության բարձրացման գործում։

Ամբողջ ուսումնական պրոցեսը առաջվա պես կառուցվելու է մարքսիզմ-լենինիզմի դասականների՝ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգության, ՍՄԿԿ-ի փաստաթղթերի հիման վրա կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ պրոբլեմների, տեսական ընդհանրացումների, գիտական հետևությունների և ժողովրդատնտեսական ու սոցիալ-քաղաքական խնդիրների լուծման հետ օրգանական միասնությամբ։ Այդ խնդիրների կենսագործման առնչությամբ է՛լ ավելի է բարձրանում կոմունիստների քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության դպրոցների ու սեմինարների դերը։

Նոր ուսումնական տարում աշխատավորների տնտեսագիտական կրթությունն ու դաստիարակությունը կողմնորոշվում են արտադրության ինտենսի-

վացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրների լուծմանը, ժողովրդական տնտեսության մեջ աշխատող կադրերի ժամանակակից տնտեսագիտական մտածողության մշակմանը, սոցիալիստական ձեռնեբեցության և գործարարության դաստիարակմանը։

Որպեսզի տեսական ուսուցումն ապահովի կուսակցության քաղաքականության խոր ըմբռնումը, աշխատավորության մեջ զարգացնի պատասխանատվությունն իր քաղաքացիական պարտքի կատարման համար, կուսակցական կոմիտեների ու պրոպագանդիստների առաջնահերթ խնդիրն է՝ արմատապես վերակառուցել գաղափարախոսական աշխատանքի ոճը։ Անհրաժեշտ է, որ պրոպագանդիստները նոր ուսումնական տարում առանձնակի ուշադրություն նվիրեն զարգացած սոցիալիզմի կատարելագործման փուլում սոցիալ-տնտեսական օրինաչափությունների, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների լուսաբանման, մարդկանց կենսապայմանների բարելավման, յուրաքանչյուր ունկնդրի գիտակցական-ստեղծագործական աշխատանքի մղելու հարցերին։

Միաժամանակ, հաշվի առնելով ներկայիս միջազգային իրադրության շեշտակի սրումը, երկու հակադիր աշխարհայացքների ու քաղաքական կարգերի՝ սոցիալիզմի և իմպերիալիզմի հակամարտությունը, պրոպագանդիստներից պահանջվում է ուժեղացնել համաշխարհային ասպարեզում մղվող գաղափարախոսական պայքարի, ՍՄԿԿ միջազգային գործունեության հարցերի խոր ու բազմակողմանի ուսումնասիրումը։ ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության պրոբլեմների վերլուծության պարզաբանման ժամանակ պետք է պարզ ու մատչելի ձևով մարդկանց գիտակցությանը հասցնել ճշմարտությունը սոցիալիստական հասարակության առավելությունների և նրա խաղաղասիրական քաղաքականության մասին։ Կարևոր է նաև, որ քաղպարապմունքների ժամանակ պրոպագանդիստը հմտորեն մերկացնի իմպերիալիզմի հակաժողովրդական քաղաքականությունը, անհաշտ վերաբերմունք դաստիարակի ունկնդիրների մեջ բուրժուական գաղափարախոսության և բարոյականության հանդեպ, արդի հրատապ պրոբլեմները վերլուծելիս հանդես բերի դասակարգային մոտեցում։ Անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական ուսուցման համակարգի դպրոցների ու սեմինարների պարապմունքների արդյունավետությունը, առանձնակի ուշադրություն նվիրել գիտական կոմունիզմի դըպրոցներում ընդգրկվածների, անհատական պլանով ուսումնասիրող կոմունիստների, կուսակցական, տնտեսական ղեկավար կադրերի և գաղափարախոսական ակտիվի մարքս-լենինյան կոփմանը։ Նախատեսված է կուսակցության քաղկոմների, շրջկոմների ղեկավար կադրերի դպրոցներում ուսումնասիրել «Զարգացած սոցիալիզմի կատարելագործման հրատապ պրոբլեմները», իսկ գաղափարախոսական ակտիվի դպրոցներում՝ «Գաղափարախոսական աշխատանքի տեսության և պրակտիկայի հրատապ հարցերը» ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման լույսի ներքո։

Գիտական և գեղարվեստական մտավորականությունը կշարունակի մեթոդաբանական սեմինարներում հասարակական, բնական, տեխնիկական գիտությունների, սոցիալիստական մշակույթի և արվեստի փիլիսոփայական պրոբլեմների ուսումնասիրությունը։

Ժողովրդատնտեսական խնդիրների լուծման գաղափարախոսական ապահովման, էկոնոմիկայի զարգացման և դրա արդյունավետության բարձրացման գործում կարևոր դեր ունի աշխատավորների տնտեսագիտական կրթությունը։ Նոր ուսումնական տարում այն կծառայի արտադրության ինտենսիվացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման խնդիրների լուծմանը։ Լուրջ ուշադրության կարժանանա «Կոլեկտիվ կապալ» պրոբլեմի ուսումնասիրությունը և այն արտադրության մեջ ներդնելու խնդիրը։ Տնտեսագիտական մտածողության մշակումը աշխատավորության սոցիալիստական ձեռներեցության և գործարարության կարևոր նախապայմանն է։

Որպեսզի տեսական ուսուցումն ապահովի կուսակցության քաղաքականության խոր ըմբռնումը, նպաստի մարդկանց պատասխանատվության բարձրացմանը իր քաղաքացիական պարտքի կատարման համար, այն պետք է կրի



ներգործուն ստեղծագործական բնույթ։ Ուսուցման ակտիվ ձևերի ու մեթոդների զարգացումը դրա որակի և արդյունավետության բարձրացման անհրաժեշտ պայմանն է։ Վերջին տարիներս այս բնագավառում որոշ փորձ է կուտակվել։ Ամենուրեք պրակտիկայում սկսել են արմատավորվել ռեֆերատների ու զեկուցումների քննարկումը, բանավեճերը, ուսուցման պրոբլեմային մեթոդը, գիտագործնական կոնֆերանսները, սոցիալիստական մրցության կազմակերպման գործնական առաջադրանքների կատարումը և այլն։ Այդ ամենը հնարավորություն է ընձեռում ավելի լայնորեն ծավալելու «Պրոպագանդիստը՝ հնգամյակին» շարժումը, բարձրացնելու դրա դերը ունկնդիրների աշխատանքային ակտիվության զարգացման գործում։

Ավելի ու ավելի մեծ զարգացում է ստանում կուսակցական ուսուցման համակարգի ունկնդիրների հասարակական-քաղաքական պրակտիկան։ Նրանք քաղինֆորմացիաներով ու զրույցներով հանդես են գալիս աշխատանքային ընկերների առջև, ըստ բնակության վայրերի, մասնակցում կոլեկտիվում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի վերլուծությանը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի առաջադրած նոր խնդիրները կուսակցական կոմիտեներից պահանջում են լուրջ ջանքեր գործադրել պրոպագանդիստներին ցույց տրվող տեսական և մեթոդական օգնության նպատակով։ Հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել հոգեբանության և մանկավարժության, հակապրոպագանդայի, դասավանդվող առարկայի տեսության մեթոդիկայի գիտելիքներով պրոպագանդիստների զինմանը։

Պրոպագանդիստների ընթացիկ ուսուցումն առաջվա պես կիրականացվի կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին առընթեր մշտական գործող սեմինարներում։ Երկարամյա փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ պրոպագանդիստների ամենամյա ուսուցումը, նրանց աշխատանքի պայմանների նկատմամբ կուսակցական կոմիտեների մշտական ուշադրությունը նպաստում են պրոպագանդիստական վարպետության աճին, ռեալ պայմաններ են ստեղծում ուսման արդյունավետության բարձրացման համար։ Որոշ տեղերում նկատվող պրոպագանդիստական սեմինարների ոչ կանոնավոր անցկացումը կարող է հանգեցնել կուսակցական ուսուցման որակի և արդյունավետության իջեցման։ Քաղուսուցման գործում մշտապես մեծանում է մարքսիզմ-լենինիզմի համալսարանների դերը։

Անհրաժեշտ է կատարելագործել պրոպագանդիստներին օգնություն ցույց տալու նաև մյուս ձևերը, ավելի լայնորեն պրակտիկա դարձնել անհատական կոնսուլտացիաները, զարգացնել հենակետային դպրոցների աշխատանքը, սկսնակների նկատմամբ փորձառու պրոպագանդիստների շեֆությունը, փորձի փոխանակությունը, ակտիվորեն օգտագործել պրոպագանդիստի օրը։

Կուսակցական կոմիտեները պետք է անշեղորեն կատարեն ՍՄԿԿ Կենտկոմի հանձնարարականներն այն մասին, որ դպրոցների ու սեմինարների ստեղծումը նպատակահարմար է միայն մարքսիզմ-լենինիզմի բնագավառում լավ պատրաստված կոմունիստների առկայության դեպքում, որոնք կարող են հաջողությամբ աշխատել որպես պրոպագանդիստներ և կոնսուլտանտներ։

Կուսակցական լուսավորության արդյունավետ ղեկավարումն իրականացնելը նշանակում է խորապես ու բազմակողմանիորեն վերլուծել պարապմունքների որակը, դրանց ներգործունությունը, հսկայական փորձից ընտրել այսօրվա պրակտիկայի համար առավել արժեքավոր ձևերն ու մեթոդները, բարելավել ունկնդիրների ուսուցման և պրոպագանդիստների աշխատանքի վերահսկողությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը կուսակցական կազմակերպություններին, պրոպագանդիստներին բարձր պահանջներ ներկայացրեց կոմունիստների, բոլոր աշխատավորների մարքս-լենինյան կրթության և դաստիարակության կատարելագործման բնագավառում։ Պլենումի որոշումների իրականացումը կօգնի գաղափարախոսական, գաղափարադաստիարակչական ամբողջ աշխատանքը բարձրացնելու ժամանակակից խնդիրների մակարդակին, այն ավելի սերտորեն կապելու սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության պրակտիկայի հետ։

---

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՆԵՐԱԶԴՄԱՆ ՀԶՈՐ ՄԻՋՈՑԸ

Գ. Մ. ԹՈՐՈՍՅԱՆՑ

*ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ, երբ սովետական հասարակարգը թևակոխել է հասունության բարձր աստիճանը, առավել մեծանում է մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների դերն ու նշանակությունը, որոնք կոչված են ընթերցողների լայն շրջաններին իրազեկ պահելու նրանց հետաքրքրող բազմապիսի հարցերին, ապահովելով դրանց ժամանակին ու ճիշտ ընկալումը։*

*Մեծանում է թերթերի, ամսագրերի, հեռուստատեսության և ռադիոյի ներգործությունը էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի զարգացման, ողջ հասարակական կյանքի վրա։ Մամուլն օգնում է ընթերցողին՝ ճիշտ կողմնորոշվելու երկրի ներքին և միջազգային իրադարձություններում, առավելագույնը ներդնելու կոլեկտիվի, մեր ընդհանուր առաջընթացում։*

*««Տրուդ» թերթի աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ կարևորվում է կյանքի, ընթերցող լայն զանգվածների հետ մամուլի կապի ամրապնդումը։ Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները էկոնոմիկայի զարգացման վրա կներազդեն միայն այն դեպքում, երբ մշտական ուշադրության կենտրոնում պահեն տնտեսական և սոցիալական զարգացման կարևորագույն հարցերը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում շեշտվեց, որ մամուլի արդյունավետ գործունությունը, սոցիալ-տնտեսական զարգացման և դաստիարակչական աշխատանքի խնդիրների լուծմանը նրա մասնակցության արդյունավետությունն ուղղակիորեն պայմանավորված են կուսակցական ղեկավարման մակարդակով։*

*Կուսակցական կոմիտեների գործունեության մեջ մեծ տեղ են գրավում մամուլի գաղափարական մակարդակի բարձրացման, դրա աշխատանքի կոորդինացման և օպերատիվության հարցերը։ Մամուլի նկատմամբ կուսակցական ղեկավարությունն իրականացվում է նրա առջև կանգնած առանցքային խնդիրների սահմանմամբ, մշտական վերահսկողությամբ և պահանջկոտությամբ, լրագրողների, նախ և առաջ ղեկավար կադրերի պատասխանատվության բարձրացմամբ, խմբագրական կոլեկտիվների կյանքում կուսակցական կազմակերպությունների դերի ուժեղացմամբ, կադրերի ընտրությամբ և դաստիարակությամբ։*

*Մամուլի և մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի մյուս միջոցների գործունեության հիմնարար դրույթները բխում են մարքս-լենինյան տեսության գաղափարներից, կուսակցության համապատասխան փաստաթղթերից։ Ղեկավարվելով դրանցով, ինչպես նաև ելնելով հանրապետության առջև ծառացած խնդիրներից և կոնկրետ իրավիճակից, հասարակական զարգացման յուրաքանչյուր փուլում Հայաստանի կոմկուսի Կենտկոմը սահմանում է մամուլի հեռանկարային և ընթացիկ խնդիրները։ ՀԿԿ XXVII համագումարում նշվեց, որ մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցներն «սկսել են ավելի հետևողականորեն և հմտորեն լուսաբանել հանրապետության հասարակական-քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքը, աշխատավորների մեծագործությունները, կուսակցական, սովետական, տնտեսական կազմակերպությունների բազմաբովանդակ գործունեությունը, գաղափարաբարոյական դաստիարակության հարցերը»։ Միաժամանակ ուշադրություն հրավիրվեց այն հանգամանքի վրա, որ «խմբագրությունները դեռ շատ բան պետք է անեն իրենց ելույթների, հրապարակումների և հաղորդումների ներգործունությունը բարձրացնելու, տնտեսական և կուլտուրական շինարարության, կուսակցական աշխատանքի, գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության կարևորագույն հարցերը խորապես, համակողմանիորեն արտացոլելու ուղղությամբ»։*

*ՀԿԿ Կենտկոմը խմբագրությունների ջանքերն օպերատիվորեն նպատակամղում է հանրապետության հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի կարևորագույն հարցերի բազմակողմանի ու հմուտ լուսաբանմանը։ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում սիստեմատիկաբար հրավիրվող խորհրդակցություններում, որոնց մասնակցում են հանրապետական պարբերականների խմբագիրները, արծարծվում են կյանքի թելադրանքով բարձրացված հարցերի լուսաբանման խնդիրները, որոշվում ընթացիկ անելիքները։*

*ՀԿԿ XXVII համագումարում քննադատական խոսք ասվեց հանրապետական թերթերի հասցեին, որոնց առանձին հրապարակումներում «պակասում են կոմունիստական շինարարության մեջ հաջողությունների կենդանի, տպավորիչ պատկերումը, առաջավոր փորձի կոնկրետ, իրազեկ պրոպագանդումը։ Որոշ նյութեր տառապում են մակերեսայնությամբ, բառային ճարճատյունով, երբեմն նաև՝ գաղափարական վրիպումներով, շաբլոնով և անճաշակությամբ»։*

*Ղեկավարվելով կուսակցության պահանջներով, խմբագրական կոլեկտիվները գործնական քայլերի դիմեցին հրապարակվող նյութերի արդյունավետությունը բարձրացնելու համար։ Թերթերն առավել խորամուխ եղան տնտեսական, կուլտուրական շինարարության և հասարակական-քաղաքական կյանքի բարդ պրոցեսների մեջ՝ բարձրացնելով հրապարակումների գաղափարական և պրոֆեսիոնալ մակարդակը։ Նկատելիորեն ընդլայնվել է հեղինակների շրջանակը՝ հիմնականում բանգյուղթղթակիցների հաշվին։*

*ՀԿԿ Կենտկոմը, քննարկելով ՍՄԿԿ XXVI համագումարի փաստաթղթերի և նյութերի պրոպագանդման ու պարզաբանման ասպարեզում «Կուսակցական խոսք» հանդեսի փորձը, նշեց, որ խմբագրության աշխատակիցների և ակտիվի ջանքերով որոշակի դրական աշխատանք է կատարված։ 1981 թ. «Կոմունիստ» հանրապետական թերթում տպագրվեց Լենինականի «Արշալույս» արտադրամիավորման առաջավոր վարպետ Ա. Շիլաջյանի «Ավանդույթներ և «ավանդույթներ»» հոդվածը։ Հեղինակը վրդովմունքով էր խոսում այն քաղաքացիների մասին, որոնք, ավանդույթների պահպանման պատրվակով, հետևելով հոռի բարքերին, հարսանիքները, անվանակոչությունները և նույնիսկ սգո սեղանը վեր են ածում անզուսպ խրախճանքի։*

*ՀԿԿ Կենտկոմը պաշտպանեց թերթի ելույթը և հանձնարարեց հանրապետական ու տեղական մամուլին, ինֆորմացիայի և պրոպագանդայի մյուս միջոցներին՝ առավել ուշադրություն նվիրել դաստիարակչական բնույթի հոդվածներին, նպատակային պայքար մղել սպառողական հոգեբանության, քաղքենիության, իրապաշտության, առանձին մարդկանց վարքագծում նկատվող բացասական երևույթների, շռայլության, կենցաղային սանձարձակության դեմ։ Առավել մատչելի և համոզիչ կերպով պատմել սովետական քաղաքացիական ծեսերի ներդրման կուտակված փորձի, իրոք ժողովրդական, դեմոկրատական ավանդույթների զարգացման և սոցիալիստական ավանդույթների հաստատման անհրաժեշտության մասին, լայնորեն լուսաբանել կուսակցական կազմակերպությունների աշխատանքն այդ ուղղությամբ։*

*Մամուլի ներազդման գրավականը ճշմարտացիությունն է, կոնկրետությունը, իրավիճակի զգաստ լուսաբանումը։ Դա անհրաժեշտ է թե՛ մեր ձեռքբերումների մասին գրելիս, թե՛ թերությունները քննադատելիս։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը խիստ կարևորեց մամուլի ելույթների գործունության անհրաժեշտությունը։ Տարվա սկզբին թերթերի մեծ մասը հրապարակում է աշխատավորական կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունները։ Իսկ ինչ վերաբերում է դրանց կենսագործման համար կա-*

տարվող աշխատանքի արտացոլմանը, այստեղ արդեն մամուլը միշտ չէ, որ հետևողական է։

ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ տնտեսական և արտադրական հարցերին վերաբերող հրապարակումները հաճախ կառուցվում են ըստ արմատացած բանաձևի՝ «Եթե պլանը կատարված է, ուրեմն, ամեն ինչ լավ է»։ Իսկ ինչպես է պլանը կատարվում, ինչպիսին է արտադրության կազմակերպման և կուլտուրայի, աշխատանքի արտադրողականության մակարդակը։ Ինչպիսին են աշխատանքային, նյութական և էներգետիկ ծախսերը, ինչպիսին է աշխատանքի, արտադրանքի որակը։ Այս հանգուցային հարցերը միշտ չէ, որ պատշաճ լուսաբանում են ստանում։

«Մեզ անհրաժեշտ է լրիվ և ճշմարտացի ինֆորմացիա»,— նշել է Վ. Ի. Լենինը (ПСС, т. 54, стр. 446)։ Ճշմարտացի ինֆորմացիան գաղափարական աշխատանքի գործուն միջոց է։ Այն մարդկանց սովորեցնում է անկանխակալ ընկալել իրական երևույթները։ Եվ մեր մամուլը ձգտում է խոսել այդ մասին, հասարակայնության ուշադրությունը հրավիրել դրանց վրա, մասսաներին համախմբել, ուղիներ և միջոցներ որոնել չլուծված պրոբլեմների լուծման, թերությունների հաղթահարման նպատակով։

Մամուլն ակտիվորեն ներգործում է մարդկանց գիտակցության վրա, ձևավորում և զարգացնում է հասարակական կարծիքը, մասսաներին նպատակամղում հրատապ խնդիրների կենսագործմանը։ Կարելի է հիշատակել ոչ քիչ պրոբլեմներ, որոնց լուծման գործում մամուլը լրջորեն օգնել է կուսակցությանն ու պետությանը։ Նշենք թեկուզ տնտեսական մեխանիզմի կատարելագործման խնդիրը։ Մամուլը երկար ժամանակ քննարկում էր այդ հարցը մինչև 1975 թ. հայտնի որոշման ընդունումը։ Միայն «Պրավդան» այդ ժամանակամիջոցում ստացել է հինգ հազար նամակ, բազմաքանակ նամակներ են ստացվել և հրապարակվել մեր հանրապետության մամուլում։ Այսօր մեր մամուլն ակտիվորեն է լուսաբանում պարենային ծրագրի կենսագործումը, հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կենսաթրթիռ պրոբլեմները։ Հանրապետական լրագրերը մշտապես անդրադառնում են Իջևան—Հրազդան երկաթուղագծի, Երևանի մետրոպոլիտենի, մարզահամերգային համալիրի և մյուս կարևորագույն օբյեկտների շինարարությանը։ Ավելի ու ավելի մեծ տեղ է տրվում կարգապահության ամրապնդման, կազմակերպվածության և պատասխանատվության բարձրացման հարցերին։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը նշեց, որ մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի գործունեությունը «մեր օրերում զգալի չափով բնորոշում է կուսակցական պրոպագանդայի արդյունավետությունը, գաղափարախոսական ճակատի մյուս տեղամասերի գործերի վիճակը»։ Թերթը լուրեր հաղորդող, կամ ինչպես այժմ ասում են՝ կյանքի իրադարձությունների մասին տեղեկությունների վերահաղորդիչ չէ։ Այն վստահությամբ օժտված զրուցակից է, և հենց դրանում է նրա հասարակական մեծ ուժը։ Սովետական մամուլի էջերը բաց են բոլոր նրանց առջև, ովքեր ասելիք ունեն ընթերցողին։

Մամուլը մշտապես գտնվում է կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում, որի միջոցով ապահովվում է կուսակցական կազմակերպությունների բազմաբեղուն աշխատանքի համակողմանի լուսաբանումը։ Այն նպաստում է արտադրական կոլեկտիվներում անհրաժեշտ քաղաքական ու աշխատանքային մթնոլորտի ստեղծմանը։

Տեղական մամուլի ելույթների արդյունավետության բարձրացմանն են նպատակամղված շրջանային և քաղաքային թերթերի խմբագիրների եռամսյակը մեկ հրավիրվող փնջային սեմինար-խորհրդակցությունները։ Քննարկվում են տեղական մամուլի ու ռադիոհաղորդումների գործունեությունը ժողովրդատնտեսական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գաղափարական ապահովման, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան պլենումների որոշումների կենսագործման հրատապ խնդիրները, աշխատանքային, պլանային ու պետական կարգապահության ամ-



րապնդման գործում մամուլի դերի բարձրացման հարցերը։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշվեց, որ կուսակցական կոմիտեների կողմից տեղական մամուլի ղեկավարման պրակտիկայում երբեմն նկատվում է երկու ծայրահեղություն՝ մեկ շրջկոմներն ու քաղկոմներն ասես մոռանում են իրենց թերթերը, մեկ էլ, ընդհակառակը, մանր խնամակալությամբ կաշկանդում նրանց նախաձեռնությունը։

ՀԿԿ XXVII համագումարում և Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում քննադատական խոսք ասվեց առանձին կուսակցական կոմիտեների հասցեին, որոնք թերագնահատում են մամուլի դերը՝ որպես մասսաների շրջանում տարվող գաղափարաքաղաքական ողջ աշխատանքի կարևորագույն միջոցի, վատ են օգտագործում այն՝ կյանքի տարբեր ոլորտներում աշխատանքներն ուժեղացնելու, շրջանի, քաղաքի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման նպատակով։

Կուսակցության այս արդարացի և տեղին դիտողությունն ուշիուշով հաշվի է առնվում կուսակցական կոմիտեների ամենօրյա պրակտիկայում։ Այժմ հաճախակի են դարձել խմբագիրների հաշվետվությունների քննարկումները։ Վերջին շրջանում թերթերի խմբագիրների հաշվետվությունները լսել են ՀԿԿ Երևանի, Կիրովականի, Դիլիջանի քաղկոմներում, Արթիկի, Նաիրիի, Հրազդանի, Արագածի, Էջմիածնի, Արտաշատի շրջկոմներում։ Բազմազան են այդ քննարկումների թեմաները. «Պարենային ծրագրի իրականացման նպատակով շրջանի անասնապահների պայքարի լուսաբանումը «Արագած» թերթում», «Նորարարների և արտադրության առաջավորների փորձի պրոպագանդան Կիրովականի քաղաքային «Կայծ» թերթում», ««Արտաշատ» թերթի գործունեությունը երիտասարդության աշխատանքային և տնտեսագիտական դաստիարակության ասպարեզում», ««Նաիրի» թերթի դերը տնտեսական շինարարության պլանների կատարման գաղափարախոսական ապահովման բնագավառում», ««Դիլիջան» քաղաքային թերթի աշխատանքը բնակչության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության ուղղությամբ», «Արթիկի շրջանային թերթի աշխատանքը տեղական արտադրական ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործման համար», «Ինչպես է «Հրազդան» թերթը հասնում իր ելույթների ներգործունությանը» և այլն։ Քննարկումների ընթացքում տպագիր օրգանների հաջողությունները, ինչպես և թերացումները գնահատվում են՝ ելնելով գլխավոր պահանջից. ինչպիսին է թերթի կոնկրետ ներդրումը մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության, ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումների, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար նրանց ուժերի համախմբման գործում։

Թերթերի հաշվետվությունները քննարկելիս ի հայտ են գալիս նաև մամուլի ղեկավարման հարցում առկա թերացումները։ Էջմիածնի շրջանային թերթի գործունեության քննարկման ժամանակ նշվեց, որ խմբագրությունը շատ բան է արել շրջանի առջև ծառացած հրատապ խնդիրների լուսաբանման համար, օգնել տարածելու տնտեսական և կուլտուրական շինարարության առաջավոր փորձը, ակտիվորեն պայքարել անհարիր երևույթների, կոմունիստական բարոյականության նորմերի խախտումների դեմ։ Թերթի հրապարակումները ակտիվ հետաքրքրություն են առաջացնում շատ էջմիածինցիների մոտ, սակայն, ինչպես պարզվեց, ոչ բոլորի մոտ։ Որոշ կոմունիստներ, այդ թվում նաև շրջանային օղակի առանձին աշխատողներ, տեղական թերթը չեն կարդում կամ թեթևակի աչքի են անցկացնում այն։ Դրա հետևանքով նրանց տեսադաշտից «վրիպում» են շատ նյութեր, այդ թվում՝ քննադատական։ Հետևաբար, եթե չեն կարդում, ապա չեն էլ... արձագանքում։ Քննարկումը ցույց տվեց, որ թերթի պասիվ ընթերցողների թվում են նաև որոշ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ։ Շրջկոմը պահանջեց ուշիուշով հետևել թերթի աշխատանքին, օգնել, որպեսզի այն առավել խորությամբ ու ամբողջական լուսաբանի շրջանի կյանքը, իսկ նրանց, ովքեր չեն հետևում ու արձագանքում մամուլի ելույթներին,

առաջարկվեց հանդես բերել կուսակցական ու պետական մոտեցում տպագիր խոսքի ահազանգումներին։

Կուսակցական կոմիտեների աջակցությունն ուժեղացնում է մամուլի քննադատության ներգործունությունը։ Այս հանգամանքը հնարավորություն է ընձեռում ավելի փաստարկված ու հետևողականորեն բացահայտելու աշխատանքներում տեղ գտած թերությունները, խույս տալու մանրաթեմայնությունից, լրատուական միտումից։

Մի շարք կուսակցական կոմիտեներ կիրառում են թերթի քննադատության արդյունավետության բարձրացման նոր մեթոդներ։ Նրանք, օրինակ, քննադատական ելույթների հետագա ճակատագիրը խմբագրության հետ վերցնում են համատեղ հսկողության տակ։ Այդպիսի նյութերի պատասխաններն ուղարկվում են երկու հասցեով՝ շրջանային կոմիտե և խմբագրություն։ Թերթի ելույթների արդյունավետության բարձրացման այս միջոցը լրացնում է կուսակցական ներազդման ավանդական մեթոդների զինանոցը, այն է՝ թերթի բարձրացրած պրոբլեմի քննարկումը կուսակցական կոմիտեի բյուրոյում, հատուկ կուսակցական որոշման ընդունումը՝ ի պաշտպանություն քննադատական ելույթների, թերթի քննադատությանը սխալ արձագանքող ղեկավարների նկատմամբ պահանջկոտության բարձրացումը, մեկ անգամ արդեն քննարկված քննադատական իրավիճակին կրկին անդրադառնալը։

Կուսակցական կոմիտեները երբեմն ստիպված են լինում որոշ աշխատողների հիշեցնել մամուլի ելույթներին գործնականորեն արձագանքելու և այդ առթիվ ըստ էության, կշռադատված միջոցառումներ մշակելու անհրաժեշտության մասին, մշտապես հսկողության տակ պահել դրանց իրականացումը և լրիվին, մինչև վերջ կատարել նշված միջոցառումները։ ՀԿԿ Երևանի քաղկոմի նախաձեռնությամբ քաղսովետի գործադիր կոմիտեն քննարկեց թերթերի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների քննադատական ելույթներին ընթացք տալու հարցը։ Մամուլում հրապարակված որոշմամբ գործադիր կոմիտեն միջոցներ նշեց քաղաքային տնտեսության մեջ առկա թերություններ վերացնելու, սովետական մարմիններում բյուրոկրատիզմի, ձևամոլության և քաշքշուկի, քաղաքացիների պահանջների և հոգսերի նկատմամբ անտարբեր վերաբերմունքի դրսևորումները կանխելու համար։ Ընթերցողները գոհունակությամբ ընդունեցին այդ որոշումը։ Սակայն առկա բազմաթիվ թերությունների շուտափույթ վերացման ոչ բոլոր հույսերն իրականացան։ Մի շարք թաղամասերում ձմռանն անկանոն է գործել ջեռուցումը, չի լուծված անխափան ջրամատակարարման հարցը, շարունակում են դժգոհություններ հարուցել քաղաքային տրանսպորտի, առևտրի, կենցաղային սպասարկման ոլորտներում առկա թերությունները։ Մարդիկ սկսեցին մտածել՝ լավ որոշում ընդունելով, մինչև վերջ չի ապահովվել դրա կատարումը։ Սա խիստ ուսանելի է նաև ժուռնալիստների համար։ Ստացվում է, որ բավական չէ թերթում տպագրել ձեռնարկված միջոցների մասին, պահանջվում է ընթերցողների ամենօրյա հրապարակային վերահսկողությունը նախատեսվածի իրականացման նկատմամբ։

Մամուլի ելույթների արդյունավետությունը չափվում է ոչ միայն քննադատական հոդվածներին գործնականորեն արձագանքելով։ Պակաս կարևոր չէ դրական նյութերի ներազդումը։ Թերթերի ընդհանրացրած ուսանելի փորձը պետք է գործի ողջ ուժով, հնարավորին չափ լայնորեն տարածվի աշխատավորական կոլեկտիվներում, դառնա ավելի շատ մարդկանց սեփականությունը։ Իսկ այդ բանին հասնելու համապատասխան կազմակերպական, հոգեբանական միջոցները դեռևս պատշաճ կերպով չեն մշակվել։

Մամուլի աշխատանքն արդյունավետ է միայն այն դեպքում, երբ ուշադրությունը կենտրոնացվում է ժողովրդի կենսագործունեության գլխավոր ուղղությունների վրա, երբ արծարծվում են հրատապ հարցեր և դրանց քննարկմանը լայնորեն ներգրավվում են աշխատավորները։ Դիմելով խմբագրությանը, ընթերցողները տեղեկացնում են շրջանի, քաղաքի, աշխատավորական կոլեկտիվի կյանքի մասին, իրենց հոգսերի և պահանջմունքների մասին։ Նամակների հեղինակները քննադատում են կազմակերպությունների աշխատանքներում տեղ գտած թերություններն ու վրիպումները, օգնում վերացնելու դրանք։ Մինչդեռ հրապարակման համար տակավին քիչ են օգտագործվում ընթերցողների թղթակցությունները և մյուս նյութերը։ Կան փաստեր, երբ խմբագրությունների բաժիններում աշխատավորների նամակների քննարկումը ձգձգվում է, որի պատճառով կորչում է դրանց հրատապությունը։ Այլ կազմակերպություններ ուղարկվող նամակների քննարկման վերահսկողությունը հաճախ թույլ է և քիչ արդյունավետ։ Կուսակցական մամուլի աշխատողներն առավել հետևողական միջոցներ են ձեռնարկում կատարելագործելու աշխատավորների նամակների հետ տարվող աշխատանքը, դրանց ավելի մեծ տեղ է տրվում թերթերի էջերում։

Մեր հասարակության գլխավոր նվաճումը սովետական մարդն է՝ բոլոր նյութական և հոգևոր արժույթների ստեղծողը։ Աշխատավոր մարդը մեր մամուլի առաջին և հիմնական թեման է, և մենք շատ ենք գրում հարվածայինների, առաջավորների, նորարարների մասին։ Բայց արդյո՞ք միշտ ենք լավ և ինչպես հարկն է գրում։ Առայժմ մարդկանց մասին մեր նյութերում գերազանցում է տեխնոլոգիզմը։ Մեր հերոսը հիմնականում հանդես է գալիս որպես «տնտեսական», «տեխնոլոգիական» մարդ կամ «բյուրոկրատ», այլ ոչ թե կենդանի մարդ՝ ուժեղ և թույլ կողմերով, իր շահերով ու պահանջմունքներով։ Մենք աշխատավորին սովորաբար ցույց ենք տալիս արտադրության պրոցեսում, հաճախ աչքաթող անելով, որ մարդկային հատկանիշները չեն հանգում սոսկ մասնագիտականին։ Մեծ արվեստ է ցույց տալ մարդուն որպես աշխատավոր, որպես քաղաքացի և ընտանիքի անդամ, որը խոհեր ու ձգտումներ ունի։ Եվ շատ կարևոր է մարդուն մոտենալ ո՛չ միայն այսօրվա, այլև վաղվա չափանիշներով, նրան դաստիարակել կոմունիստական իդեալին համապատասխան։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում միանգամայն տեղին շեշտվեց, թե մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ նոր մարդը ոչ թե միայն հեռավոր իդեալ է, այլև մեր օրերի իրողությունը։

Վլադիմիր Իլյիչ Լենինը մամուլը համարել է գաղափարական ազդեցության, հասարակության քաղաքական ղեկավարման հզոր գործիք։ Այն աշխատավորների կոմունիստական դաստիարակության ու կազմակերպման, կուսակցության քաղաքականության գաղափարախոսական ապահովման գործուն միջոց է։ Եվ մամուլի սոցիալական ակտիվ դիրքորոշումը դառնում է մասսաների վրա ներգործելու որոշիչ պայման։ Զարգացնելով բոլշևիկյան հրապարակախոսության ավանդույթները, սովետական մամուլն իր արժանի ավանդն է ներդնում կուսակցության որոշումների և տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար աշխատավորության ուժերի համախմբման գործում։

# ԿՈՒՍԽՈՒՄԲԸ ՀՈՒՍԱԼԻ ՀԵՆԱՐԱՆ Է

*ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ԷՐ ՓԱԿՑՎԱԾ։ Արտադրամասի աշխատողները մի պահ կանգ էին առնում, ընթերցում ազդը, ապա սովորականի պես պատրաստվում հերթափոխին։ Գործն սկսեց նաև Հարությունը։ Սոնիկ Հակոբյանն աչքի պոչով նկատեց, որ նա անտրամադիր է։ Հարությունն էլ իր հերթին «բռնեց» կուսխմբի ղեկավարի հայացքը։ «Տեսնես ի՞նչ է պատահել Հարությունին,—խորհում էր Հակոբյանը։—Լավ է աշխատում, եթե պետք է՝ օգնում է։ Չի եղել դեպք, որ խոտան արտադրանք տա։ Գուցե ընկերներից որևէ մեկը կշտամբե՞լ է նրան։ Չէ՛, այդ էլ չի»։ Հետո Սոնիկն իրեն բռնեց այն բանում, որ երբեք մտքով չէր անցել։ Սկսեց մեղադրել իրեն, ընկերներին։ Ահա տարիներ շարունակ աշխատում են կողք-կողքի, ամեն օր հերթափոխն ընդունում ու ավարտում են միասին և դեռ էլի իրար լավ չեն ճանաչում։*

*Հնչեց ընդմիջման զանգը։ Հարությունը լուռ նախաճաշեց, ծխախոտը վառելով, դուրս եկավ բակ։*

*— Ի՞նչ ես մթնել, կրակդ տուր։*

*Սիրեկանն էր, Սիրեկան Առաքելյանը, որը նույնպես առավոտից նկատել էր ընկերոջ անտրամադիր լինելը։*

*Հարությունը լուռ նրան մոտեցրեց վառիչը, ապա դեմքին թույլ մի ժպիտ շողաց, պատասխանեց, որ ոչինչ էլ չի պատահել, ծխախոտի մնացորդը նետեց աղբարկղ ու նորից մտավ արտադրամաս։*

*...Հերթափոխից հետո Երևանի տրիկոտաժի «Անուշ» արտադրամիավորման գործող-կարող արտադրամասի կուսխումբը գումարեց իր նիստը։ Այստեղ էին նաև արտադրամասի մյուս աշխատողները։ Քննարկվում էր «Առանց խոտան ապրանքի» նշանաբանով աշխատելու նախաձեռնությունը, որի հեղինակներն այդ նույն կուսխմբի ակտիվիստներն էին։ Աշխատանքային հիանալի ավանդույթներ ունեցող արտադրամասի հայրենասիրական նախաձեռնության մասին դրվատանքով խոսեցին բոլորը։ Վճռվեց որոշման մասին տեղյակ պահել միավորման կուսկոմիտեին։*

*Երբ գործարար քննարկումն ավարտվեց, կուսխմբի ղեկավար Սոնիկ Հակոբյանը Հարություն Խանյանին խնդրեց մնալ։ Հարությունը լուռ նստեց Հակոբյանի առաջարկած աթոռին.*

*— Առաջարկը սրտովդ չէ՞ր,— բարեկամաբար, հեռվից սկսեց Սոնիկը։*

*— Ո՞վ ասաց։ Ինչո՞ւ եք այդպես կարծում,— զարմացած պատասխանեց Հարությունը։*

*— Քո պասիվությունը։ Ո՛չ քննարկմանը մասնակցեցիր, ո՛չ ելույթ ունեցար։ Ձեռք էլ բարձրացնում էիր ի միջի այլոց։*

*Հարությունը չէր սպասում այդպիսի «սատանայական» քայլի։*

*— Իմ պասիվությո՞ւնը։ Ի՞նչ պասիվություն։ Նախաձեռնությունը լավն էր և կարծում եմ հավանության կարժանանա։ Ուրիշ ասելիք չունեմ։*

*— Դե՛, եթե ասելիք չունեք, գնանք տուն, ուշ է։*

*Երկնքում սկսվել էր աստղային հեքիաթը։ Կտուրների վրայով, լույսերի ծովի միջից մեղմիկ իջնում էր երեկոն։ Քայլում էին լուռ։ Վարպետ*



*Հարությունը հայացքը հառել էր լույսերի ծովին, և ներսում հուզմունքն էր փոթորկում։ Նա քայլում էր դեպի տուն՝ իր մտքերի ու վաղվա անելիքների խոհերով։ Հոգնությունից հետք անգամ չէր մնացել։ Մի տեսակ խղճի խայթ էր զգում կողքից քայլող կնոջ հանդեպ։ Ընդմիջման ժամանակ էլ Սիրեկանը հարցրեց անտրամադիր լինելու պատճառը։ Մտովի կշտամբեց իրեն։ Մի՞թե ընկերները մեղավոր են, որ ձգձգվում է, չի լուծվում իր անձնական հարցը։*

*— Տուն չե՞ք հրավիրի,— ասես ջրհորի խորությունից լսեց Սոնիկի հարցը։*

*— Իհարկե՛, իհարկե՛, մերոնք ուրախ կլինեն, որ...*

*Աստիճանների վրա, ակամա, ասես, ինքն իր հետ խոսի, Հարությունն ասաց.*

*— Մի քիչ նեղվածք է մեզ մոտ, մարդ չենք հրավիրում։*

*— Ոչի՛նչ, ես երկար չեմ մնա, միայն մի քանի րոպեով։*

*...Հեռուստացույցով ինչ-որ ֆիլմ էին ցուցադրում։ Հարությունի երեխաները, կինը խմբվել էին փոքրիկ սենյակում, իսկ ննջասենյակում անխռով քնած էր Թոռնիկը։ Հյուրին ընդունեցին սիրալիր։ Սոնիկը ծանոթացավ Խանյանների հետ, զրուցեցին ջերմ, վաղեմի բարեկամների պես...*

*...Միավորման կուսկոմիտեի քարտուղար Ռոլանդ Պողոսյանը գործող-կարող արտադրամասի կուսակցական խմբի նախաձեռնության վերաբերյալ որոշման ընթերցումն ավարտեց, ապա գոհունակ ու խրախուսող տոնով ասաց.*

*— Հիանալի է։ Առաջիկայում կքննարկենք կուսկոմիտեի նիստում։*

*Կուսխմբի ղեկավարը քարտուղարին մեկնեց մեկ ուրիշ թուղթ ևս։*

*— Սա ի՞նչ է,— հետաքրքրվեց քարտուղարը։*

*— Մեր կուսխմբի զեկուցագիրը,— հանգիստ պատասխանեց Սոնիկ Հակոբյանը և դուրս եկավ կուսկոմիտեի քարտուղարի առանձնասենյակից։*

*Ռ. Պողոսյանը հանձնարարություն չէր տվել և զեկուցագրի էլ չէր սպասում։ Ուրեմն ի՞նչ փաստաթուղթ է սա։ Ծանոթանալով կուսխմբի ուսումնասիրության արդյունքներին՝ նա պարզեց հետևյալը. գործող-կարող արտադրամասի առաջավոր բանվոր Հարություն Խանյանի բազմանդամ ընտանիքը բնակարանի բարելավման խիստ կարիք ունի։ Տարիներ շարունակ սպասում է բարելավման, սակայն ապարդյուն։*

*«Կուսխումբն աշխատում է նվիրումով։ Նրա տեսադաշտում ոչ միայն արտադրության ու կարգապահության հարցերն են, այլ նաև մարդիկ։ Իսկ սա շատ կարևոր է»,— խորհում էր քարտուղարը։ Ահա թե ինչ է նշանակում վստահել մարդկանց, նրանց ստուգել գործի փաստական կատարումով։*

*Իրոք որ կուսխմբերը կուսկոմիտեի հուսալի օգնականներն են, նրա հենարանը արտադրության ստորին օղակներում։ Չէ՛ որ կուսկոմիտեի քարտուղարը միայնակ չի կարող հասու լինել բազմահազարանոց կոլեկտիվում աշխատող յուրաքանչյուրի հետաքրքրությունների շրջանակին, ակտիվությանը, կարիքներին ու հոգսերին, առաջարկություններին...*

*Շուտով կուսկոմիտեի աջակցությամբ բարելավվեցին Խանյանների բնակարանային պայմանները, իսկ գործող-կարող արտադրամասի կուսխմբի հայրենասիրական նախաձեռնությունը հավանության արժանացավ ինչպես արտադրամիավորման գլխամասային ձեռնարկության բոլոր արտադրամասերում, այնպես էլ Աշտարակի, Դիլիջանի, Եղվարդի մասնաճյուղերում։ Այս միջոցառման շնորհիվ զգալիորեն բարձրացել է յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը։*

*Միավորման գործող-կարող արտադրամասի կուսխմբի դրվատանքի արժանի աշխատանքի ձևերն ու մեթոդները եզակի չեն։ Ուսանելի փորձ են կուտակել նաև մյուս արտադրամասերի ու ծառայությունների կուսխմբերը։*

*Ընդհանուր գործվածքային արտադրամասի կուսխմբի ղեկավար, միավորման կուսկոմիտեի անդամ Դարիկո Հովհաննիսյանը մեկն է այն կոմունիստներից, ովքեր կարողանում են հմտորեն զուգակցել իրենց աշխատանքային փորձն ու հասարակական-քաղաքական ակտիվությունը։ Քաջ գիտակցելով, որ կոմունիստը քաղաքական մարտիկ է, նա անձնական օրինակ է ծա-*

ռայում արտադրամասի մյուս աշխատողների համար։ «Որքան բարձր քաղաքական ու բարոյական հատկություններով օժտված լինի յուրաքանչյուր կոմունիստ, որքան ակտիվ լինի նրա կենսադիրքորոշումը, այնքան բարձր կլինի սկզբնական կուսկազմակերպության գործնական և բարոյաքաղաքական հեղինակությունը, այնքան ամուր կլինի վերջինիս դիրքը որպես աշխատավորության կոլեկտիվի քաղաքական ղեկավարի»,— նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ XXVII համագումարում։ Մի՞թե կոմունիստ, արտադրության առաջամարտիկ Դարիկո Հովհաննիսյանի անձնական օրինակը կուսակցության այս պահանջի հավաստումը չէ… Երբ Դարիկո Հովհաննիսյանին ընտրեցին կուսխմբի ղեկավար, ետ մնացողներն զգացին, որ լոդրության վերջը եկել է, իսկ առաջավորները գոհունակությամբ ընդունեցին փորձառու ընկերոջը։ «Անհրաժեշտ է բարձրացնել կուսխմբի հեղինակությունը, ակտիվորեն աշխատանքի ներգրավել բոլորին, հմտորեն օգտագործել մարդկանց կարողություններն ու ուժերը»— որոշեց Դ. Հովհաննիսյանը։

Թերթում եմ նրա գրառումների տետրը, ծանոթանում աշխատանքի անձնական պլանին։ Ցուցատետրում «Կարգապահություն» վերնագրի տակ գրված է Լ. Կիրակոսյանի անուն-ազգանունը։ Հետաքրքրվում եմ, գուցե խմբի ղեկավարը կարգապահության վերաբերող որևէ հանձնարարությո՞ւն է տվել Կիրակոսյանին։ Պարզվում է, որ ո՛չ։ Վերջինս հաճախակի ուշանում էր աշխատանքից, կոպտում ընկերներին, ուշադրություն չէր դարձնում թողարկվող արտադրանքի որակին։ Եվ շուտով կուսխմբի անդամներ, Հայաստանի Գերագույն սովետի դեպուտատ, ժողվերահսկողության Շահումյանի շրջկոմի անդամ Օհաննա Գրիգորյանին և գործող բանվորուհի Վարդիթեր Մխոյանին հանձնարարվեց զբաղվել Կիրակոսյանի հարցով։ Խմբի անդամները զրուցեցին վերջինիս գործընկերների, նրա հարազատների հետ, հետաքրքրվեցին, թե ինչով է զբաղվում նա աշխատանքից հետո։ Պարզվեց, որ Լ. Կիրակոսյանը սկսել է ընկերություն անել պարապ-սարապ թրև եկող մի քանի տղաների հետ, որոնք իրենց ազդեցության տակ են գցել երբեմնի բարեխիղճ աշխատողին։ Ընկերները Կիրակոսյանին խորհուրդ տվեցին հաշիվ տալ իրեն, ձերբազատվել կասկածելի միջավայրից, չէ՞ որ նրա վարքագիծը կարող է բացասաբար անդրադառնալ արտադրամասի բարոյահոգեբանական մթնոլորտի վրա։ Համբերատար բացատրական աշխատանքը, հոգատարությունը և տակտով արված դիտողությունները, նրբանկատ խորհուրդները բարերար ազդեցություն ունեցան երիտասարդի հետագա ճակատագրի վրա։

Վերջին զրույցը կուսխմբի ղեկավար Դարիկո Հովհաննիսյանի հետ էր։ Նա Կիրակոսյանին հրավիրեց աշխատանքի վետերաններից մեկի մեծարման երեկոյին։ Բազմաթիվ ջերմ մաղթանքներ հղեցին ներկաները իրենց աշխատանքային ընկերոջը, որը երեկոյի վերջում ասաց.

— Աշխատանքի սովոր մարդը տանը նստել չի կարող։ Դե՛, առանց ձեզ էլ ես երկար չեմ դիմանա։ Վաղը իմ հաստոցի մոտ կլինեմ։

Հովհաննիսյանը Լ. Կիրակոսյանին նայեց խուզարկու հայացքով, ասել է թե՝ «տե՛ս, ա՛յ, այսպիսին է աշխատանքի մարդը։ Քանի շուտ է՝ մոռացիր փողոցը, թե չէ ուշ կլինի»։

«Գոնե խոսեր, կշտամբանքի մի քանի խոսք ասեր այս մարդը,— մտածում էր Կիրակոսյանը,— թե չէ՛ թրի նման կտրող այդ հայա՜ցքը, այդ անասելի լռությո՜ւնը»։

Հրաժեշտի պահին տարեց կոմունիստը հայրաբար մեկնել էր ձեռքը.

— Բարի գիշեր։ Վաղը նոր օր կբացվի, թող այն բարի լինի։

Կիրակոսյանն ինքնաբերաբար մեկնել էր ձեռքը և շշնջացել.

— Վաղը նոր օր կբացվի, բարի գիշեր…

Կուսխմբերի աշխատանքային պլաններն ու դրանց վերահսկողությունը մշտապես գտնվում են միավորման կուսկոմիտեի ուշադրության կենտրոնում։ Բյուրոյի անդամները պարբերաբար ծանոթանում են ստորին օղակի աշխատանքին։



Երբ Ռազմիկ Սիմոնյանը մի քանի օր շարունակ այցելում էր ընդհանուր գործվածքային արտադրամաս, կուսխմբերի անդամները գլխի էին ընկել, որ այստեղ ինչ-որ բան այնպես չէ։ Ուրիշ ինչո՞վ կարելի էր բացատրել միավորման կուսկոմիտեի քարտուղարի տեղակալի, ժողվերահսկողության խմբի նախագահի հաճախակի այցելության պատճառը։ Շաբաթվա վերջում՝ հերթափոխից հետո, արտադրամասի կուսխմբերի անդամներն ու կազմակերպիչները ուշադրությամբ լսում էին կուսկոմիտեի քարտուղարի տեղակալին։ Սիմոնյանը խոսեց հակիրճ, բայց խիստ։ Բանն այն է, որ պատվիրատուներից մի նամակ էր ստացվել, որտեղ խոսվում էր առաքված արտադրանքի ցածր որակի մասին։

— Ի՞նչ է ստացվում,— շարունակեց նա,— ուրեմն դուք մարդկանց դեռ լավ չեք ճանաչում, հանգստացել եք նախկինում ստացված շնորհակալական նամակներով և այժմ էլ թուլացրել ձեր զգոնությունը։ Մոռացե՞լ եք, որ մեր մակնիշի որակն ու պատիվը՝ մեր պատիվն է ու հեղինակությունը…

Այնուհետև Սիմոնյանը բացատրեց, որ որակի մասին եղած բողոքի վերլուծությունը և վերջին դիտումները ցույց են տվել, որ աշխատողների մեծ մասն անբավարար է հետևում գործող մեքենաների տեխնիկական խնամքին, որի պատճառով էլ արտադրանքը թողարկվում է անհրապույր տեսքով։ Իրենց հերթին զգոնությունը թուլացրել են նաև որակի հսկիչները… Կուսխմբերի ղեկավարներն ու անդամները, արտադրամասի սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Արտյուշա Մարտիրոսյանի հետ կիրակին հայտարարեցին շաբաթօրյակի օր։ Նախաձեռնությանը միացան նաև մյուս արտադրամասերի կուսխմբերն ու տրիկոտաժագործները, ինժեներներն ու մեխանիկները, տեխնիկական ծառայության բաժնի աշխատողները։ Այդ օրը կոլեկտիվը խնամքով ու բարեխղճորեն կազմակերպեց շուրջ վեց հարյուր մեքենայի տեխնիկական խնամքը։

Շաբաթօրյակի արդյունքներն ամփոփելուց հետո կուսկոմիտեն պարտավորեցրեց կուսխմբերին՝ մշտապես ուշադրության կենտրոնում պահել որակի բարելավման, հումքի և նյութերի արդյունավետ օգտագործման, մեքենաների տեխնիկական խնամքի, թերացողներին խարազանելու հարցերը։ Կուսկոմիտեի այս միջոցառումը նպաստեց կուսխմբերի անդամների ակտիվության բարձրացմանը, մարտունակությանն ու աշխատանքի հրապարակայնության ապահովմանը։

Արտադրամասային կուսկազմակերպությունները գաղափարադաստիարակչական, արտադրական, հասարակական բազմաթիվ հարցեր լուծում են կուսխմբերի արդյունավետ գործունեության շնորհիվ, նրանց ակտիվ մասնակցությամբ։ Ահա բազմաթիվ օրինակներից մեկը. «Կոտոն» արտադրամասում գործերն այնքան էլ լավ չէին։ Թողարկվող արտադրանքի փաթեթավորումը չէր բավարարում գնորդի արդի պահանջները։ Արտադրամասի սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Զեփյուռ Ղազարյանը կուսխմբի հետ միասին մի քանի միջոցառումներ մշակեց և այն ներկայացրեց կուսկոմիտեի քննարկմանը։ Շուտով կուսխմբի պահանջով միավորում հրավիրվեցին փաթեթավորող վարպետներ, ձևավորողներ, ռեկլամային ծառայության աշխատողներ։ Արտադրանքի փաթեթավորման, ձևավորման նպատակով կազմակերպվեցին նաև տասնօրյա դասընթացներ։ Հրավիրված դեկորատորներն ու փաթեթավորողները անցկացրին բազմաթիվ գործնական զրույցներ։ Այժմ փաթեթավորման բաժնում փակցված են պլակատներ, ցուցադրական պարագաներ, օրինակելի ձևավորման նմուշներ։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության արդի խնդիրները խոր գիտելիքներ, հմտորեն աշխատելու և անհրաժեշտ ինֆորմացիա հավորդելու հնկայական ունակություն են պահանջում։ Եվ միավորման կուսկոմիտեն կուսխմբերին գործելու լայն հնարավորություններ է ընձեռել։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների համակարգում աշխատուժի հոսունության ամենացածր տոկոսը գրանցվել է այստեղ։ Ինչպե՞ս է դա հաջողվել։ Միավորման կուսխմբերում ընդգրկված անվանի վարպետ-դաստիարակները՝ Ելենա Հովհաննիսյանը, Սաթիկ Ալավերդյանը, Զարուհի Մա-

միկոնյանը, Հասմիկ Ալեքսանյանը և ուրիշներ արտադրության հմուտ կազմակերպիչներ են։ Նրանց ջանքերով երիտասարդությունն այստեղ շրջապատված է հոգատարությամբ։ Արտադրություն եկած նորեկները ոչ միայն մասնագիտություն են սովորում, այլև ստանում են անհրաժեշտ աջակցություն, կոփվում, դժվարությունները հաղթահարելու կամք դրսևորում։ Գայանե Կոլոտյանը միջնակարգը նոր էր ավարտել, երբ ոտք դրեց ձևող-կարող արտադրամաս, որտեղ մեքենաների այս անսովոր աշխարհը մի պահ հուսահատեցրեց աղջկան։ «Այս ի՜նչ մարդաշատ է։ Ինչո՞ւ են ինձ այդպես նայում, դեռ ժպտում էլ են»,— մտորում էր Գայանեն, երբ նրան մոտեցավ վարպետ-դաստիարակ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Օֆելյա Համբարյանը։

— Ե՛կ, աղջիկ ջան, անունդ Գայանե է, ճի՞շտ է։

— Այո՛, որտեղի՞ց իմացաք,— զարմացավ նորեկը։

Տարեց բանվորուհին սրտաբուխ ծիծաղեց, ապա մայրական գորովանքով բռնեց աղջկա ձեռքն ու տարավ իր հետ։

— Երբ կադրերի բաժնից քեզ գործուղեցին այստեղ, միավորման ռադիոհանգույցից ինձ հայտնեցին, որ դուք սովորելու եք ինձ մոտ,— բացատրեց վարպետ-դաստիարակը։

Աղջիկը գոհունակ ժպտաց, սկսվեց աշխատանքային առաջին օրը։

Շատ չանցած՝ նորեկի բարեխիղճ աշխատանքը, ուշիմությունը, կոլեկտիվի առօրյայով ապրելու ձգտումը նկատեցին, և առաջինը՝ կուսխմբի մարդիկ։ Գայանե Կոլոտյանին երաշխավորեցին՝ ընդունվելու ՍՄԿԿ շարքերը։ Շատերի պես Գայանեն այսօր գրում է իր կենսագրության էջերը...

Կուսխմբերն օր-օրի հանդես են գալիս նոր, հիանալի նախաձեռնություններով։ Կոմունիստներ Գրիշա Աղասյանը, Ելենա Հովհաննիսյանը, Ռազմիկ Սիմոնյանը անցյալ տարի օգոստոսին հանդես եկան մայրաքաղաքի №№ 90, 91, 112 հանրակրթական դպրոցների շեֆությունն ստանձնելու նախաձեռնությամբ, դարձան այդ կոլեկտիվների ծնողական կոմիտեի պատվավոր անդամներ։ Մինչև այժմ, գրեթե ամիսը մեկ նրանք հանդիպում են մանկավարժների ու աշակերտական կոլեկտիվների հետ, պատմում իրենց մասնագիտության, ստանձնած պարտավորությունների, մրցությանը մասնակցելու և այլ բազմաբնույթ հարցերի մասին։

Աշակերտների և արտադրության մարդկանց ամեն մի հանդիպում դաստիարակչական ներգործություն է ունենում սովորողների վրա։

Տարիներ առաջ Մալաթիա թաղամասում տնայնագործական եղանակով գործող տրիկոտաժի փոքրիկ արտադրամասը հզորացել և այսօր դասվում է հանրապետության առաջավոր ձեռնարկությունների շարքը։ Տրիկոտաժագործների նոր շենքը բազմահարկ, տուֆակերտ, գողտրիկ մի կառույց է, ուր ոչ թե առաջվա պես 60—70 հոգի, այլ մի քանի հազար մարդ է աշխատում։ Վերակառուցվել է արտադրությունը։ Բազմահարկ շենքի բոլոր արտադրամասերը հագեցված են հայրենական ու արտասահմանյան բարձրարտադրողական մեքենաներով։ Մարդկանց աշխատանքի ու հանգստի համար ստեղծվել են հիանալի պայմաններ։ Տարեկան այստեղ շուրջ 50 միլիոն ռուբլու արտադրանք է թողարկվում։ Այն առաքվում է Սովետական Միության ու արտասահմանյան ավելի քան 120 առևտրական բազաների ու կազմակերպությունների։ Միավորումը վերելքով է սկսել ընթացիկ հնգամյակը։ Վերջին երեք տարիներին այստեղ է գտնվում ՍՍՀՄ թեթև արդյունաբերության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտրոնական կոմիտեի փոխանցիկ կարմիր դրոշը։ Միավորման վեց սկզբնական կուսկազմակերպություններն ու 17 կուսխմբերը հետզհետե ավելի մարտունակ են դարձել, ավելի ակտիվորեն են տոն տալիս մրցությանը, նյութական ու բարոյական խրախուսման ձևերը նպատակամղում թողարկվող արտադրանքի բարելավմանն ու խոտանի ճանապարհը փակելուն։



Ձևող-կարող արտադրամասի կուսխմբի անդամ Որմիզդուխտ Հունանյանը միավորումում առաջինն արձագանքեց բրիգադային եղանակով աշխատելու կոչին... Եվ նա դարձավ այդ գործի պիոները։ Արգականի պանսիոնատում իրենց երկօրյա հանգիստն էին անցկացնում տրիկոտաժագործները, երբ Որմիզդուխտը դիմեց գործընկերներին.

— Աղջիկնե՛ր, մեր շարքերում ետ մնացողներ, նույնիսկ թերացողներ կան։ Եկեք անցնենք աշխատանքի բրիգադային եղանակին։

Կուսխմբի անդամներ Աննան և Սվետլանան միացան Որմիզդուխտին։ Օր օրի համալրվեցին նրանց շարքերը։

— Բրիգադային եղանակով աշխատելն իր առավելություններն ունի,— ասում է Որմիզդուխտը։— Բանն այն է, որ այստեղ ընդհանուր արդյունքի համար անհանգստանում են բոլորը։ Բարձր որակի, արտադրողականության աճի, պարտավորության կատարման համար հավասարապես պատասխանատու է յուրաքանչյուրը։ Այստեղ ո՛չ ետ մնալ կա, ո՛չ էլ մյուսի հաջողության ստվերում թաքնվել։

Եվ ահա կուսխմբի ակտիվիստ Որմիզդուխտ Հունանյանի նախաձեռնությանը հետևելով, կոլեկտիվի 300 կոմունիստներն ու 17 կուսխմբերը դիմեցին գործնական քայլի։ Եթե մինչև ընթացիկ տարվա ապրիլ ամիսը բրիգադային եղանակով էր աշխատում միայն ձեռնարկության բանվորների 33 տոկոսը, ապա այժմ միավորման 3220 բանվորներն էլ ներգրավվել են այդ շարժման մեջ։ Իր հերթին կուսակցության Շահումյանի շրջկոմի բյուրոն հավանություն տվեց տրիկոտաժագործների հիանալի նախաձեռնությանը և այն մասսայականացրեց ու արմատավորեց շրջանի թեթև արդյունաբերության հինգ համանման ձեռնարկություններում։

Վերջերս գործարար խոսակցություն եղավ կուսկոմիտեի քարտուղար Ռոլանդ Պողոսյանի մոտ։ Ո՛չ կուսկոմիտեի նիստ էր, ո՛չ էլ խորհրդակցություն։ Այստեղ էին ձևող-կարող արտադրամասի կուսխմբի ղեկավար, բանվորուհի Խանում Պողոսյանը, արտադրամասի պետ Աստղիկ Եղիազարյանը, սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Սվետլանա Ավագյանը։

Կուսխմբի ղեկավար Խանում Պողոսյանը, արձագանքելով ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած «էկոնոմիկան պետք է լինի խնայողական» կոչին, առաջարկել էր այն արմատավորել իրենց արտադրամասում։ Ձեռնարկության արտադրամասերում զգալի քանակություն էին կազմում կտորեղենի մնացուկները։ Կուսխմբի ղեկավարն առաջարկեց դրանցից զգեստներ կարել երեխաների համար։ Առաջարկությունը գոհունակությամբ ընդունեցին կուսկոմիտեի անդամ Հասմիկ Ալեքսանյանը, երիտասարդ կոմունիստ, կուսխմբի անդամ Գայանե Կոլոտյանը։ Որոշվեց կազմակերպել տիկնիկների, մանկական հագուստների, անձեռոցիկների, բռնիչների արտադրություն։ Խմբի անդամները, կոմունիստներն ու կոմերիտականները ջերմորեն ընդունեցին իրենց ընկերների առաջարկությունները։ Դրանց արմատավորման շնորհիվ այսօր թողարկվում է 80 անուն արտադրանք, որից միավորումը հազարավոր ռուբլիների օգուտ է ստանում։ Կոլեկտիվը եռամսյակը մեկ աշխատում է խնայված հումքի հաշվին։ Կոմունիստներին այժմ հետաքրքրում են առկա ռեզերվների օգտագործման, նորերի հայտնաբերման հարցերը։ Եվ նրանք գտնում են, որ կարելի է ավելի բավարար արդյունքի հասնել, միայն գործին պետք է մոտենալ սրտացավորեն։ Կուսխմբի անդամներն այս անգամ առաջարկեցին կտորեղենից առանձնացնել թափոնների այն մասը, որը կարող են այգեգործներն օգտագործել խաղողի այգիներում կապ անելու նպատակով։ Այս նախաձեռնությունը ևս գործ է դարձել։ Շահումյանի շրջանի ՍՄԿԿ XXII համագումարի անվան և Նորագավիթի տնտեսությունների այգեգործները գոհունակությամբ ընդունեցին տրիկոտաժագործների օգնությունը։

*Գաղտնիք չէ, որ աշխատանքը կենդանի ստեղծագործություն է։ Դրանով զբաղվելն անընդհատ ուշադրություն է պահանջում։ Դեպի վերելք կատարվող յուրաքանչյուր քայլի, նոր պատասխանատու խնդիրների լուծման համար հարկավոր է, որ կոմունիստն իր մեջ մշակի նոր որակ, զինվի խոր գիտելիքներով և ունակություններով։ Իսկ այդ գործում վճռական դեր են խաղում նաև կուսակցության ստորին օղակները։ Շատ հաճելի է, որ միավորման կուսկոմիտեի գործնական օգնության շնորհիվ արտադրության բոլոր օղակների կուսխմբերը դարձել են մարտունակ, հետևողականորեն զբաղվում են մարդկանց դաստիարակության, աշխատանքային կարգապահության ամրապնդման, սոցիալիստական մրցության ծավալման հարցերով։ Նրանք կուսկոմիտեի հուսալի հենարանն են վերջինիս կազմակերպական ու քաղաքական-դաստիարակչական բոլոր ձեռնարկումներում, ակտիվորեն պայքարում են հնգամյակի առանցքային տարվա ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար։ Կուսխմբերի համար գործողության ուղեցույց են դարձել ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) և հունիսյան (1983 թ.) պլենումների, ինչպես նաև ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1983 թ.) պլենումի որոշումները, որոնք նոր լիցք են հաղորդել նրանց ջանքերին ու ծավալած աշխատանքին։*

*Կուսկոմիտեն կուսխմբերի գործունեությունը ղեկավարելիս մեկնակետ է ընդունում ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան և հունիսյան պլենումների այն պահանջը, որ հարկավոր է ուժեղացնել դաստիարակչական աշխատանքը, կոմունիստների, կուսակցական բոլոր օղակների ջանքերն ուղղել աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրանքի որակի բարձրացման, արտադրական կարողությունների և ռեսուրսների բոլոր տեսակների բարելավման նպատակին։*

**Վ. Գ. ՇԱՀԻՆՅԱՆ**
**Լրագրող**

---

## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ՍՊԱՌՄԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**ՔՐ. Բ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ տնտեսական քաղաքականության գերագույն նպատակը եղել և մնում է ժողովրդի բարեկեցության բարձրացումը, հասարակության բոլոր անդամների նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը՝ արտադրության արդյունավետության հետագա բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման հիման վրա։*

*Մարքսիզմի կլասիկները բազմիցս նշել են, որ աշխատավորները, դառնալով արտադրամիջոցների տերերը, արտադրությունը կազմակերպում են հանուն իրենց շահերի. «...հասարակական արտադրաուժերը,— նշում է էնգելսը,— որոնք այնքան են աճել, որ բուրժուազիան այլևս չի կարող նրանց հաղթահարել, սպասում են միայն, որպեսզի միավորված պրոլետարիատը տիրապետի իրենց և հաստատի այնպիսի կարգեր, որոնք հասարակության յուրաքանչյուր անդամին հնարավորություն կտան մասնակցելու հասարակական հարստությունների ո՛չ միայն արտադրությանը, այլև դրանց բաշխմանն ու կառավարմանը, և որն ամբողջ արտադրության պլանային կազմակերպման միջոցով այն աստիճան կմեծացնի հասարակության արտադրաուժերը և կավելացնի նրանց կողմից ստեղծվող մթերքները, որ յուրաքանչյուրի համար ապահովված կլինի նրա բանական պահանջմունքների բավարարումը հարաճուն չափերով» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր, *«Հայաստան» հրատ., հ. 3, 1978 թ., էջ 103—104)։*

*Վ. Ի. Լենինը, զարգացնելով մարքսիզմի դրույթները, ավելի կոնկրետացրեց սոցիալիստական արտադրության նպատակը։ «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա արդյունքների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ և նրանց բարեկեցության հնարավորություն ընձեռող» (*ԵԼԺ, *հ. 36, էջ 467)։*

*Սոցիալիստական արտադրության հենց այդ նպատակն էլ սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր աղբյուրն է։ Արտադրամիջոցների հանրային սեփականությունը ժողովրդի բարեկեցության բարձրացման տնտեսական հիմքն է։ Սովետական մարդկանց կենսամակարդակի անշեղ աճը, սոցիալիստական անհատի համակողմանի զարգացումը դարձել են մեր*

կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը, նրա գործունեության գլխավոր նպատակը։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցիալիստական բազմաճյուղ էկոնոմիկան, նրա վիթխարի մասշտաբները, տեխնիկական բարձր մակարդակը, բարձրորակ կադրերը ստեղծում են արտադրության ինտենսիվ զարգացման, ազգային եկամտի և աշխատավորների ռեալ եկամուտների աճի, հասարակության բոլոր անդամների նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարման լայն հնարավորություններ։ Բավական է նշել, որ վերջին 10 տարվա ընթացքում աշխատավորների ռեալ եկամուտները երկրում միջին հաշվով տարեկան ավելացել են 7—8 տոկոսով, որն զգալիորեն ավելի է նախորդ նույն ժամանակաշրջանի համեմատությամբ։ Սոցիալիստական հասարակության պայմաններում աշխատավորների բարեկեցության բարձրացումը կատարվում է երկու ձևով՝ ըստ աշխատանքի քանակի ու որակի բաշխման և սպառման հասարակական ֆոնդերի զանազան ծառայությունների միջոցով։

Հետևողականորեն բարձրանում է աշխատավարձի միջին մակարդակը, հաղթահարվում են բարձր ու ցածր աշխատավարձերի տարբերությունները։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, 70-ական թվականներին բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների այն ընտանիքների թիվը, որոնցում մեկ մարդուն ամսական ընկնում է ավելի քան հարյուր ռուբլի, աճել է գրեթե երեք անգամ։ Եվ, ընդհակառակն, նույն չափով կրճատվել է այն ընտանիքների թիվը, որոնցում մեկ շնչի հաշվով եկամուտը ամսական 50 ռուբլուց պակաս է։ Այսինքն, տեղի է ունենում աշխատավորների տարբեր խմբերի կենսամակարդակների ոչ միայն աճ, այլև մերձեցում։ Այս միտումը կուժեղանա, և այնքան ավելի արագ, որքան ավելի արդյունավետ կաշխատեն բոլորը։

Սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշը կարող է լինել միայն աշխատանքը՝ նրա քանակն ու որակը (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 95)։

Տասներորդ հնգամյակում բնակչության ռեալ եկամուտներն ավելացան 18 տոկոսով, միջին աշխատավարձը հասավ 168,5, իսկ նվազագույնը՝ 70 ռուբլու։ Կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունն աճեց 26 տոկոսով։ Սակայն սոցիալիզմի պայմաններում նյութական բարիքների ըստ աշխատանքի բաշխումը միակ ձևը չէ։ Ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում մեծ դեր են խաղում սպառման հանրային ֆոնդերը, որոնք բաշխվում են հասարակության անդամների միջև՝ անկախ նրանց կատարած աշխատանքի քանակից և որակից։ Այդ ֆոնդերի սոցիալ-տնտեսական էությունն այն է, որ դրանք տնտեսական հավասար պայմաններ են ստեղծում հասարակության բոլոր անդամների նյութական և հոգևոր զարգացման, կրթության, առողջապահության, երեխաների դաստիարակության, անհատի համակողմանի զարգացման համար։

Սպառման հանրային ֆոնդերից հասարակության յուրաքանչյուր անդամ հավասարապես ստանում է, Մարքսի արտահայտությամբ, իր «փայաբաժինը»։ «...Նա հասարակական պաշարից ստանում է այնպիսի քանակությամբ սպառման առարկաներ, որի վրա ծախսված է նույնքան աշխատանք։ Աշխատանքի միևնույն քանակը, որ նա տվել է հասարակությանը մե՛կ ձևով, ետ է ստանում մեկ ուրիշ ձևով» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, էջ 15)։

Սպառման հասարակական ֆոնդերը ձևավորվում և պլանաչափորեն բաշխվում են հասարակության ու նրա յուրաքանչյուր անդամի շահերին համապատասխան և օգտագործվում են ինչպես անհատական, այնպես էլ կոլեկտիվ ձևով։ Դրանց մակարդակը պայմանավորված է հասարակական աշխատանքի արտադրողականությամբ, ստեղծված հասարակական ամբողջական արդյունքի, ազգային եկամտի աճի մակարդակով, ինչպես նաև երկրի ներքին ու արտաքին պայմաններով։



Սպառման հասարակական ֆոնդերի երեք քառորդը ձևավորվում է պետական բյուջեի, իսկ մյուս մասը՝ պետական ձեռնարկությունների, հասարակական կազմակերպությունների և կոլտնտեսությունների հաշվին։ Իրենց նշանակությամբ այդ ֆոնդերը բաժանվում են սոցիալ-կուլտուրական և բնակարանային-կենցաղային շինարարության մասերի, որոնք իրացվում են ինչպես կենտրոնացված (ձեռնարկության, կոլեկտիվի), այնպես էլ անհատական ձևով։ Այդ միջոցներն օգտագործվում են անաշխատունակների խնամակալության համար և իրացվում են դրամական զանազան վճարումների տեսքով, ինչպես նաև բնակչությանն անվճար կամ արտոնյալ ծառայությունների ձևով, նպաստելով նրանց բարեկեցության բարձրացմանը, սոցիալական, նյութական, հոգևոր և կուլտուրական պահանջմունքների բավարարմանը։

Արտադրության զարգացման շնորհիվ սպառման հանրային ֆոնդերը երկրում աստիճանաբար աճում են։ 1940 թ. այն կազմել է 4,6 մլրդ ռուբլի, 1950 թ.՝ 13, 1970 թ.՝ 63,9, իսկ 1982 թ.՝ 128 մլրդ ռուբլի։ Այսօր չորս հոգուց բաղկացած ընտանիքը հասարակական ֆոնդերից տարեկան ստանում է 1800—2000 ռուբլի։

Սպառման հասարակական ֆոնդերի աճի դինամիկայում հստակորեն դրսևորվում են կոմունիստական կուսակցության և սովետական պետության հումանիզմը, անդուլ հոգատարությունը մարդու համակողմանի զարգացման նկատմամբ։ Դրանց բնույթի մեջ վառ կերպով արտացոլվում է սոցիալիստական հասարակության պայմաններում անձնական և հասարակական շահերի միասնությունը։ Հասարակության յուրաքանչյուր անդամ հստակորեն գիտակցում է, որ իր անձնական եկամուտների չափը, նյութական և հոգևոր բարեկեցության բարձրացումը պայմանավորված են հանրային արտադրության հաջողություններով։ Ուստի յուրաքանչյուր բանվորի, ծառայողի և կոլտնտեսականի անձնական շահերն անբաժանելի են կոլեկտիվի, ձեռնարկության և հասարակության շահերից։ Սպառման հասարակական ֆոնդերի հաշվին մեր աշխատավորների բարեկեցության բարձրացումը, հոգևոր աճը, համակողմանի զարգացումը սոցիալիստական հասարակության առաջընթացի օրինաչափ արդյունքն է, նոր տիպի արտադրահարաբերությունների կատարելագործման բնորոշ գիծը։

Սովետական հասարակարգում սպառման հասարակական ֆոնդերը լրացուցիչ նյութական օգնություն են ընտանիքներին, նրանց բյուջեին և էական դեր են խաղում սոցիալիստական ապրելակերպի զարգացման, հոգեկան ներաշխարհով հարուստ քաղաքացիներ կերպավորելու գործում։ Սպառման հասարակական ֆոնդերի մեծ մասը աշխատավորներին է հասնում ձրի կամ արտոնյալ ծառայությունների ձևով՝ ավելացնելով նրանց ռեալ եկամուտները։

ՍՍՀՄ-ում սպառման հասարակական ֆոնդերի շուրջ 30 տոկոսն օգտագործվում է կրթության և աճող սերնդի դաստիարակության նպատակով։ Հանրակրթական դպրոցների յուրաքանչյուր երեխայի կրթության և դաստիարակության համար սպառման հասարակական ֆոնդերից տարեկան օգտագործվում է 150 ռուբլի, իսկ բուհի յուրաքանչյուր ուսանողի վրա ծախսվում է ավելի քան 1000 ռուբլի։ Ամեն տարի հանրակրթական միջնակարգ դպրոցներում ձրի կրթություն են ստանում շուրջ 50 միլիոն երեխա, միջնակարգ մասնագիտական դպրոցներում՝ 4,5, պրոֆտեխնիկական ուսումնարաններում՝ 2,5, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ շուրջ 5,5 միլիոն մարդ։ Երկրում իրականացվում է երիտասարդության ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթությունը։ Զանազան դասընթացների, սեմինարների, խմբակների, ժողովրդական համալսարանների և ուսուցման այլ ձևերի միջոցով միլիոնավոր

աշխատողներ հարստացնում են իրենց գիտելիքները, կատարելագործում պրոֆեսիոնալ վարպետությունն ու մասնագիտությունը։ Ժողովրդական տնտեսության մեջ շարունակ աճում է բարձրագույն կրթությամբ կադրերի թիվը։ Մարդահամարների տվյալների համաձայն ժողովրդական տնտեսության մեջ աշխատող յուրաքանչյուր 1000 մարդուց բարձրագույն կրթություն են ունեցել՝ 1939 թ. 123 մարդ, 1959 թ.՝ 433, 1970 թ.՝ 653 և 1979 թ.՝ 867 մարդ։

Սպառման հասարակական ֆոնդերից մեծ միջոցներ են հատկացվում մանկամսուրների, մանկապարտեզների ցանցի ընդլայնմանը, մատաղ սերնդի դաստիարակությանը։ Ամեն տարի շուրջ 14 միլիոն երեխա հաճախում է մանկամսուրներ ու մանկապարտեզներ։ Մեկ երեխայի հաշվով ծախսվում է 350—400 ռուբլի, որից ծնողները փոխհատուցում են միայն 18—21 տոկոսը։ Ցածր աշխատավարձ ստացող քաղաքացիներն առհասարակ ազատվում են նման վճարումներից։

Մեր երկրում հատուկ հոգատարություն է ցուցաբերվում սովետական մարդկանց առողջության պահպանության նկատմամբ։ Տարեցտարի զգալի միջոցներ են ներդրվում հիվանդանոցների, պոլիկլինիկաների, առողջարանների, պանսիոնատների, հանգստյան տների, պիոներական ճամբարների ցանցի ընդլայնման համար։ Ամեն տարի բուժվում և հանգստանում են շուրջ 90 միլիոն քաղաքացիներ։ Ավելանում է հիվանդանոցների մահճակալների թիվը, որն արդեն անցել է 3 միլիոնից։ Հիվանդներին ցույց է տրվում բարձրորակ անվճար բուժօգնություն։ Յուրաքանչյուր հիվանդի հաշվով օրական ծախսվում է 8 ռուբլի։

Աշխատավորները հասարակական ֆոնդերից մեծ օգնություն են ստանում բնակարանային և կուլտուր-կենցաղային զանազան ծառայությունների միջոցով։ Հետևողականորեն բարելավվում են սովետական քաղաքացիների բնակարանային պայմանները։ Ամեն տարի նոր, հարմարավետ բնակարաններ են տեղափոխվում շուրջ 11 միլիոն մարդ։ Միայն վերջին 10 տարում բնակարանամուտ են տոնել ավելի քան հարյուր միլիոն քաղաքացիներ, այսինքն՝ երկրի բնակչության մոտ 40 տոկոսը։ Մեզ մոտ բնակարանավարձը ամենացածրն է աշխարհում և այն անփոփոխ է մնում շուրջ կես դար։ Մեկ քառակուսի մետր բնակտարածության հաշվով բնակարանի վարձի հիմնական մասը (4 ռուբլի) պետությունը վերցնում է իր վրա, իսկ դա երկրի մասշտաբով տարվա ընթացքում կազմում է ավելի քան 5 միլիարդ ռուբլի։ Այդ այն դեպքում, երբ ԱՄՆ-ում բնակարանի վարձը կլանում է աշխատավարձի 20—25 տոկոսը։

Ամեն տարի երկրում կառուցվում են մեծ քանակությամբ մշակույթի պալատներ ու տներ, ակումբներ, գրադարաններ, կինոթատրոնների և թատրոնների հարմարավետ դահլիճներ, սպորտային օբյեկտներ և այլն։ Ըստ ՅՈՒՆԵՍԿՕ-ի տվյալների, սովետական մարդիկ աշխարհի ամենաշատ կարդացողներն են, թատրոն, կինոթատրոն, համերգ հաճախողները։ Այդ ցուցանիշով ՍՍՀՄ-ը երկու անգամ գերազանցում է ԱՄՆ-ին, 6 անգամ՝ Անգլիային և Ֆրանսիային, 9 անգամ՝ ԳՖՀ-ին։ Բնակչության կեսից ավելին հաճախում է թանգարաններ, իսկ թատրոն, կինոթատրոն և համերգ հաճախողների ընդհանուր թիվը զգալիորեն գերազանցում է երկրի բնակչությանը։

Մեզ մոտ հրատարակվում են ավելի շատ գրքեր, ամսագրեր, լրագրեր։ Երկիրը պատած է գրադարանների, ակումբների և կուլտուր-լուսավորական այլ օբյեկտների ցանցով։ Սովետական քաղաքացիներն օգտվում են նաև իրենց անձնական հարուստ գրադարաններից, հեռուստատեսության և ռադիոյի ծառայություններից։ Մարդիկ զբաղվում են գյուտարարությամբ, հրապուրվում արվեստով, սպորտով։ Այդ ամենը մշտապես հարստացնում, գեղեցկացնում է մարդուն, բովանդակալից դարձնում նրա ապրելակերպը։ «Ութսունական թվականներին,— նշված է ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում,— կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն կշարունակի իր տնտեսական ստրատեգիայի իրականացումը, որի գերագույն նպատակն է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքը, անհատի համակողմանի զարգացման լավագույն պայ-



մանների ստեղծումը՝ ամբողջ հանրային արտադրության արդյունավետության հետագա բարձրացման, աշխատանքի արտադրողականության մեծացման, սովետական մարդկանց սոցիալական և աշխատանքային ակտիվության աճի հիման վրա» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 219)։

Սպառման հասարակական ֆոնդերը միաժամանակ անաշխատունակ մարդկանց հիմնական գոյամիջոցն են։ Այդ ֆոնդերի մոտ երկու երրորդը կենսաթոշակների և զանազան նպաստների ձևով ստանում են այն քաղաքացիները, որոնք, Մարքսի արտահայտությամբ, «արդեն չեն կարող մասնակցել արտադրությանը»։ Սպառման հասարակական ֆոնդերի աճին զուգընթաց ավելանում են այդ վճարումները։ Բացի այդ, նրանք սպառման հասարակական ֆոնդերից օգտվում են բնակարանների, նախադպրոցական հիմնարկություններում երեխաների խնամքի, դաստիարակության, գիշերօթիկ դպրոցների, հանգստյան տների, առողջարանների և այլ ծառայությունների արտոնյալ վճարումների ձևով։

Սպառման հանրային ֆոնդերից օգտվում են նաև ժամանակավորապես աշխատունակությունը կորցրած բանվոր-ծառայողները, հղի, նորածին երեխա ունեցող կանայք և մայրեր։ Միայն անցած հնգամյակում այդ նպատակների համար երկրում ծախսվել է ավելի քան 80 միլիարդ ռուբլի։

Հայտնի է, որ կապիտալիզմի պայմաններում շարունակ աճում են սպառման ապրանքների և ծառայությունների գները, ամեն տեսակի հարկերը և տուրքերը։ Համաձայն մարդահամարի պետական բյուրոյի տվյալների, ԱՄՆ-ում աշխատավորներն իրենց աշխատավարձի 30 տոկոսը վճարում են որպես հարկեր և զանազան տուրքեր։ Մինչդեռ ՍՍՀՄ-ում վարվում է աշխատավորներից գանձվող հարկերի մշտական կրճատման քաղաքականություն։ Համեմատաբար ցածր աշխատավարձերից հարկեր չեն գանձվում, իսկ աշխատավորներից գանձվող հարկերն էլ դարձյալ օգտագործվում են հասարակության շահերի օգտին, սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, հայրենիքի պաշտպանության ամրապնդման համար։ Սոցիալիզմի օրոք «...արտադրողից,— ասում է Կ. Մարքսը,— որպես մասնավոր անձից, վերցվածը ամբողջությամբ ուղղակի կամ անուղղակի գնում է նրա, որպես հասարակության անդամի, օգտին» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, էջ 14)։

Աշխատավորները սպառման հասարակական ֆոնդերն օգտագործում են ինչպես անհատապես, այնպես էլ կոլեկտիվ ձևով։ Վերջինիս մեջ մտնում են երեխաների հասարակական դաստիարակությունը, գիշերօթիկ դպրոցների, հանգստի կազմակերպման, կրթության, բուժման վրա կատարվող ծախսումները։ Սպառման կոլեկտիվ ձևը զարգացած սոցիալիզմի պայմաններում լայն հեռանկարներ ունի, և այդ պատճառով էլ սպառման հասարակական ֆոնդերի այս մասով կատարվող ծախսումները մշտապես աճում են։ Դա, իհարկե, չի նշանակում, թե այն հակասում է ըստ աշխատանքի բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքի գործողությանը։ Ո՛չ։ Սպառման հասարակական ֆոնդերի համեմատաբար արագ աճը, որը պայմանավորված է սոցիալիստական էկոնոմիկայի դինամիկ զարգացմամբ, սովետական մարդկանց նյութական բարեկեցության բարձրացման գործոններից մեկն է։ Այն ո՛չ միայն չի հակասում ըստ աշխատանքի քանակի և որակի բաշխման օրենքին, այլև ուժեղացնում է դրա գործողությունը։ Դա աշխատավորների նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման լրացուցիչ աղբյուր է, ռեալ աշխատավարձի յուրատեսակ հավելում, ժողովրդի բարեկեցության բարձրացման միջոց։ Աշխատավորների կենսամակարդակի անշեղ վերելքը սոցիալիստական հասարակության զարգացման օրինաչափությունն է, կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության նպատակը։ Սովետական իշխանության տարիներին աշխատավորների ռեալ եկամուտներն աճել են ավելի քան 8,5 անգամ, այդ թվում գյուղացիներինը՝ 10,6 անգամ։

Սակայն պետք է նկատի ունենալ, որ նյութական հավասար պայմաններում էլ գոյություն ունեն բարեկեցության տարբերություններ, անգամ նույն աշխատավարձի դեպքում։ Դա կապված է ընտանիքների շնչերի և անաշխատունակների թվի հետ։ Այդ տարբերությունների հաղթահարման նպատակով

նույնպես կատարվում են որոշակի աշխատանքներ։ Հասարակությունն իր վրա է վերցնում երեխաների, ծերերի, անաշխատունակների, հաշմանդամների խնամքի և դաստիարակության շատ ծախսեր։ Աշխատավորների ցածր վարձատրվող կատեգորիաների աշխատավարձերը կառավարությունը հետևողականորեն բարձրացնում է։ Բացի այդ, շատ երեխաներ և անաշխատունակ անդամներ ունեցող ընտանիքները սպառման հասարակական ֆոնդերից ստանում են ավելի բարձր վճարումներ։ Դրա շնորհիվ աստիճանաբար հաղթահարվում են ընտանիքների միջև գոյություն ունեցող բարեկեցության մակարդակների տարբերությունները, հետզհետե բարձրանում և աճում են համեմատաբար քիչ ապահովված ընտանիքների սպառման հնարավորությունները։ Սպառման հասարակական ֆոնդերի և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության անշեղ աճի շնորհիվ աստիճանաբար կրճատվում են նաև բանվոր-ծառայողների ու կոլտնտեսականների բարեկեցության միջև եղած էական տարբերությունները։

Կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման շնորհիվ տարեցտարի ամրապնդվում է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, բարձրանում գյուղատնտեսության վարման կուլտուրան, աճում մթերքների արտադրության ծավալը, զուտ եկամուտը և կոլտնտեսականների վարձատրության չափը։ Համեմատաբար ցածր եկամտաբերություն և վարձատրություն ունեցող կոլտնտեսություններում սահմանվում են վարձատրության երաշխավորված մինիմում՝ սովխոզների վարձատրության դրույքներին համապատասխան։ Պետությունն այդ տնտեսություններին տրամադրում է վարկ՝ կոլտնտեսականներին նախատեսված մինիմումի չափով վճարելու համար։ Բացի այդ, կոլտնտեսականները հանրային ֆոնդերից ստանում են նաև լրացուցիչ հավելումներ՝ արտոնյալ վճարումների, ծառայությունների ձևով և օժանդակ տնտեսություններից։ Դրա շնորհիվ ցածր վարձատրվող կոլտնտեսականների բարեկեցությունն աստիճանաբար մերձենում է բարձր բարեկեցություն ունեցողներին, ինչպես նաև քաղաքի բանվորների և ծառայողների բարեկեցության մակարդակին։

Արտադրության վերելքի, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի շնորհիվ, շարունակ բարձրանում են ժողովրդի բարեկեցությունն ու կենսամակարդակը։ Հանրային արտադրության հսկայածավալ մասշտաբները նոր տնտեսական պայմաններ են ստեղծում հասարակության բոլոր անդամների շարունակ աճող կենսամակարդակն առավել բարձրացնելու համար։ Սոցիալիստական էկոնոմիկան նոր զարգացում է ապրում, մեծ չափով աճում է ազգային եկամուտը, տասնյակ միլիարդների են հասնում սպառման հասարակական ֆոնդերը, որոնք կոչված են ավելի լրիվ բավարարելու բնակչության սոցիալական և կուլտուրական պահանջմունքները, ապահովելու ժողովրդական կրթության հետագա զարգացումը, աշխատավորության բուժսպասարկումն ու հանգստի կազմակերպումը, կենսաթոշակների և կրթաթոշակների վճարումը։ Երկրում իրականացվել է նվազագույն աշխատավարձի, ինչպես նաև աշխատողների միջակ վարձատրվող կատեգորիաների դրույքների բարձրացումը ոչ արտադրական ոլորտի ճյուղերում։ Դրա շնորհիվ ավելացել է 31 միլիոն բանվորների ու ծառայողների աշխատավարձը։ Զգալիորեն բարձրացել է նաև կոլտնտեսականների վարձատրությունը։ Մշտապես աճում են սպառման հասարակական ֆոնդերից բնակչության վճարումներն ու արտոնությունները։ Կառուցվում են ավելի շատ բնակելի տներ, կուլտուր-կենցաղային շենքեր, առավել լրիվ են բավարարվում մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքները։

Սոցիալիստական էկոնոմիկայի դինամիկ զարգացմանը զուգընթաց փոխվում է և սովետական մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների կառուցվածքը։ Արտադրության և սպառման, պահանջարկի և առաջարկի արդեն նվաճված մակարդակն ամեն անգամ նոր ելակետ է դառնում դրանց դիալեկտիկական զարգացման համար։ Դրանց փոխգործողության շնորհիվ հետևողականորեն լուծվում են հասարակության բարեկեցության բարձրացման խնդիրները։ Այդ պրոցեսում փոփոխվում, կատարելագործվում է բարեկեցության համակարգի կառուցվածքը, տեղի է ունենում դրա տարրերի տեսակարար կշռի փոփոխում։ Նկատելի փոփոխություններ են կատարվում սննդամթերքի կառուցվածքում։ Հագուստների և կոշկեղենի մեջ աստիճանաբար ավելանում է միջազգային ստանդարտի որակի ապրանքների պահանջարկը։ Հոգևոր սպառման կառուցվածքում հետզհետե մեծանում է գրականության, արվեստի, ինֆորմացիայի մասսայական միջոցների բաժինը։ Շարունակ աճում է բարեկարգ, ամեն հարմարություն ունեցող բնակարանների, կուլտուր-լուսավորական շենքերի, կենցաղային գործունեության էլեկտրական ապրանքների, հարմարավետ կահույքի օգտագործման տեսակարար կշիռը։ Սոցիալիստական արտադրությունը սպառմանն է ներկայացնում նոր, գեղեցիկ, հարմարավետ, երկարատև օգտագործման նորանոր բարձրորակ ապրանքներ և առարկաներ, որոնք ավելի գեղեցկացնում, բովանդակալից են դարձնում սովետական մարդկանց կենցաղը։

Ընթացիկ հնգամյակում է՛լ ավելի է բարձրանում ժողովրդի բարեկեցությունը։ Ամսական միջին աշխատավարձը կաճի 13—16 տոկոսով և կհասնի 190—195 ռուբլու, նվազագույնը՝ 80 ռուբլու։ Հանրային տնտեսությունից կոլտնտեսականների եկամուտները կավելանան 20—22 տոկոսով։ Աշխատավարձի գծով նոր արտոնություններ են նախատեսվում նաև երկրի մի շարք շրջաններում, ընդլայնվում են սպառման ֆոնդերից տրվող վճարումները և այլն։ Ազգային եկամտի մեջ սպառման ֆոնդերի տեսակարար կշիռը 1985 թ. կհասնի 77,3 տոկոսի՝ 1980 թ. 75,3 տոկոսի փոխարեն։

Սոցիալիստական հասարակարգում ժողովրդի բարեկեցության բարձրացումը, սոցիալիստական ապրելակերպի զարգացումն ընդհանուր ոչինչ չունեն բարեկեցության մասին քաղքենիական-նյութապաշտական պատկերացումների հետ։ Մենք մերժում ենք ինչպես աղքատության և ճգնավորության քարոզը, այնպես էլ բարեկեցության վերաբերյալ քաղքենու ըմբռնումը, որի համար կոպեկը, Գորկու դիպուկ արտահայտությամբ, արև է նրա երկնքում։ Նյութական բարիքները մեզ համար ինքնանպատակ չեն, դրանք անհատի համակողմանի զարգացման նախադրյալ են։ Ուստի կարևոր է, որ բարեկեցության բարձրացումը ուղեկցվի մարդկանց ներաշխարհի հարստացմամբ, կյանքի նպատակի և իմաստի ճիշտ ըմբռնման ձևավորմամբ։

Այսպիսով, սպառման հասարակական ֆոնդերը, որոնք սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման համակարգի կարևոր գործոնն են զարգացած սոցիալիզմի փուլում, մշտապես նպաստում են մարդկանց նյութական և հոգևոր ներդաշնակ զարգացմանը, սովետական ապրելակերպի ձևավորմանը և սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործմանը։

---

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԵՎ ՄԻՋԻՆ ԱՍԻԱՅԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ՀԱՄԱԽՄԲՄԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

**Վ. Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

Քսաներորդ դարի սկիզբը նշանավորվեց Արևմուտքից հեղափոխական շարժման համաշխարհային կենտրոնը Ռուսաստան տեղափոխվելով: Այդ բանը կանխատեսում էին Մարքսն ու Էնգելսը: Դեռևս 1882 թ., **Կոմունիստական կուսակցության մանիֆեստի** ռուսական հրատարակության առաջաբանում, բարձր գնահատելով համաշխարհային հեղափոխական շարժման մեջ Ռուսաստանի նշանավոր դերը, նրանք գրում էին. «Ռուսաստանը ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում» (**Կոմունիստական կուսակցության մանիֆեստը**, «Հայաստան» հրատ., 1973, էջ 18): Ռուսաստանի պրոլետարիատի վրա ընկավ պատմական առաքելություն՝ դառնալ մարդկության ազատագրության համար մղվող պայքարի առաջամարտիկը: Ռուսաստանի պրոլետարիատը բարձր պահեց հեղափոխական պայքարի դրոշը, այն աներեր առաջ տարավ, անասելի զրկանքների ու զոհերի գնով հասավ սոցիալիստական հեղափոխության հաղթանակին: Խոսելով ռուս բանվոր դասակարգի պատմական դերի մասին՝ Վ. Ի. Լենինը դեռևս 1894 թ. մարգարեաբար գրել է. «...ռուսական **ԲԱՆՎՈՐԸ** բոլոր դեմոկրատական տարրերի գլուխ անցած ոտքի ելնելով՝ կտապալի միապետությունը և **ՌՈՒՍԱԿԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻՆ (ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ** պրոլետարիատի հետ **կողք-կողքի) բացահայտ քաղաքական պայքարի ուղիղ ճանապարհով կառաջնորդի դեպի ՀԱՂԹԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ»** (**ԵԼԺ**, հ. 1, էջ 377):

Տասնիններորդ դարի վերջին և հատկապես քսաներորդ դարի սկզբներին ռուսական պրոլետարիատի ծավալած հեղափոխական շարժումը հսկայական նշանակություն ունեցավ ողջ Ռուսաստանում բանվորական շարժման զարգացման համար: Ռուսաստանի բանվորների հեղափոխական գիտակցության սերմանողը, նրանց համախմբողը դարձավ բոլշևիկյան կուսակցությունը, որը, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, «որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական կուսակցություն» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 7), ծագելով 1903 թ., կանգնեց Ռուսաստանի հեղափոխական ուժերի գլուխ: «ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է, որ լենինյան կուսակցության կազմավորումը շրջադարձային գործոն եղավ ռուսաստանյան և միջազգային պրոլետարիատի ազատագրական պայքարում: Եվ, իրոք, ՌՍԴԲԿ համագումարն ավարտեց այն համառ ու երկարատև պայքարը, որ մղում էին Ռուսաստանի մարքսիստները սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները միավորելու, իսկական հեղափոխական, մարքսիստական կուսակցություն ըստեղծելու համար:

Երկրորդ համագումարի պատմական նշանակությունն այն է, որ «...ավարտեց Վլադիմիր Իլյիչ Լենինի մշակած գաղափարական, քաղաքական և կազմակերպական սկզբունքներով Ռուսաստանի հեղափոխական մարքսիստական կազմակերպությունների միավորման պրոցեսը» (ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին. ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: «Լենինյան ուղիով», № 4, 1983 թ., էջ 3):

Մարքսի ու Էնգելսի մահից հետո ՌՍԴԲԿ II համագումարը միջազգային բանվորական շարժման պատմության մեջ առաջինը որդեգրեց հեղափոխական ծրագիր, որում, իբրև հիմնական խնդիր, առաջադրվեց հանուն պրոլետարիատի դիկտատուրայի մղվող կռիվը:

Մարքսիստական հեղափոխական կուսակցության գոյավորումը պատմական նշանակություն ունեցավ Ռուսաստանի պրոլետարիատի համար: Չնայած ցարական իշխանության դաժան հալածանքներին ու տեռորին, բոլշևիկները դարձան բանվոր-դասակարգի պայքարի անձնվեր ղեկավարներ: Վ. Ի. Լենինը առանձնահատուկ կերպով կարևորեց Ռուսաստանի ծայրամասերի հեղափոխական շարժումների ծավալումը, նրանց փոխադարձ կապի միասնությունը: «Մեր մերձավորագույն խնդիրը» նշանավոր հոդվածում Վ. Ի. Լենինը 1899 թ. վերջին գրել է. «Բանվորների պայքարը դասակարգային պայքար է դառնում միայն այն ժամանակ, երբ ողջ երկրի ամբողջ բանվոր դասակարգի բոլոր առաջավոր ներկայացուցիչները գիտակցում են իրենց որպես միասնական բանվոր դասակարգ և ըսկըսում են պայքար մղել ո՛չ թե առանձին գործատերերի դեմ, այլ կապիտալիստների **ամբողջ դասակարգի** և այդ դասակարգը պաշտպանող կառավարության դեմ» (**ԵԼԺ**, հ. 4, էջ 236): Պետերբուրգի, Մոսկվայի, Խարկովի և այլ վայրերի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները, իրենց հեղափոխական գործունեության հետ միասին, հսկայական ջանքեր էին գործադրում կուսակցության, Վ. Ի. Լենինի ցուցումները երկրի տարբեր վայրեր հղելու համար, նպաստում տեղերում սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ստեղծման, նրանց գաղափարապես կոփելու վեհ գործին:

Ռուսաստանի պրոլետարիատի հեղափոխական պայքարը վճռական ազդեցություն ունեցավ նաև Անդրկովկասում բանվորական շարժման զարգացման վրա, որը դեռևս XIX դարի վերջից դարձել էր Ռուսաստանի պրոլետարիատի ընդհանուր պայքարի բաղկացուցիչ մասը:

Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում Անդրկովկասի դերը համառուսաստանյան հեղափոխական շարժման մեջ: 1903 թ. հոկտեմբերին նա գրել է. «Թող Կովկասի ընկերները հաստատորեն ընթանան այն ուղիով, որի վրա նրանք կանգնել են: ...Թող նրանք շարունակեն համերաշխ աշխատանքը ընկերական վստահություն տածելով Կենտկոմի նկատմամբ» (**ԵԼԺ**, հ. 46, էջ 383): Կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները՝ Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը լուրջ ուշադրություն էր նվիրում Ռուսաստանի մյուս մարզերի հեղափոխական ուժերի հետ կապերի ստեղծմանը, նրանց անհրաժեշտ օգնություն էր ցույց տալիս:

Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների մեջ դարասկզբից աչքի էր ընկնում Բաքվի կազմակերպությունը: Բաքուն ո՛չ միայն Անդրկովկասի խոշոր արդյունաբերական կենտրոնն էր, այլև աչքի էր ընկնում բազմազգ պրոլետարիատի հոծ զանգվածով: Բաքվում էլ կազմավորվեց Ռուսաստանի հեղափոխական շարժումների պատմության մեջ պրոլետարիատի առաջին հզոր ինտերնացիոնալ ջոկատներից մեկը: Բաքվի պրոլետարիատի պայքարը ահագին ներգործություն է ունեցել ինչպես Անդրկովկասում, այնպես էլ Դաղստանում, Իրանական Ադրբեջանում հեղափոխական շարժման զարգացման վրա:

Մեծ է եղել Բաքվի հեղափոխական պայքարի ազդեցությունը նաև Միջին Ասիայում: XIX դարի 60—80-ական թվականներին նվաճելով նիքն էին դրել երկրամասի ողջ հասարակադաժան ռազմագաղութային ռեժիմ և, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, վարում էր «արկածախնդրական քաղաքականություն» (**ԵԼԺ**, հ. 5, էջ 373):

Երկրի կենտրոնական շրջաններից բավական հեռու լինելը, ծայրաստիճանի հետամնացությունը, ինչպես նաև գոյություն ունեցող ֆեոդալական հարաբերությունները իրենց կնիքն էին դրել երկրամասի ողջ հասարակական կյանքի վրա: Սակայն, չնայած ցարիզմի վարած ռեակցիոն քաղաքականությանը, Ռուսաստանին Միջին Ասիայի միացումն ունեցավ պատմականորեն առաջադիմական նշանակություն: Թուրքեստանը ներգրավվեց զարգացող ռուսական կապիտալիզմի տնտեսական ոլորտը, որը նշանակալի դեր խաղաց երկրամասի տնտեսության և սոցիալական կառուցվածքում: Ամբողջապես կախված լինելով Ռուսաստանի տնտեսությունից՝ երկրամասի արտադրաուժերի զարգացումը կրում էր գաղութային բնույթ: Կապիտալիզմի թափանցումը, երկաթուղու կառուցումը նպաստեցին երկրամասում նոր քաղաքների աճին: Հիմնադրվեցին Կրասնովոդսկը, Ասխաբադը, Սկոբելևը (Ֆերգանա), Վերնին (Ալմա-Աթա), Պիշպեկը (Ֆրունզե) և այլն, որոնք Տաշքենդի, Սամարղանդի, Կոկանդի հետ միասին դարձան Թուրքեստանյան երկրամասի հիմնական արդյունաբերական կենտրոնները: 1880 թ. եղած 21 արդյունաբերական ձեռնարկության փոխարեն 1900 թ. կար արդեն 190 ձեռնարկություն: Դրանց մեջ գերակշռում էին բամբակազտիչ գործարանները: Երկաթուղու երկայնքով ձգվող քաղաքներում ստեղծվեցին շատ թե քիչ խոշոր ար-

հեստանոցներ, երկաթուղային դեպոներ: Հայտնաբերվեցին և գործարկվեցին նավթի մի քանի հանքավայրեր: Ձեռնարկությունների մեծ մասն ուներ 50—100 բանվոր: Թուրքեստանի պրոլետարիատի ամենախոշոր ջոկատն աշխատում էր երկաթուղում: Միայն Կիզիլ-Արվատի դեպոյում 1905 թ. սկզբում կար հազար բանվոր[1], իսկ ամբողջ երկաթուղում՝ 10—12 հազար: 1904 թ. արդյունաբերության մեջ աշխատող բանվորների թիվը հասավ 10 հազարի, որից 6 հազարը զբաղված էր բամբակազտիչ գործարաններում[2]:

Երկրամասում բանվորները ենթարկվում էին դաժան կեղեքման: Աշխատօրը կազմում էր 10—16 ժամ: Տեղացի բանվորների պայմանները ավելի վատթար էին, նրանց աշխատավարձը զգալիորեն պակաս էր եկվոր բանվորների աշխատավարձից:

Երկաթուղու շինարարությունն ու շահագործումը նպաստեցին ռուս բանվորների ավելացմանը: Թուրքեստան եկած բանվորների մեջ քիչ չէին Ռուսաստանում, Անդրկովկասում դասակարգային պայքարի բովով անցած մարդիկ, որոնք և որոշակի դեր խաղացին երկրամասում հեղափոխական շարժման սաղմնավորման ու զարգացման գործում:

Թուրքեստանում ձևավորվող պրոլետարիատը բազմազգ էր: Երկաթուղայինների ու ծովայինների մեջ գերակշռում էին ռուսները, նավթային արդյունաբերության մեջ՝ ադրբեջանցիները, հայերը, վրացիները, դաղստանցիները, բեռնակիրների մեծ մասը պարսիկներ էին: Քիչ չէին նաև ուզբեկ, թուրքմեն, ղազախ բանվորները: Վ. Ի. Լենինը, նկատի ունենալով կապիտալիզմի զարգացման պայմաններում տարբեր ազգությունների միախառնվելը, այն համարում էր առաջադեմ երևույթ: Թուրքեստանի պրոլետարիատի բազմազգ կազմը մեծապես նպաստեց ընդհանուր հեղափոխական պայքարում բոլոր ազգությունների բանվորների միավորմանը:

Թուրքեստանը ցարական իշխանությունների համար դարձել էր նաև հեղափոխականների աքսորավայր: Այստեղ երկրի կենտրոնական շրջաններից, Անդրկովկասից դարասկզբին արտաքսվեցին բազմաթիվ մարդիկ՝ հեղափոխական շարժումներին մասնակցելու համար: Աքսորյալների մեջ բավական մեծ թիվ էին կազմում սոցիալ-դեմոկրատները: Այսպես, 1902 թ. նոյեմբերի 28-ին Պետերբուրգից Անդրկասպիա արտաքսվեց տեխնոլոգիական ինստիտուտի նախկին ուսանող, ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեի անդամ Լեոնիդ Ֆոկինը[1]:

Թուրքեստանում մարքսիզմը տարածելու և պրոպագանդելու գործում զգալի մասնակցություն ունեցան նաև Անդրկովկասից արտաքսված հեղափոխականները, սոցիալ-դեմոկրատները, որոնք սերտորեն կապված էին ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հետ: Անդրկովկասից արտաքսված առաջին հեղափոխականներից էին Կոսում Մոլլա Իբրահիմ-օղլին և Մոլլա Յակուբ Բարաթ-զադեն[2]: 1903 թ. օգոստոսի 2-ին Ասխաբադում ձերբակալվեց Բաքվից եկած մետաղագործ բանվոր Ա. Դրուկկերը[3], որը, վկայակոչելով Բաքվի գործադուլավոր բանվորների հաջողությունը, Մաչուլսկու փականագործական արհեստանոցի բանվորներին կոչ էր անում «միանալ բանվորների խռովությանը, ...որի արդյունքը կլինի 8-ժամյա բանվորական օրվա հաստատումը»[4]: 1903 թ. օգոստոսի 27-ին Ասխաբադում ձերբակալվեց Բաքվից եկած բանվոր Վոլովնիկը, որը քաղաքից դուրս կազմակերպում էր բանվորների հավաքներ[5]: Ձերբակալության ժամանակ Վոլովնիկի մոտ հայտնաբերվեց անլեգալ գրականություն[6]:

Ռուսաստանում 1900—1901 թթ.-ից սկսած հեղափոխական շարժումը լայն արձագանք ունեցավ երկրի տարբեր վայրերում: Թուրքեստանում ևս տեղի ունեցան գործադուլներ: Կրասնովոդսկի նավահանգստի բեռնակիրների, Կուշկայի երկաթուղայինների գործադուլները թեև թույլ էին, անկազմակերպ, սակայն կարևորն այն էր, որ դրանք երկրամասում առաջին բանվորական ելույթներն էին: Հուզումներ սկսվեցին նաև դեհկանների մոտ: 1902—1903 թթ. ոտքի ելան Սերախս գավառի դեհկանները, որոնց ղեկավարում էր Բոգդան Կոստանդովը: Դեհկանների ըմբոստությունն սպառնալի չափերի հասավ: Իշխանությունները սկսեցին ձերբակալումներ կատարել[7]:

---

[1] Партархив ИМЛ ТФ при ЦК КПТ, ф. 1, оп. 2, д. 568, л. 54.

[2] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 3, д. 78, л. 5.

[1] ЦГА ТССР. ф. И-1, оп. 2, д. 16056, л. 4.

[2] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 31 д. 145, л. 1.

[3] ЦГАОР, ф. 124, оп. 12, д. 1394, л. 1—2.

[4] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 31, д. 230, л.3.

[5] ЦГА Уз. ССР, ф. И-33, оп. 1, д. 208, л. 11.

[6] ЦГА ТССР, ф. И-9, оп. 1, д. 30, л. 5, 10.

[7] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 4, д. 738, л. 18, 22—23.



Սակայն դեհկանները չէին նահանջում: Նրանք պահանջում էին ետ վերադարձնել խաների բռնագրաված հողերը: Շուտով ցարական իշխանություններին հայտնի դարձավ, որ դեհկանների ապստամբության ոգեշնչողն ու ղեկավարը Անդրկովկասից Սերախս աքսորված Բոգդան Կոստանդովն է: Այդ մասին Թուրքեստանի գեներալ-նահանգապետին ուղարկած հեռագրում 1902 թ. մայիսի 30-ին Անդրկասպիայի մարզի պետը գրում էր. «Հայ Բոգդան Կոստանդովը Սերախս գավառի Ելովաչ աուլի բնիկներին հրահրում է ադմինիստրացիայի և նրա կարգադրությունների դեմ... Ստիպված հանձնարարել եմ Սերախսից Մերվ վտարել Կոստանդովին, այլապես անհնար է ելովաչցիներին հանդարտեցնել: Եռանդագին խնդրում եմ այս կարգադրությունը հաստատել. սրա հետ միասին առաջարկում եմ Կոստանդովին մարզից արտաքսել ընդմիշտ»[1]:

Սերախսի դեհկանների հուզումներն ավելի բորբոքվեցին 1903 թ. գարնանը: Դեհկաններին ճնշելու նպատակով ձեռնարկված միջոցների հետ միասին 1903 թ. հունիսի 6-ին Անդրկասպյան մարզի պետը գեներալ-նահանգապետին ուղարկած զեկուցագրում նշում էր. «Ծայրահեղորեն անհրաժեշտ է երկրամասից արտաքսել... Բոգդան Կոստանդովին, որը ...ադմինիստրացիային հայտնի է որպես անբարեհույս և տեղացիների վրա քայքայիչ ազդեցություն ունեցող մարդ: Հիշյալ Կոստանդովի արտաքսումը օրինակ կծառայի մյուսների համար...»[2]: Թուրքեստանի միացումից հետո ցարական իշխանությունները նման ըմբոստության չէին հանդիպել և գործադրեցին բոլոր միջոցները Սերախսի դեհկանների հուզումները դաժանորեն ճնշելու համար: Բազմաթիվ դեհկաններ ձերբակալվեցին ու աքսորվեցին: Արտաքսվեց նաև Բոգդան Կոստանդովը, որին ցարական իշխանությունները որակում էին որպես «ծայրահեղորեն կասկածելի անձնավորություն»[1]: Որքան էլ ցարական մարմինները ջանում էին Սերախսի գյուղացիների հուզումների և վերոհիշյալ բանվորական գործադուլների փաստը թաքցնել, այլևս անկարող էին: Թուրքեստանում սկիզբ էր առնում մի շարժում, որին վիճակված էր հետո ավելի ուժեղանալ, զորանալ և դառնալ համառուսական հեղափոխական շարժման բաղկացուցիչ մասը:

Ինչպես վկայում են արխիվային փաստաթղթերը, 1902—1903 թթ. Թուրքեստանում տարածվող անլեգալ հեղափոխական գրականությունը հիմնականում բերվում էր Անդրկովկասից, հատկապես, Բաքվից: Բաքուն, ականավոր հեղափոխական, Վ. Ի. Լենինի անձնուն զինակից Բոգդան Կնունյանցի բնորոշմամբ, դարձել էր պրոլետարիատի խոշոր կենտրոններից մեկը («Искра», № 47, 1 սեպտեմբերի, 1903 թ.): Բաքվի բոլշևիկների տպագրած թռուցիկներից առաջինը, որ հասցվել էր Թուրքեստան, «Ընկերներ» վերտառությամբ թռուցիկն էր: Այն ոստիկանությունը հայտնաբերեց Կրասնովոդսկում, 1903 թ. փետրվարի 12-ին[2]: Այդ թռուցիկի հայտնաբերումն իրարանցում էր առաջացրել ցարական իշխանությունների ներկայացուցիչների շրջանում:

Ցարական ոստիկանության անհանգստությունն իսկապես հիմքեր ուներ: Մարզում անընդհատ հայտնաբերվում էին Բաքվի կոմիտեի թռուցիկները: Դրանք տարածվում էին նաև երկրամասում տեղավորված զորամասերում: Զորամասերում անլեգալ գրականություն տարածելու համար Տաշքենդում ձերբակալվեցին զինվորներ Իվան Դեմետրաշվիլին և Վասիլի Դվալիշվիլին[3]:

Բերված փաստերը պերճախոս վկայությունն են այն բանի, որ հատկապես ՌՍԴԲԿ II համագումարից հետո Թուրքեստանում սկսեց ավելի ուժեղանալ և նպատակային դառնալ մարքսիստական գրականության տարածումը: Մարքսիզմի պրոպագանդման գործում գլխավոր դերը պատկանում էր Բաքվի բոլշևիկյան կոմիտեին, նրա փորձված հեղափոխականներին և ընդհատակյա տպարաններին:

---

[1] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 4, д. 738, л. 9.

*Բ. Կոստանդովը Անդրկովկասից աքսորվել էր Թուրքեստանի ամենահեռավոր ու խուլ անկյուններից մեկը՝ Սերախս գավառը: Նրան այնտեղից վտարելու համար հարկավոր էր Թուրքեստանի գեներալ-նահանգապետի թույլտվությունը, քանի որ Կոստանդովը գտնվում էր ոստիկանության գաղտնի հսկողության տակ:*

[2] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 4, д. 738, л. 11.

[1] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 4, д. 738, л. 12.

*Բ. Կոստանդովը արտաքսվեց Կերկա ամրոց, ուր ապրում էին իր հայրենի Ղափանից եկած բազմաթիվ հայ ընտանիքներ:*

*Բ. Կոստանդովի որդիները աչքի ընկան 1919 թ. գարնանը Կերկան սպիտակ-գվարդիական հրոսակներից պաշտպանելու ժամանակ:*

[2] ЦГА ОР, ф. 124, оп. 13, д. 91, л. 11.

[3] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 31, д. 192, л. 289.

1903 թ. ամռանը ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հանձնարարությամբ Կիզիլ-Արվատ եկավ Բուզովը[1], որը և սոցիալ-դեմոկրատական խմբի կազմակերպիչը դարձավ: Խումբը սերտ կապի մեջ էր Բաքվի կոմիտեի հետ, նրանից ստանում էր անհրաժեշտ գրականություն: Բաքվից Կիզիլ-Արվատ էին գալիս ագիտատորներ ու կազմակերպիչներ, որոնք տեղի խմբի միջոցով բանվորներին տեղեկացնում էին երկրում ծավալված հեղափոխական շարժման մասին[2]: Բաքվի կոմիտեի ջանքերով Կիզիլ-Արվատ հասցվեցին ընդհատակյա տըպարան ստեղծելու անհրաժեշտ պարագաներ: Տաշքենդում ևս 1903 թ. հաջողվեց ստեղծել սոցիալ-դեմոկրատական խումբ[3]: Ըստ ոստիկանության տվյալների, Ասխաբադում արդեն 1904 թ. սեպտեմբերին գործում էր սոցիալ-դեմոկրատական խմբակը: Բաքվի կոմիտեի ջանքերով ստեղծված այդ խմբակը ոչ միայն տարածում էր Բաքվից ստացված թռուցիկները, այլև արդեն հնարավորություն ուներ սեփական ուժերով թռուցիկներ պատրաստել և տարածել[4]:

Անդրկասպիայում հեղափոխական շարժման ակտիվ մասնակից Արտեմ Բերեկաշվիլին վըկայում էր, որ 1904 թ. մայիսին Ասխաբադում առաջին անգամ կազմակերպվեց ՌՍԴԲԿ ասխաբադյան խումբը՝ Յասոն Մետրևելու գլխավորությամբ: Խմբի անդամներից էին Հերմոգեն Գաբրիչիձեն, Ավթանդիլ Տոկայշվիլին, Սարդիոն Ախվլեդիանին և ուրիշներ[5]: Առաջինն այդ խմբին միացան Ասխաբադի դեպոյի բանվոր Պետրովը և «Ասխաբադ» թերթի տպագրիչ Բեզուխովը: Քիչ անց խմբի մեջ մտան Վիկտոր Բագրաձեն, Գեորգի Բագրաձեն, Վորոպաևը, Իվան Գուսևը, Վասիլևը, Կուլիկովը և ուրիշներ[6]: Ավթանդիլ Տոկայշվիլին իր հուշերում պատմում էր, որ խմբի մեջ մտնում էին երկաթուղու բանվորներ, տպագրիչներ, զինվորներ և հեղափոխական երիտասարդությունը, որի մեջ շատ էին հայերը[7]:

---

[1] «Туркменская искра», № 60, 14 марта, 1928 г.

[2] Партархив ИМЛ ТФ при ЦК КПТ, ф. 40, оп. 1, д. 1, л. 99.

[3] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 32, д. 341, л. 1.

[4] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 254, л. 2.

[5] Партархив ИМЛ ТФ при ЦК КПТ, ф. 40, оп. 1, д. 1, л. 49.

[6] Партархив ИМЛ ТФ при ЦК КПТ, ф. 40, оп. 1, д. 1, л. 50.

[7] «Коммунист», ежемесячный журнал ЦК КПТ, № 7—8 1922 г. стр. 114—116.

Շուտով Ասխաբադում կազմվեց մեկ այլ սոցիալ-դեմոկրատական խումբ՝ Լյուդվիգ Ստաբրովսկու ղեկավարությամբ, որը Ասխաբադ էր եկել Բաքվից 1904 թվականի օգոստոսին: Լ. Ստաբրովսկին 1903 թ. ավարտել էր Պետերբուրգի համալսարանը և նշանակվել Շուշի քաղաքի ռեալական ուսումնարանի մաթեմատիկայի ուսուցիչ: Գալով Ասխաբադ՝ նա նշանակվեց իգական գիմնազիայի ուսուցիչ: Այստեղ, ինչպես նշվել է հետագայում արձակված դատավճռում, «Լ. Ստաբրովսկին, ստանալով լավ աշխատավարձ՝ տարեկան 1800 ռուբլի, որով կարող էր քաղաքի կենտրոնում բնակարան գտնել, տեղավորվեց ծայրամասում, չծանոթանալով իր աշխատակիցների հետ, նա ծանոթություն էր հաստատում բացարձակապես միայն հայերի հետ, որոնց մեջ հատկապես աչքի էր ընկնում Ռիգայից եկած նախկին ուսանող Սարիյանցը[1]:

Ասխաբադի խմբի տարածած առաջին թռուցիկներից մեկը գրված էր հայերեն[2]: Ահա այն, որն առաջին անգամ է դրվում գիտական շըրջանառության մեջ. **«Մենք ըստ չափու կարողության պիտի օգնենք խոսքով և գործով: Բայց առավելապես մեզ համար թանկ արժեն աշխատող, բանվոր, մրոտ դասակարգի շահերը, որ ստիպված է աշխատել հարուստ կապիտալիստների համար, իր վերջին խնայողությունը տալ պատերազմի համար իբրև հարկ, որին տերությունը գիտակցաբար զըրկել է կրթությունից, որը հարստահարված է, հալածված, երկյուղի մեջ ընկած: Ամբողջ ժամանակ մենք կգործենք ոժբախտ պրոլետարիատի ինքնագիտակցությունը զարգացնելու և կրթելու:**

**Մեր վերջին կոչը ինքնակալության բոլոր թշնամիներին,— պատրաստվեցեք կռվի, միացեք, դեն գցեք երկպառակությունները ու խռովությունները: Միանալու մեջ է մեր ուժը, կռվի մեջն է մեր կյանքը: Ձրիաբար ազատություն չի տրվում, բավական է թոնթորալ և հառաչել: Ազատությունը գոյության իրավունք ձեռք է բերում մարդկային քրտինքով և արյունով, հարկավոր չէ ձեռքերը ծալած նըստել և փիլիսոփայություն անել: Հարկավոր է կռվել, կռվել և դարձյալ կռվել: Գուցե դուք համաձայն չեք մեզ հետ մի քանի կետերում, բայց մենք ունենք մի ընդհանուր թշնամի՝ ինքնակալությունը, թունավորող առողջ մեր կյանքը, ծծող մեր արյունը: Մենք պիտի կամ**

---

[1] ЦГА Уз. ССР, ф. И-129, оп. 1, д. 709, л. 132—133, ф. И-133, оп. 1, д. 254, л. 100.

[2] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 254, л. 2.



**նրան տապալենք, կամ ինքներս ընկնենք: Մի կողմ թողնենք մեր երկպառակությունները մինչև մեր սարսափելի թշնամու խորտակվելը: Խորտակենք ինքնակալությունը, այն ժամանակ մենք կարող կլինենք ազատ շունչ քաշել, և դուք կերթաք ձեր ճանապարհով, իսկ մենք՝ մերով: Կորչի՛ ինքնակալությունը:**

**Կեցցե՛ դաշնակից ընկերավարական հասարակությունը»**[1]:

Ասխաբադի ոստիկանությունը շտապեց միջոցներ ձեռնարկել թռուցիկներ տարածողներին հայտնաբերելու համար: 1904 թ. նոյեմբերի սկզբներին Անդրկասպիայի մարզի պետը Թուրքեստանի գեներալ-նահանգապետին հաղորդում էր, որ «...որոշ տեղեկությունների հիման վրա կարելի է միայն ենթադրել, որ ռուսերեն և հայերեն լեզուներով թռուցիկներ գրվում են միևնույն անձի կողմից և որ այդ անձը հայ է, հավանաբար սովորող երիտասարդությունից»[2]:

1904 թ. օգոստոսին Ասխաբադ եկավ Բաքվի ճանաչված հեղափոխական, սոցիալ-դեմոկրատ Արշակ Խաչիևը (Խաչիյանը)[3]: Այստեղ նա հանդիպում է դեռևս Բաքվից ծանոթ Լ. Ստաբրովսկուն, նրանից տեղեկանում իրերի վիճակին և ձեռնամուխ լինում Ս. Դ. խմբի ամրապնդման, աշխատանքի կազմակերպման գործով: Կարճ ժամանակ անց, Ա. Խաչիևին հաջողվեց միավորել Ասխաբադում գործող երեք խմբակները: Այս միավորումը անգնահատելի նշանակություն ունեցավ ընդհանրապես Անդրկասպիայում հեղափոխական աշխատանքն ավելի կազմակերպված հունի մեջ դնելու գործում: Ա. Խաչիևը, որին հայտնի էին ՌՍԴԲԿ II համագումարի որոշումները, կապվեց Բաքվի կոմիտեի հետ և ստացավ ղեկավար ցուցումներ: Ա. Խաչիևին, Բաքվից եկած Պ. Վախնինին հաջողվեց սոցիալ-դեմոկրատական խումբը մենշևիկներից ու էսէռներից սահմանազատել և կանգնել բոլշևիկյան դիրքերում: Ա. Խաչիևը, որը դեռևս Բաքվից թռուցիկներ տպելու և տարածելու մեծ փորձ ուներ, անմիջապես Լ. Ստաբրովսկու, նրա կնոջ՝ Ք. Ստաբրովսկայայի, Ա. Ասիրյանցի և այլոց հետ ձեռնամուխ եղավ տպագրական գործի կազմակերպմանը: Նրանց ջանքերով 1904 թ. սեպտեմբերի 24-ին տպագրվեց և տարածվեց միավորված խմբի առաջին թռուցիկը՝ ուղղված Ասխաբադի բոլոր բնակիչներին: **«Երկար աշխատանքից ու հավաքներից հետո,**—ասվում էր դրանում,— **ամբողջ Ռուսաստանում այժմ գործող մյուս կազմակերպությունների օրինակով, վերջապես մեզ հաջողվեց կազմակերպվել: Այսօրվանից մենք մեր փոքր ներդրումը կանենք ռուսական ընդարձակ պետության բոլոր անկյուններում եռացող հեղափոխական մեծ գործին: Մեր ուժերի չափ մենք էլ կնպաստենք բոլոր հեղափոխականների մոտակա նպատակին՝ ինքնակալության տապալմանը, ինքնակալություն, որը ժողովրդական միջոցներն անմտորեն ծախսում է ոչ մեկի պետք չեկող պատերազմում»:**

Ասխաբադի սոցիալ-դեմոկրատները հենց առաջին թռուցիկով պարզաբանեցին իրենց վերաբերմունքը տարբեր ազգությունների նըկատմամբ: **«Մեզ՝ սոցիալիստներիս համար,—** ասվում էր թռուցիկում,— **միատեսակ թանկ են բոլոր ժողովուրդների աշխատավոր դասակարգերի շահերը: Մենք կբողոքենք ու կդիմադրենք և՛ ռուսների, և՛ հայերի, և՛ վրացիների, և՛ տեկինցիների** (թուրքմեններին— Վ. Պ.), **և՛ պարսիկների, և՛ մյուսների ճնշման դեմ: Բոլոր ճնշվածներին, անկախ նրանց ազգությունից և պաշտամունքից, մենք հնարավորության չափ կօգնենք խոսքով ու գործով: Բայց հատկապես մեզ թանկ են հարուստների ու կապիտալիստների համար կեղեքվող բանվոր դասակարգի շահերը...»: «Միավորման մեջ է մեր ուժը,—** եզրափակում էր թռուցիկը,— **պայքարի մեջ է մեր կյանքը... պետք է պայքարել, պայքարել և պայքարել...»**[1]:

Հետևելով Բաքվի կոմիտեի օրինակին՝ Ասխաբադի սոցիալ-դեմոկրատական խումբը հենց սկզբից իր ուշադրության կենտրոնում էր պահում տարբեր ազգերի աշխատավորների շրջանում հեղափոխական աշխատանքը կազմակերպելու խնդիրը: Լուրջ ջանքեր գործադրվեցին նրանց հեղափոխական դաշինքն ամրապնդելու համար: Փաստորեն իր առաջին քայլերով Ասխաբադի սոցիալ-դեմոկրատիան Անդրկասպիայում հիմք դրեց ցարիզմի դեմ մղվող պայքարում աշխատավորների ինտերնացիոնալ համախմբմանը: Աստիճանաբար ավելի շատ բանվորներ, սովորողներ, արհես-

---

[1] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 18.

[2] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 254, л. 26.

[3] *Արշակ Միքայելի Խաչիևը ծնվել է 1874 թ.: 1902 թ. ընդունվել է ՌՍԴԲԿ շարքերը: 1903 թ. նա ձերբակալվում է Բաքվում և աքսորվում Տաշքենդ: 1904 թ. օգոստոսին Տաշքենդից փախչում է Ասխաբադ, նպատակ ունենալով անցնել արտասահման: (Տե՛ս Ա. Խաչիևի ինքնակենսագրությունը, որը պահվում է ՄԼԻ Հայկական մասնաճյուղում):*

[1] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 55, л. 18.

տավորներ էին ընդգրկվում հեղափոխական աշխատանքում: Նրանցից շատերը, ինչպես օրինակ, Ս. Միխայլովը, Հ. Ղուկասովը, Ա. Թադևոսյանը, Տեր-Հովհաննեսովը, Սարկիսյանը, Ոսկանյանը, կյանքը վտանգի ենթարկելով, խմբի հանձնարարությամբ Ասխաբադում թռուցիկներ էին տարածում[1]: Անդրկասպիայի մարզի պետը Պետերբուրգ ուղարկած զեկուցագրում նշում էր. «Վերջին երկու տարիներին (1903—1904 թթ.) Անդրկասպյան մարզը և հատկապես Ասխաբադը աստիճանաբար վերածվել են Բաքվի հանցագործ խմբակցությունների հետ մշտական կազմակերպված կապի մեջ գտնվող հեղափոխականների գործունեության խոշոր և վտանգավոր կենտրոնի»[2]:

ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հետ կապն է՛լ ավելի ամրապնդելու նպատակով 1904 թ. դեկտեմբերին Բաքու մեկնեց Լ. Ստաբրովսկին: Նա եղավ նաև Թիֆլիսում: Ստանալով անհրաժեշտ ցուցումներ և օգնություն՝ Լ. Ստաբրովսկին 1905 թ. հունվարի 2-ին վերադարձավ Ասխաբադ: Ա. Խաչինն ու Լ. Ստաբրովսկին անհապաղ ձեռնամուխ եղան ՌՍԴԲԿ ծրագրի տպագրությանը: 1905 թվականի հունվարի 10-ին ոստիկանությունը ձերբակալեց Ա. Խաչինին, Լ. Ստաբրովսկուն, նրա կնոջը և Եգորովին[3]: Խուզարկության ժամանակ նրանց մոտ հայտնաբերվեցին ծրարներ, որոնք պարունակում էին արդեն տպագրված ծրագրի օրինակները[4]: Ա. Խաչինի և Լ. Ստաբրովսկու ձերբակալումը զգալի կորուստ եղավ Ասխաբադի սոցիալ-դեմոկրատական խմբի համար: Ցարական դատարանը Լ. Ստաբրովսկուն և Ա. Խաչինին դատապարտեց բանտարկության: Բանտում Լ. Ստաբրովսկին մահացավ: 1905 թ. հուլիսի 4-ին Ասխաբադում տեղի ունեցավ Լ. Ստաբրովսկու թաղումը, որը վերածվեց հուժկու քաղաքական ցույցի: Թաղմանը մասնակցում էր երեք հազար մարդ[5]: Երբ թափորն անցնում էր քաղաքային բանտի մոտով, ցուցարարները Լ. Ստաբրովսկու դագաղը մոտեցրին բանտի պատուհանին, որպեսզի ընկերոջը հրաժեշտ տա այնտեղ գտնվող Ա. Խաչինը: Ա. Խաչինը ամուր կառչելով պատուհանի ճաղերից, բացականչեց. «Ահա ևս ինքնակալության մեկ զոհ»[1]: Լ. Ստաբրովսկու թաղման ժամանակ, ներկաներին ճառով դիմեցին սոցիալ-դեմոկրատներ Կատաևը, Նեստերովը, Վասիլևը, Ասրիյանը և ուրիշներ: Ոստիկանական զեկուցագրում նշվում էր, որ «նախկին ուսանող Ասրիյանը, որն ամբողջովին ավարտուն ծայրահեղ հեղափոխական տիպ է և Ասխաբադում հայկական հեղափոխական խմբի ոգեշնչողն է», «Ծմույլովիչ եղբայրների ու քրոջ հետ միասին իր վրա էր վերցրել Լ. Ստաբրովսկու ցուցադրական թաղման կազմակերպումը»[2]:

Լ. Ստաբրովսկու թաղման ժամանակ տեղի ունեցած ցույցը լայն արձագանք գտավ Թուրքեստանում: Նոր հուզումներից վախենալով՝ Թուրքեստանի գեներալ-նահանգապետը ռազմական մինիստրին գրում էր. «...հուլիսի 4-ին Ասխաբադում տեղի ունեցած անկարգությունների կրկնման դեպքում... թուրքմենների, կիրգիզների աչքում կխարխլվի հավատը կառավարության ուժի նկատմամբ»[3]: Լ. Ստաբրովսկու թաղմանը անդրադարձավ ՌՍԴԲԿ Կովկասյան միության օրգան «Բորբա պրոլետարիատա» թերթը, որը 1905 թ. հուլիսի 15-ին (№ 2) հրապարակեց ընդարձակ հաղորդում՝ նշելով «Եվս մեկ զոհ ընկավ ատոր ինքնակալության ձեռքով»:

Չնայած հասցված ծանր հարվածին, Ասխաբադի բոլշևիկները ավելի համախմբվեցին, սկսեցին ավելի սահմանազատվել օպորտունիստական տարրերից, և 1905 թ. մարտին գործող խումբը վերակազմվեց որպես ՌՍԴԲԿ Ասխաբադի կոմիտե, որն ավելի սերտ կապեր հաստատեց Բաքվի բոլշևիկների հետ և Թուրքեստանում ստեղծեց առաջին անլեգալ տպարանը: Այդ տպարանն ստեղծվեց բոլշևիկ Վ.

[1] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 254, л. л. 25, 26, 61.

[2] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 31, д. 325, л. 36.

[3] *Եգորովը ցարական ոստիկանության կողմից վարձված պրովոկատոր էր, որին հանձնարարված էր հետևել Ա. Խաչինին: Ա. Խաչինը ինչպես Բաքվում, այնպես էլ Թուրքեստանում միշտ ձերբակալվել է Եգորովի մատնությամբ: Պրովոկատոր Եգորովը մերկացվեց միայն Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո:*

[4] ЦГА ТССР, ф. 11, оп. 2, д. 22, л. 44.

[5] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 329, л. 29.

[1] ЦГА Уз. ССР, ф. И-133, оп. 1, д. 3329, л. 29.

[2] Партархив ИМЛ ТФ при ЦК КПТ, ф. «Подборка», д. 107, л. 1, 4, 7.

[3] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 31, д. 325, л. 23—24.



Բագրաձեի ջանքերով[1] և հսկայական դեր խաղաց մարքսիստական անլեգալ գրականության տարածման գործում: 1905 թ. մայիսի 7-ին Ասխաբադում ձերբակալվեցին Հ. Մեքիևը, Ա. Մեքիևը և Ա. Հայրապետյանը՝ բոլշևիկյան թռուցիկներ տարածելիս: ՌՍԴԲԿ կոմիտեն մայիսի 15-ին Ասխաբադում տարածեց քաղաքացիներին ուղղված թռուցիկ՝ տեղեկացնելով Հ. Մեքիևի և մյուսների ձերբակալման մասին: «Այս բանտարկությունները,— ասվում է թռուցիկում,— ոչ մի րոպե չեն կարող թուլացնել մեր գործունեությունը Ասխաբադում... Սոցիալ-դեմոկրատիան հենվում է բանվորական մասսայի վրա և ընկած ընկերների փոխարեն նոր մարտիկներ են մեր շարքերը մտնում աշխատավոր մասսաների ազատության և երջանկության համար: Կորչի՛ ինքնակալությունը: Կեցցե՛ սոցիալիզմը»[2]:

Ոստիկանությունն առանձնակի հետաքրքրություն էր ցուցաբերում հայերեն թռուցիկների վրա, քանի որ դրանցից մի քանիսը չունեին սովորական դարձած ստորագրությունները՝ «Բաքվի կոմիտե», «Կովկասյան միություն» և այլն: Հայերեն թռուցիկների մի մասը ստորագրված էր հայերեն և լատիներեն՝ «Արծվիկ» մակագրությամբ[3]:

Ցարական իշխանություններին լրջորեն անհանգստացնում էր Անդրկասպիայում տիրող վիճակը: Շուտով այստեղ եկավ բարոն Օստեն-Դրիզենը՝ մարզի իրավիճակը պարզելու նպատակով: Բարոնը, իր զեկուցագրում նշելով հեղափոխական ուժերի դեմ ձեռնարկված միջոցների մասին, առանձնապես շեշտում էր, որ «մշտապես ստուգվում են հատկապես հայերի, որպես ամենավնասակար տարրերի անձնագրերը»[1]:

ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հետ կապերի հաստատումը կարևոր նշանակություն ունեցավ Տաշքենդի սոցիալ-դեմոկրատական խմբի վերջնական կազմավորման, էսէռներից անջատվելու համար: Խումբը ձեռնամուխ եղավ անլեգալ հեղափոխական գրականության տարածմանը:

Միջին Ասիայի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները Անդրկովկասի բոլշևիկների գործուն աջակցությամբ դարձան երկրամասի հեղափոխական ուժերի ճանաչված ղեկավարներ: Վ. Ի. Լենինի ցուցումներին հավատարիմ՝ նրանք լայն աշխատանք էին ծավալում երկրամասի բանվորների պայքարը համառուսական հեղափոխական շարժման հետ միաձուլելու համար:

Անդրկովկասի բոլշևիկների եռանդուն գործունեության պտուղները շատ շուտով իրենց զգացնել տվեցին: Թուրքեստանի գեներալ-նահանգապետը 1905 թ. կառավարությանն ուղղված զեկուցագրում նշում էր, որ «հեղափոխական կուսակցությունը որոշել է իր գործունեությունը Եվրոպական Ռուսաստանից տեղափոխել ծայրամասերը» և իրենք «անկարող են այստեղ պայքարել այդ չարիքի դեմ...»[2]:

Անդրկովկասի բոլշևիկները պատվով կատարեցին Վ. Ի. Լենինի ցուցումները, ՌՍԴԲԿ II համագումարում հաստատված կուսակցության ծրագրի առաջադրած խնդիրները: Նրանք մեծ զրկանքների գնով մեծապես նպաստեցին Թուրքեստանում մարքսիստական գրականության տարածմանը, սոցիալ-դեմոկրատական խմբերի կազմակերպմանը, ակտիվ մասնակցություն ունեցան հեղափոխական ուժերի համախմբման գործում: 1905—1907 թթ. ռուսաստանյան առաջին բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ողջ ընթացքը ցույց տվեց, որ Թուրքեստանում ծավալված հեղափոխական պայքարը, իրոք, դարձավ համառուսական հեղափոխական շարժման բաղկացուցիչ մասը:

[1] *Վ. Տ. Բագրաձեն (1880—1952) ՍՄԿԿ անդամ էր 1898 թ., 1901—1902 թթ. աշխատել է Վ. Կեցխովելու ղեկավարությամբ, մասնակցել «Իսկրայի» տարածմանը: 1904—1906 թթ. Ասխաբադի դեպոյի բանվոր էր: Հետո մասնակցել է Վրաստանում սովետական իշխանության հաստատմանը: Վարել է մի շարք ղեկավար պաշտոններ:*

[2] ЦГА Уз. ССР, ф. И-461, оп. 1, д. 2277, л. 112.

[3] ЦГА ТССР, ф. 55, оп. 1, д. 3, л. 45—47.

*Այդպիսի ստորագրությունը ոստիկանությանը թյուրիմացության մեջ գցելու միտում ուներ, և իսկապես, ոստիկանությունը գլուխ էր ջարդում «նոր կուսակցության» հայտնաբերման համար: Մինչդեռ թռուցիկներն ունեին զուտ սոցիալ-դեմոկրատական բովանդակություն:*

[1] Начало революционного движения в Туркмении в 1900—1905 гг., кн. II, Ашхабад, 1946 г. стр. 130—135.

[2] ЦГА Уз. ССР, ф. И-1, оп. 31, д. 318, л. 4—5.

## Միջազգային թեմաներով

# ԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԽՈՐՏԱԿՈՒՄԸ ԵՎ ՉՄԻԱՆԱԼՈՒ ՇԱՐԺՈՒՄԸ

**Գ. Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

*ՄԵՆՔ ԱՊՐՈՒՄ ԵՆՔ ազգային-ազատագրական պայքարի բուռն վերելքի դարաշրջանում: Ճնշված ու կեղեքված ժողովուրդների հարվածների ներքո քայքայվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը, որը դեռ 60 տարի առաջ իշխում էր Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի և Օվկիանիայի ընդարձակ տարածություններում: Եթե 1919 թ. աշխարհի տերիտորիայի 77,2 տոկոսը և բնակչության 69,2 տոկոսը գտնվում էին գաղութային ճնշման տակ, ապա այժմ այդ թվերը կազմում են մեկ տոկոսից էլ պակաս: Գաղութային կայսրությունների փլատակների վրա կազմակերպվել են 100-ից ավելի սուվերեն, անկախ պետություններ:*

*Դարեր ի վեր Ասիան եղել է գաղութային կողոպուտի ասպարեզ: Վ. Ի. Լենինը առաջինը տեսավ գաղութային ու ճնշված երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման հզոր ուժը և առաջինն ազդարարեց «Ասիայի զարթոնքը»: «Եվրոպական գիտակից բանվորը,— գրել է Լենինը,— արդեն ասիական ընկերներ ունի և այդ ընկերների թիվը կաճի ոչ թե օրերով, այլ ժամերով» (ԵԼԺ, հ. 17, էջ 214): Նա արթնացող Արևելքի ժողովուրդների ազատագրական պայքարը համարում էր դյուրավառ նյութ, որը, բռնկվելով, ցնցելու էր գաղութակալության հիմքերը:*

*Արևելքի ժողովուրդների համար մեծ նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի մշակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» և «Ռուսաստանի և Արևելքի բոլոր մուսուլման աշխատավորներին» կոչը: Վերջինս թարգմանվեց արևելյան բազմաթիվ լեզուներով ու լայնորեն տարածվեց Ասիայի ու Աֆրիկայի տարբեր մասերում: Ասիայի ժողովուրդներն իրենց պատմության մեջ առաջին անգամ էին տեսնում սոցիալիստական պետության անշահախնդիր վերաբերմունքը մեծ ու փոքր ժողովուրդների նկատմամբ:*

*Հնդիկ ժողովրդի արժանավոր զավակ Ջավահառլալ Ներուն գրել է. «Սովետական հեղափոխությունը մեծ չափով առաջ մղեց մարդկային հասարակությունը և վառեց մի բոցավառ լույս, որն անհնար է հանգցնել: Նա հիմք դրեց այն նոր քաղաքակնությանը, որով կարող է առաջ շարժվել աշխարհը»* (Дж. Неру. Открытие Индии. М., 1955 г., стр. 24)*: Հատկանշական է, որ մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը Ասիայում, և ոչ միայն Ասիայում, գաղութային լուծը չէր թոթափել ոչ մի երկիր: Ազատագրական պայքարը նոր թափով ծավալվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո: Եթե մինչև 1940 թ. Ասիայի բնակչության 90 տոկոսից ավելին (կամ ավելի քան 1,2 միլիարդ մարդ) գտնվում էր գաղութային կամ կիսագաղութային կախվածության մեջ, ապա այժմ չազատագրված մնացել է մոտ 6 միլիոն մարդ միայն: Այսօր Ասիայում երեք գաղութային բեկորներ կան՝ Բրունեյ, Հոնկոնգ (Անգլիա) և Մակաո (Պորտուգալիա): Իմպերիալիզմի գաղութային լծից ազատագրված Ասիայի բոլոր երկրները կապի մեջ են Սովետական Միության հետ և ստանում են նրա քաղաքական ու բարոյական աջակցությունը:*



*Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ոչ մի աշխարհամասում այնքան ռազմական կոնֆլիկտներ տեղի չեն ունեցել, որքան Ասիայում: Դրանց հրահրողները արևմտյան գաղութարարներն են, որոնք ամեն գնով ձգտում էին պաշտպանել իրենց գաղութային տիրապետությունները: Իմպերիալիստները չեն ցանկանում հաշտվել այն բանի հետ, որ այն աշխարհը, ուր նրանք այնքան երկար իշխում էին, հրաժարվում է ծառայել ու ենթարկվել իրենց և լի է վճռականությամբ՝ ընթանալու իր անկախ ուղիով:*

*Վերջին 30 տարում միջազգային իմպերիալիզմն Ասիայի ազատագրված երկրներում իր դիրքերը վերականգնելու համար պատերազմ սանձազերծեց Կորեայում, Վիետնամում, Լաոսում, Մերձավոր ու Միջին Արևելքում, Կամպուչիայում, Կիպրոսում և այլ շրջաններում: Պատերազմի հրդեհը դեռ չի մարել ոչ Միջին և ոչ էլ Մերձավոր Արևելքում:*

*Միջազգային իմպերիալիզմի հանցանքով երրորդ տարին է Իրանի և Իրաքի միջև շարունակվում են արյունահեղ պատերազմական գործողությունները: Սովետական Միությունը ձգտում է, որ այդ երկրների վիճելի հարցերը կարգավորվեն բանակցությունների սեղանի շուրջը: ՍՍՀՄ-ը ցանկանում է աշխարհի այդ ռեգիոնում ստեղծել նորմալ, հանգիստ իրադրություն: Այդ նպատակով նա առաջադրել է խաղաղության և անվտանգության իր դոկտրինան և հանդես եկել կարևոր խաղաղասիրական նախաձեռնություններով՝ Պարսից ծոցը և Հնդկական օվկիանոսը խաղաղության և անվտանգության գոտու վերածելու համար:*

*ԱՄՆ-ի իմպերիալիզմի հանցանքով 35 տարուց ավելի է, ինչ լարված վիճակ է պահպանվում Մերձավոր Արևելքում: Տարեցտարի մերձավորարևելյան պրոբլեմի կարգավորումն ավելի է բարդանում, Սովետական Միությունը գտնում է, որ Մերձավոր Արևելքում արդարացի խաղաղության հասնելու միայն մեկ ուղի կա՝ Իսրայելի կողմից արաբական բոլոր տերիտորիաներից զորքերի դուրս բերումը, Պաղեստինի 5 միլիոն արաբ ժողովրդի անկապտելի իրավունքների ճանաչումը:*

*Ասիայի ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը ապահովելու նպատակով Սովետական Միությունը դեռևս 1973 թ. առաջ է քաշել Ասիայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու գաղափարը, որտեղ շեշտված է, որ Ասիան կարող է և պետք է ապրի խաղաղության օրենքներով, դրա ռեալ ուղին կոլեկտիվ անվտանգությունն է:*

*Իմպերիալիզմի գաղութային սիստեմին ծանր հարված հասցրին նաև Աֆրիկայի ժողովուրդները: Այստեղ ապրում է 700-ից ավելի լեզուներով խոսող շուրջ 480 միլիոն մարդ: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Աֆրիկայի ժողովուրդների ազատագրական պայքարը նոր թափ ստացավ: Եթե մինչև 1951 թ. Աֆրիկայի քաղաքական քարտեզի վրա ձևականորեն երեք անկախ պետություններ կային (Եգիպտոս, Եթովպիա, Լիբերիա), որոնք սոսկ կղզյակներ էին գաղութատիրության այդ օվկիանոսում, ապա ներկայումս անկախություն է ստացել 50 երկիր:*

*Փշրելով գաղութակալության շղթաները՝ Աֆրիկայի ազատագրված երկրների ժողովուրդները պայքարում են իրենց անկախությունն ամրապնդելու համար, զարգացնում ազգային էկոնոմիկան ու կուլտուրան: Սակայն Աֆրիկայում գաղութային տիրապետության տակ դեռևս մնում են մի քանի մեծ ու փոքր երկրներ, ինչպես Նամիբիան, Արևմտյան Սահարան, Ռեյունիոնը, Սուրբ Հեղինե և Համբարձման կղզիները: Գաղութակալական լծից ազատագրվելու լայն պայքար է ծավալել հատկապես Նամիբիայի ժողովուրդը, որը 60 տարուց ավելի օկուպացվել է հարավաֆրիկյան ռասիստական վարչակարգի կողմից:*

*Գաղութակալության և դիկտատորական լծից ազատագրվելու համար լայն պայքար է ծավալվել նաև Արևմտյան կիսագնդում՝ հատկապես Լատինական Ամերիկայի և Կարիբյան ծովի ավազանում ընկած մեծ ու փոքր երկրներում: Լատինական Ամերիկայում եղել են ազատագրական պայքարի հոյակապ*

թռիչքներ, հերոսական սխրանքներ ու հաղթանակներ։ Եղել են նաև պարտություններ, արյունալի դատաստաններ հայրենասերների և հեղափոխականների նկատմամբ։ Այդ են վկայում վերջին տարիների Չիլիում տեղի ունեցած արյունալի ֆաշիստական հեղաշրջումը, լատինաամերիկյան մի քանի այլ պետություններում ռեակցիայի հարձակումը և այլն։

Ազատության կղզին՝ Կուբայի Սոցիալիստական Հանրապետությունը, ուղենիշ աստղ է դարձել լատինաամերիկյան ժողովուրդների համար։ Ոգևորված Կուբայի ժողովրդի հաղթանակով՝ Արևմտյան կիսագնդում գաղութային լուծը թոթափեցին Տրինիդադը և Տոբագոն, Յամայկան, Գայանան, Բարբադոսը, Բահամյան կղզիները, Դոմինիկան, Գրենադան, Սեն-Վինսենտը, Սենտ-Լուսիը, Սուրինամը, Բելիզը։ 1979 թ. Նիկարագուայում տապալվեց Սոմոսայի ֆաշիստական միապետությունը։ Ներկայումս բռնապետական լծից ազատագրվելու համար համառ պայքար են ծավալել Սալվադորի և Գվատեմալայի ժողովուրդները։ Սակայն Արևմտյան կիսագնդում դեռևս իրենց գաղութներն ունեն Մեծ Բրիտանիան, ԱՄՆ-ը, Ֆրանսիան և Հոլանդիան։

Ազգային-ազատագրական բուռն շարժումներ են սկսվել Օվկիանիայում։ 1962 թ. հունվարի 1-ին այստեղ Խաղաղ օվկիանոսի հազարավոր կղզիներից առաջինը անկախություն և ազատություն ձեռք բերեց Արևմտյան Սամոան։ Արևմտյան Սամոայի ժողովրդի հաղթանակը լուսավոր փարոս եղավ Օվկիանիայի ստրկացված ժողովուրդների համար, որոնք հեծում են անգլիական, ֆրանսիական, ամերիկյան և այլ իմպերիալիստական պետությունների կրնկի տակ։ Երկարամյա և համառ պայքարի շնորհիվ վերջին տարիներին անկախություն ձեռք բերեցին Նաուրուն, Տոնգան, Ֆիջին, Պապուա-Նոր Գվինեան, Քիրիբատին, Տուվալուն, Սողոմոնյան կղզիները։ Սակայն Օվկիանիայի հարյուրավոր կղզիների վրա դեռևս իշխում են արևմտյան գաղութարարները։

Մեր օրերում գաղութային ստրկության ողջ սիստեմի փլուզումն իր պատմական նշանակությամբ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումից հետո, ամենանշանակալի երևույթն է։ Այն առավել խորացրեց կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը։ Այժմ գաղութային լծից ազատագրված երկրների առջև ծառացած են դժվարին խնդիրներ։ Չէ՞ որ նրանք իրենց զարգացմամբ 150—200 տարով ետ են մնացել առաջավոր ինդուստրիալ երկրներից։

Վ. Ի. Լենինը իմպերիալիզմի գաղութային քաղաքականությունը համարում էր «ստրկության, կողոպուտի և բռնության սիստեմ»։ Գաղութարարները անխնա կողոպտում, հալածում ու ճնշում էին իրենց տիրապետության տակ գտնվող ժողովուրդներին, դիզում վիթխարի հարստություններ։ Այժմ էլ ազատագրված շատ երկրներում էկոնոմիկայի վճռական դիրքերը գտնվում են արևմտյան մոնոպոլիստական ընկերությունների ձեռքում, որոնցից նրանք տարեկան ստանում են տասնյակ միլիարդների շահույթ։ Այժմ ազատագրված երիտասարդ երկրների հիմնական խնդիրն է ինտենսիվորեն զարգացնել ազգային էկոնոմիկան և վերջնականապես ազատագրվել իմպերիալիզմի կապանքներից։

«Արդի աշխարհի արմատական հատկանիշներից մեկը...— ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում շեշտեց Յու. Վ. Անդրոպովը,— գաղութային կամ կիսագաղութային կախումից ազատագրված Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների հարաճուն դերն է... Զգտելով տնտեսական հետամնացության հաղթահարման, այդ երկրները միջազգային իրավահավասար համագործակցության, կայուն խաղաղության կարիք ունեն։ Նրանցից շատերը սոցիալիզմի երկրների հետ կապերը համարում են իրենց անկախության ամրապնդման միջոց։ Բնական է, որ մենք այսուհետև էլ կվարենք այդ պետությունների հետ փոխշահավետ համագործակցության կուրս՝ նրանց սուվերենությունը լրիվ հարգելով և նրանց գործերին չմիջամտելով հանդերձ»։

Ազատագրված շատ երկրներում կատարվել ու կատարվում են սոցիալ-տնտեսական խոշոր փոփոխություններ։ Դրանցից մի քանիսը ազատագրումից հետո գնացին հեղափոխական-դեմոկրատական ուղիով։ Այլ երկրներում հաստատվեցին կապիտալիստական հարաբերություններ։ Մի քանիսը վարում են



իսկական անկախ քաղաքականություն, մյուսներն այսօր ընթանում են իմպերիալիզմի քաղաքականության ֆարվատերում։ Վերջին տարիներին աճել է զարգացման սոցիալիստական, հեղափոխական-դեմոկրատական ուղիով ընթացող երկրների թիվը, որոնց մեծ մասի հետ Սովետական Միությունը կնքել է բարեկամության և համագործակցության պայմանագրեր։ ՍՍՀՄ-ը նման պայմանագրեր է կնքել Անգոլայի, Եթովպիայի, Մոզամբիկի, Աֆղանստանի, Եմենի, Սիրիայի, Հնդկաստանի և այլ երկրների հետ։ Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության երկրները բազմակողմանի ու արդյունավետ բարեկամական հարաբերություններ են հաստատել ոչ միայն սոցիալիստական կողմնորոշում ունեցող պետությունների, այլև ազատագրված այն երկրների հետ, որոնք վարում են անկախ քաղաքականություն, պայքարում աշխարհում կայուն խաղաղության ամրապնդման համար։ Զարգացող երկրների հետ Սովետական Միության համագործակցությունը խարսխված է արդարացի և իրավահավասար սկզբունքների վրա։ Դրան են ծառայում առևտուրը և նրանց տնտեսական ու գիտատեխնիկական աջակցություն ցույց տալը՝ արդյունաբերական ու գյուղատնտեսական օբյեկտներ ստեղծելու, ազգային կադրեր պատրաստելու գործում, ինչպես նաև երկարաժամկետ արդյունաբերական կոոպերացման վրա հիմնված համաձայնությունների իրականացումը։

ՍՍՀՄ-ի և զարգացող երկրների միջև տնտեսական կապերի կարևորագույն ձևերից է համագործակցությունը ֆինանսավարկային հարաբերությունների բնագավառում։ ՍՍՀՄ-ը և եղբայրական մյուս սոցիալիստական երկրները խոշոր վարկեր են հատկացրել ազատագրված երկրների տնտեսական զարգացման կարիքների համար, աջակցելով այդ պետություններին՝ դրանց էկոնոմիկայի առաջատար ճյուղերի զարգացման, բնական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման նպատակով։

1982 թվականի սկզբին զարգացող երկրներում միայն ՍՍՀՄ-ի աջակցությամբ կառուցվել և կառուցվում են 25 մլն տոննա մետաղի արտադրության, 60 մլն տոննա նավթի արդյունահանման և 23 մլն տոննա նավթի վերամշակման հզորություն ունեցող ձեռնարկություններ, ընդհանուր առմամբ 19 մլն կվտ կարողությամբ էլեկտրակայաններ, մոտ 5 հազար կմ երկարությամբ երկաթուղիներ և խճուղիներ։

Համագործակցության շրջանակներում մեր երկրում ազատագրված երկրների համար պատրաստվել են տարբեր որակավորման 900 հազար մասնագետներ։ Հատկանշական է, որ այսօր 85-ից ավելի երկրների հազարավոր ուսանողներ ու ասպիրանտներ սովորում են Մոսկվայի Պ. Լումումբայի անվան ժողովուրդների բարեկամության համալսարանում և այլ բուհերում։ Ուրախալի է, որ զարգացող երկրներին Սովետական Միության ցույց տված բազմակողմանի տեխնիկատնտեսական օգնության մեջ իր բաժինն ունի մեր հանրապետությունը՝ Սովետական Հայաստանը։ Երբեմնի տնտեսապես հետամնաց Հայաստանը, որը ներկայումս ունի ատոմային կայան և մետրոպոլիտեն, աշխարհի 80-ից ավելի երկրներին, ինչպես և զարգացած երկրներին, ուղարկում է 180 տեսակի արդյունաբերական ժամանակակից ապրանքներ, այդ թվում՝ ավտոդողեր, շարժական էլեկտրակայաններ, մետաղահատ հաստոցներ, հաշվիչ մեքենաներ և այլն։ Մեր հանրապետության բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում են զարգացող երկրների զգալի թվով ուսանողներ։ Այս փաստերը զարգացող երկրների համար ունեն ոչ միայն տնտեսական նշանակություն, այլև օրինակի մեծ ուժ։

Իմպերիալիստներին, իհարկե, ձեռնտու չեն ազատագրված երկրների անկախության ամրապնդումը, նրանց խաղաղասիրական չեզոք քաղաքականությունը։ Հազարավոր ուղիներով ու եղանակներով նրանք փորձում են իրենց հետ շաղկապել այդ երկրներին, որպեսզի ավելի ազատորեն տնօրինեն նրանց բնական հարստություններն ու ստրատեգիական օբյեկտները, իրենց վերադարձնել ժողովուրդների բախտը տնօրինողների դերը։

Այդ նպատակով, անգլո-ամերիկյան իմպերիալիստները, նրանց դրածոները ստեղծել են տասնյակ ռազմաքաղաքական բլոկներ ու դաշինքներ, այդ

թվում՝ Պանամերիկյան միությունը, Արևմտաեվրոպական դաշինքը, Ամերիկյան պետությունների կազմակերպությունը, Խաղաղ օվկիանոսյան անվտանգության պակտը (ԱՆԶՅՈՒՍ), Խաղաղ օվկիանոսյան խմբավորումը (ԱՆԶՅՈՒԿ), Ասիա-խաղաղօվկիանոսյան խորհուրդը (ԱԶՊԱԿ), Հյուսիս-ատլանտյան բլոկը (ՆԱՏՕ), Հարավ-Արևելաասիական դաշինքը (ՍԵԱՏՕ), Մերձավոր և Միջին Արևելքում կենտրոնական դաշինքը (ՍԵՆՏՕ), Կարիբյան պակտը (ԿԱՏՕ), Նույակ խմբավորումը (ՊԱՏՕ)։ Իհարկե, այդ ռազմական դաշինքների մի մասը քայքայվել է, սակայն ԱՄՆ-ի ռազմատենչ շրջանները ջանում են կազմակերպել ագրեսիվ նոր խմբավորումներ ու բլոկներ։

Զարգացող երկրների ժողովուրդների պայքարը իմպերիալիզմի, նեոգաղութատիրության դեմ մղվող ընդհանուր պայքարի անբաժանելի մասն է։ Դրա հաջողության գրավականն ազատագրված երկրների միասնությունն է, նրանց համագործակցությունը սոցիալիստական ընկերակցության երկրների և ողջ աշխարհի պրոգրեսիվ ուժերի հետ։ «Գաղութատիրության վերացման համար,— «ՍՍՀՄ վաթսուն տարին» զեկուցման մեջ շեշտեց Յու. Վ. Անդրոպովը,— Սովետական Միության ակտիվ ու վճռական պայքարը, ժողովուրդների ազատագրության և իրավահավասարության գործի անշեղ պաշտպանությունը դյուրացնում է նրանց ազատության և առաջադիմության ուղին։ Այս մասին լավ գիտեն Ասիայի և Աֆրիկայի, արաբական արևելքի և Լատինական Ամերիկայի ժողովուրդները»։

Իմպերիալիզմի գաղութային լծից ազատագրված երկրները դեռևս 1950-ական թվականներին որոշեցին միավորել իրենց ուժերը, հիմնելով չմիացած (ոչ մի բլոկի ու դաշինքի մեջ չմտած) երկրների կազմակերպություն, որի կորիզը հանդիսացան 1955 թ. Բանդունգում կայացած Ասիայի ու Աֆրիկայի երկրների կոնֆերանսի մասնակիցները։ Այդ շարժման պիոներները եղան Ջ. Ներուն, Գ. Ա. Նասերը և Ի. Բ. Տիտոն։

Ի՞նչ է ներկայացնում իրենից արդիականության այդ ամենաազդեցիկ ուժերից մեկը, որո՞նք են դրա նպատակները։ Չմիանալու շարժումը ծնվեց գաղութակալության կայսրությունների փլատակների վրա, միավորելով անկախություն ձեռք բերած համարյա բոլոր երկրներին։ 1961 թվականի սեպտեմբերին Բելգրադում հրավիրվեց չմիացած պետությունների ու կառավարությունների բարձր մակարդակի առաջին կոնֆերանսը, որին մասնակցում էին 25 երկրների ներկայացուցիչներ։ Այստեղ ջերմ հավանության արժանացան Ասիայի և Աֆրիկայի երկրների 1955 թ. Բանդունգի կոնֆերանսում ընդունված «Պանչա Շիլիայի» հինգ սկզբունքները։ Այն ներառում է լիակատար իրավահավասարությունը, անկախությունը, տերիտորիալ ամբողջականության և ազգային սուվերենության փոխադարձ հարգանքը, միմյանց գործերին չմիջամտելը, խաղաղ գոյակցությունը։ Այստեղ որոշվեց նաև լայն պայքար ծավալել գաղութային սիստեմի վերացման, աշխարհում կայուն խաղաղություն հաստատելու համար։ Չմիացած պետությունների ու կառավարությունների երկրորդ կոնֆերանսը տեղի ունեցավ 1964 թ. հոկտեմբերին Կահիրեում, որին մասնակցում էին 47 երկրներ, երրորդը՝ 1970 թ. սեպտեմբերին Լուսակայում (Զամբիա), մասնակցում էր 47 երկիր, չորրորդը՝ 1973 թվականի սեպտեմբերին Ալժիրում, մասնակցում էր 76 երկիր, հինգերորդը՝ 1976 թ. նոյեմբերին՝ Կոլոմբոյում (Շրի Լանկա), մասնակցում էր 86 երկիր, վեցերորդը՝ 1979 թ. սեպտեմբերին Հավանայում (Կուբա), այստեղ արդեն մասնակցում էր 94 երկիր։ Ինչպես տեսնում ենք, տարեցտարի ոչ միայն ավելացել է միջազգային այդ համաժողովի անդամների թիվը, այլև հետզհետե մեծացել նրա դերն ու հեղինակությունը խաղաղասեր ժողովուրդների աչքում։

1983 թվականի մարտի 7—11-ը Դելիի «Վիգյան Բհավանում» («Գիտության պալատ») գումարվեց չմիացած երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարների յոթերորդ կոնֆերանսը, որի աշխատանքներին մասնակցում էին 101 երկրի պատվիրակներ (ՄԱԿ-ի 157 անդամ երկրներից)։ Եվ իզուր չէր, որ շատ մեկնաբաններ այդ մեծ ֆորումն անվանեցին փոքր ՄԱԿ։

Միջազգային համաժողովի նախագահի էստաֆետը Ֆիդել Կաստրոյից



ընդունեց Հնդկաստանի պրեմիեր մինիստր Ինդիրա Գանդին։ Ընտրվեցին նախագահի 22 տեղակալներ, 8-ական՝ աֆրիկյան և ասիական, 4-ը՝ լատինաամերիկյան, 2-ը՝ եվրոպական երկրներից։ Առաջին անգամ նախագահի տեղակալներ ընտրվեցին Պաղեստինի ազատագրման-կազմակերպության գործկոմի նախագահ Յասիր Արաֆաթը և Հարավ-արևմտյան Աֆրիկայի (Նամիբիա) ժողովրդական կազմակերպության պրեզիդենտ Սեմ Նույոմանը։ Համաժողովին մասնակցում էր ՄԱԿ-ի գլխավոր քարտուղար Խավեր Պերես դե Կուելյարը։

«Միջազգային իրադրության բարելավման օգտին ծառայող կարևոր գործոն»—Վարշավայի պայմանագրի մասնակիցներն այսպես են բնութագրել չմիանալու շարժումը Պրագայի իրենց ընդունած քաղաքական դեկլարացիայում։ Սոցիալիզմի, ինչպես նաև չմիացած երկրները, այժմ առանձնակի վճռականությամբ են հանդես գալիս խաղաղության ու զինաթափման օգտին, քանի որ ռազմատենչ իմպերիալիստական շրջանները ձգնում են մարդկությանը մղել դեպի միջուկային աղետ տանող ուղին։ Դելիի համաժողովը հաստատեց, որ չմիանալու քաղաքականության էությունը եղել և մնում է պայքարն ընդդեմ իմպերիալիզմի, գաղութատիրության և նեոգաղութատիրության, ընդդեմ ապարտեիդի, ռասիզմի և սիոնիզմի, ընդդեմ ագրեսիայի բոլոր ձևերի։ Կոնֆերանսի քաղաքական դեկլարացիան պահանջում է անհապաղ արգելել միջուկային զենքի գործադրումը և դրա գործադրման սպառնալիքը, սառեցնել միջուկային սպառազինությունների արտադրությունը, կուտակումը և ծավալումը։ Չմիացած երկրները, ընդգծված է այդ փաստաթղթում, մերժում են սահմանափակ միջուկային պատերազմի բոլոր տեսությունները և կոնցեպցիաները։ Այո, «այսօր բոլոր ջանքերը պետք է ուղղված լինեն մի բանի՝ միջուկային աղետի կանխմանը»,— վերջերս «Պրավդա» թերթի թղթակցի հարցերին տված պատասխանում շեշտեց Յու. Վ. Անդրոպովը։ Միջազգային իմպերիալիզմի մեղքով, նշվեց կոնֆերանսում, տարեցտարի աճել և աճում են ռազմական ծախսերը։ Եթե 1975 թ. աշխարհում ռազմական նպատակներով ծախսվել է 300 մլրդ դոլար, ապա 1982 թ. այն հասավ 650 մլրդ դոլարի, որի 65—70 տոկոսը բաժին է ընկնում ԱՄՆ-ին և նրա դաշնակիցներին։ Հռետորները նշում էին, որ սպառազինությունների մրցավազքը հասցրել է նրան, որ այսօր աշխարհում կուտակվել է 60 հազար մեգատոն տրինիտրոտոլուոլի խտությանը հավասար մահաբեր զենք կամ 10 հազար անգամ ավելի, քան գործարկվել է ամբողջ II համաշխարհային պատերազմի տարիներին։ Սպառազինությունների անզուսպ մրցավազքը կլանում է նաև հսկայական նյութական միջոցներ, երբ չմիացած և զարգացող երկրներում մեկ մլրդ մարդ ապրում է ծայրահեղ աղքատության մեջ, ամեն օր սովամահ են լինում 43 հազար երեխաներ։ Այդ երկրներում հաշվվում է 500 մլն գործազուրկ և կիսագործազուրկ, 800 մլն մարդու տարեկան եկամուտը 150 դոլարից չի անցնում, 814 մլն մարդ անգրագետ է, 900 միլիոնն էլ զրկված է բժշկական օգնություն ստանալու հնարավորությունից։

Ֆիդել Կաստրոն իր զեկուցման մեջ շեշտեց, որ տարեցտարի կրճատվում է զարգացող շատ երկրների արդյունաբերության արտադրանքը։ Եթե 1970 թ. զարգացող երկրների նավթի հանույթի աճը տարեկան կազմում էր 5—6, ապա 1982 թ.՝ 1,3 տոկոս։ Միջազգային շուկայում ընկել են այդ երկրների արտադրած սննդամթերքների և այլ ապրանքների գները։ Միայն 1980—82 թթ. նավթ արտադրող երկրների նավթից ստացված եկամուտը պակասել է 29 մլրդ դոլարով։ Սակայն տարեցտարի աճում է արևմտյան մոնոպոլիստական ընկերությունների եկամուտը։ 1970—1979 թթ. երրորդ աշխարհի երկրներում ԱՄՆ-ի կապիտալ ներդրումները կազմում էին 11 մլրդ 448 մլն դոլար, որի դիմաց նա ստացել է 48 մլրդ 663 մլն դոլարի շահույթ։

Կոնֆերանսում քննադատության կրակի տակ դրվեց միջազգային իմպերիալիզմը նաև այն բանի համար, որ այն մինչև օրս թալանում է մի շարք չմիացած երկրների բնական հարստությունները։ Ներկայումս համաշխարհային կապիտալիստական շուկայում ստացվող նավթի 94 տոկոսը, երկաթահանքի՝ 45, պղնձի՝ 57, բոքսիտների 55 տոկոսն ու արդյունաբերական հումքի այլ տեսակների զգալի մասը տալիս են զարգացող երկրները։ Ավելին, ԱՄՆ-ը

մարգանեցի իր պահանջարկի 97 տոկոսը, կոբալտի՝ 95, բոքսիտների՝ 93, խրոմի՝ 96 տոկոսը էժան գներով ներմուծում է զարգացող և չմիացած երկրներից։

Միջազգային իմպերիալիզմի թալանչիական քաղաքականության հետևանքով է, որ տարեցտարի ավելանում է նաև չմիացած երկրների արտաքին պարտքը։ Եթե 1955 թ. այն կազմում էր 6 մլրդ, 1970 թ.՝ 75, ապա 1982 թվականին այն հասավ 626 մլրդ դոլարի։ Կոնֆերանսի ամբիոնից արդարացիորեն նշվեց, որ «առանց խաղաղության զարգացման՝ մեր բոլոր իղձերը հողմացրիվ կլինեն»։ Ամերիկյան միայն մեկ միջուկային ավիակիրն արժե 4 մլրդ դոլար, որը գերազանցում է Դելիի համաժողովի մասնակից երկրների ավելի քան կեսի՝ 53 պետությունների համախառն ազգային արտադրանքի արժեքը։

Վերջերս Վաշինգտոնում ցուցադրական հանդիսավորությամբ հռչակվեց «Դեմոկրատիայի և հրապարակային դիվանագիտության ծրագիրը»։ Դրա էությունն այն է, որ ԱՄՆ-ը փորձում է «դեմոկրատիայի պաշտպանության» պատրվակով իրեն իրավունք վերապահել է՛լ ավելի ուժեղացնելու միջամտությունը ուրիշ պետությունների, առաջին հերթին զարգացող պետությունների գործերին և մնացած աշխարհին պարտադրել ամերիկյան կարգեր։ Կոմունիզմի դեմ «խաչակրաց արշավանքը», որն անցած տարվա ամռանը հռչակեց ԱՄՆ-ի պրեզիդենտն իր լոնդոնյան ճառում, այժմ պատկերացվում է որպես արշավանք բոլոր նրանց դեմ, ովքեր չեն համաձայնում Վաշինգտոնի կողմից պարտադրվող թելադրանքի և կամայականության քաղաքականությանը։

Դելիի կոնֆերանսում նշվեց, որ չմիացած երկրների հակաիմպերիալիստական քաղաքականությունը հարուցել ու հարուցում է միջազգային իմպերիալիզմի դժգոհությունը։ Ռեյգանը գործադրեց բոլոր հնարավոր միջոցները, որպեսզի վիժեցներ Դելիի կոնֆերանսը, պառակտեր չմիանալու շարժման և մյուս հակաիմպերիալիստական ուժերը, տարանջատեր այն և թշնամանք սերմաներ այդ շարժման մասնակից երկրների միջև։ Այդ նպատակով գործի անցան պետական քարտուղարի տեղակալ Լ. Իգլբերգերը, պետական քարտուղարի օգնական Ջ. Նյուեըը և մի խումբ այլ դիվանագետներ, այդ թվում՝ ՄԱԿ-ում ԱՄՆ-ի մշտական ներկայացուցիչ Ջին Կիրկպատրիկի աշխատակցուհի, «չմիանալու շարժման մասնագետ» Սյուզան Ջոնսոնը։ Նրանք ձգտում էին նաև կոնֆերանսին պարտադրել Աֆղանստանի և Կամպուչիայի մտացածին «պրոբլեմների» քննարկումը։ Հակառակ չմիանալու շարժման ոչ միատարրությանը, նրա մասնակիցները միաձույլ կամք ցուցադրեցին և ձախողեցին ամերիկյան իմպերիալիզմի չարագույժ պլանները։

Չմիացած երկրների ու պետությունների պատվիրակները խիստ քննադատեցին ԱՄՆ-ին և նրա դաշնակիցներին նաև այն բանի համար, որ ագրեսիվ բլոկների, հատկապես ՆԱՏՕ-ի օգնությամբ, վերջին 34 տարում 185 անգամ պատերազմ է սանձազերծվել կամ զենքի ուժով խեղդվել են չմիացած ու զարգացող երկրների ազատագրական շարժումները։ Ներկայումս էլ ԱՄՆ-ը ուզում է արյան մեջ խեղդել Նիկարագուայի, Սալվադորի, Գվատեմալայի, Գրենադայի և այլ երկրների ազգային-հայրենասիրական պայքարը։

Պենտագոնի ռազմատենչ քաղաքականությունը քննադատվեց նաև այն բանի համար, որ պլանավորվել է առաջիկայում Հարավային Ատլանտիկայում ստեղծել Հարավատլանտյան մի նոր բլոկ (ՍԱՏՕ), որի կազմի մեջ, բացի Հարավային Ամերիկայի հետադիմական վարչակարգերից, պետք է մտնի նաև ռասիստական Հարավաֆրիկյան Հանրապետությունը։

Ավելին, Ասիայի և Աֆրիկայի երկրները Ամերիկայի Միացյալ Նահանգներին խիստ քննադատեցին այն բանի համար, որ, «սովետական ռազմական սպառնալիքից» պաշտպանվելու պատրվակով, Պենտագոնը օրեցօր ընդլայնում է իր ռազմական ուժերի ներկայությունը աշխարհի տարբեր շրջաններում։ Ավելորդ չէ հիշել, որ եթե 1933 թվականին ամերիկյան զորքեր կային 3 օտարերկրյա պետությունների տերիտորիաներում, ապա ներկայումս՝ 60-ից ավելի երկրներում։ Դրանք հիմնականում տեղաբաշխված են սոցիալիստական երկրների սահմաններին մոտ և այն շրջաններում, որտեղ պայքար է մղվում հանուն ազատության ու ազգային անկախության։



Պենտագոնի որոշմամբ 1983 թ. սկզբին ստեղծվեց, այսպես կոչված, ԱՄՆ-ի կենտրոնական հրամանատարությունը (Սենտկոմ), որի գործողության ոլորտը տարածվում է Ասիայի և Աֆրիկայի 19 պետությունների՝ Հնդկական օվկիանոսի ավազանի հյուսիսային մասի, Կարմիր ծովի և Պարսից ծոցի վրա։ Այդ ինտերվենցիոնիստական հրամանատարության «տեսադաշտում» են գտնվելու Աֆղանստանը, Պակիստանը, Իրանը, Իրաքը, Բահրեյնը, Քուվեյթը, Միացյալ Արաբական էմիրաթները, Քաթարը, Սաուդյան Արաբիան, Օմանը, Եմենի Արաբական Հանրապետությունը, Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետությունը, Սոմալին, Եթովպիան, Սուդանը, Քենիան, Ջիբութին, Եգիպտոսը և Հորդանանը։ ԱՄՆ-ը արդեն այստեղ է տեղաբաշխել 250 հազարից ավելի «արագ ծավալման ուժեր»։ Ժամանակակից գաղութարարների քաղաքականության այդ գործիքը ամեն րոպե պատրաստ է կատարելու ժանդարմի դեր՝ ներխուժելու ուրիշի տերիտորիաներ, ճնշելու ազգային-ազատագրական շարժումները։ Դելիի մեծ համաժողովում արձանագրվեց, որ միջազգային մթնոլորտի բարելավմանը կնպաստեին Հնդկական օվկիանոսը խաղաղության գոտի դարձնելը, Մերձավոր Արևելքում արդարացի, կայուն և համապարփակ կարգավորման հասնելը, Պաղեստինի ժողովրդի օրինական իրավունքների վերականգնումը։ Միևնույն ժամանակ պահանջ ներկայացվեց խաղաղ կերպով լուծելու Հարավարևելյան Ասիայի, Կարիբյան ավազանի, Կենտրոնական Ամերիկայի, Աֆրիկայի Հարավի կոնֆլիկտները, Նամիբիայի անկախության հռչակումը։

Չմիացած երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարների Դելիի կոնֆերանսը լուրջ նշանակություն ունի մարդկության առջև ծառացած ամենակարևոր պրոբլեմների՝ խաղաղության ապահովման, զինաթափման, լարվածության թուլացման պրոցեսի ամրապնդման և աշխարհի բոլոր շրջանների վրա դրա տարածման, արդարացի դեմոկրատական հիմքի վրա միջազգային տնտեսական հարաբերությունների վերակառուցման առումով։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները հավուր պատշաճի են գնահատում չմիացած երկրների դիրքորոշումը, որոնցից շատերի հետ մեր երկիրն ունի բազմակողմանի բարեկամական կապեր։ «Մենք հարգանքով ենք վերաբերվում չմիանալու շարժմանը,— «ՍՍՀՄ 60 տարին» զեկուցման մեջ շեշտեց Յու. Վ. Անդրոպովը,— որի խաղաղասիրական քաղաքականությունը օգտակար ավանդ է մուծում միջազգային կյանքում»։

# ՓՈՓՈԽՎՈՂ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՂ ՏԻԵԶԵՐՔԸ

(ԱԿԱԴԵՄԻԿՈՍ ՎԻԿՏՈՐ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 75-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Լ. Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
Աստղագնացության միջազգային ակադեմիայի թղթակից-անդամ

*ԱՆՑՅԱԼ ԴԱՐՈՒՄ ՊԱՐԶՎԵՑ, որ Արեգակը՝ Երկրագնդի վրա գոյություն ունեցող կյանքի աղբյուրը, մի շարքային աստղ է։ Այն շուրջ հարյուր միլիարդ այլ աստղերի հետ միասին մտնում է մեր աստղային համակարգի՝ Գալակտիկայի (մեծատառով) կազմի մեջ։ Այդ հսկայական համակարգը կազմված է Ծիր Կաթնի պայծառ շերտի ձևով միաձուլված, ինչպես նաև անզեն աչքով և աստղադիտակներով դիտվող բոլոր աստղերից, բազմաթիվ գազափոշային միգամածություններից և միջաստղային տարածությունը լցնող շատ նոսր գազից ու փոշուց։*

*Մի ժամանակ թվում էր, թե աստղագիտական Տիեզերքի սահմանները հենց Գալակտիկայով էլ սահմանափակվում են։*

*Սակայն մեր դարի 20-ական թվականներին հայտնի դարձավ, որ մեր շրջակա տարածության մեջ կան Գալակտիկայի տիպի այլ աստղային համակարգեր՝ գալակտիկաներ (փոքրատառով)։ Շուտով պարզվեց, որ մեր Գալակտիկան, իր չափերով և բաղադրությամբ այդ տիպի սովորական աստղային համակարգ է։ Գոյություն ունեն նրանից ավելի մեծ և հարուստ շատ գալակտիկաներ։ Զգալիորեն ավելի բազմաքանակ են նրանից փոքր և ավելի քիչ աստղերից կազմված գալակտիկաները։ Ներկայումս արդեն ժամանակակից խոշորագույն աստղադիտակների համար մատչելի գալակտիկաների թիվը հասնում է միլիարդների։*

*Աստղագիտական դիտումների հնարավորությունների արագ աճը, 1609 թ. Գալիլեո Գալիլեյի առաջին աստղադիտակի ստեղծումից հետո, հանգեցրեց աստղագիտական դիտումների համար մատչելի ծավալի աներևակայելի ընդարձակման։ Բավական է հիշատակել, որ լույսը, որի տարածման արագությունը 300.000* կմ *է մեկ վայրկյանում, Արեգակից մեզ է հասնում մոտ* 8 րոպեում, *իսկ Արեգակնային համակարգության ամենահեռավոր Պլուտոն մոլորակին՝* 5 ժամում, *մինչդեռ Գալակտիկայի տրամագիծն այն կտրում է շուրջ* **100.000** տարում, *իսկ ժամանակակից հզոր աստղադիտակներով կարելի է դիտել գալակտիկաներ, որոնց լույսը մեզ է հասնում ավելի քան* տասը միլիարդ տարում։

*Ձևայած աստղագիտական դիտումների համար մատչելի ծավալի այդպիսի հսկայական աճին, Տիեզերքի, մասնավորապես Գալակտիկայի, անփոփոխության վերաբերյալ «ստատիկական» պատկերացումը դեռ երկար ժամանակ շարունակում էր իշխել գիտության մեջ։ Ընդունվում էր, որ աստղերը, գալակտիկաները և, ընդհանրապես, բոլոր երկնային մարմինները, ձևավորվել են շատ հեռավոր անցյալում, միլիարդավոր տարիներ առաջ, և ներկայումս «ապրում» են իրենց հանգիստ ծերությունը։ Այլ կերպ ասած, համարվում էր, թե Տիեզերքը անփոփոխ, «քարացած» մի ամբողջություն է, որի առաջացման ու զարգացման ամենահետաքրքրական փուլերը եղել են հեռավոր անցյալում։*

*Առողջ տրամաբանությունը, մատերիալիստական փիլիսոփայությունը չէին հաշտվում այդ պատկերացման հետ, սակայն այն բացառելու համար չկային լուրջ դիտողական փաստեր։*

*Աստղագիտության բուռն զարգացումն օգնեց հաղթահարելու այդ հակասությունը։*

*Արդեն XX դարի սկզբում բացահայտվեց, որ նոր աստղերի բռնկումների ժամանակ, նրանց արտաքին շերտերից գազային նյութի դուրս շպրտման հետևանքով, այդ աստղերի շուրջն առաջանում են ոչ մեծ լայնացող գազային թաղանթներ— միգամածություններ։*

*Ավելի ուշ, մեր դարի 30-ական թվականներին պարզվեց, որ աստղերի վիճակներում էական և անշրջելի փոփոխություններ են առաջացնում ո՛չ միայն նման բռնկումները, այլ նաև ուրիշ, նախկինում կայուն համարվող, երևույթներ։ Մասնավորապես ցույց տրվեց, որ մոլորակաձև միգամածությունները, որոնց լուսարձակումը պայմանավորված է դրանց կենտրոնում գտնվող աստղերի ճառագայթմամբ, նոր աստղերի գազային թաղանթների նման, գոյավորվում են այդ աստղերից արտավիժված նյութից։ Շուտով հայտնաբերվեց մոլորակաձև միգամածությունների լայնացման երևույթը, որը հաստատում էր այդ կարևոր եզրակացությունը։*

*Այնուհետև պարզվեց, որ բաց աստղակույտերի աստղերը փոխազդեցության հետևանքով, նրանց պատահական մերձեցումների ժամանակ, պետք է աստիճանաբար հեռանան մայր-աստղակույտից, այսինքն՝ աստղակույտը պետք է «գոլորշիանա»։ Ինչպես ցույց են տալիս հաշվումները, այդ պրոցեսը պետք է անխուսափելիորեն հանգեցնի աստղակույտերի լրիվ քայքայմանն՝ ընդամենը հարյուրավոր, իսկ նրանց մի մասինը՝ նույնիսկ տասնյակ միլիոնավոր տարիների ընթացքում։*

*Կրկնակի աստղերի դեպքում նման քննարկումը բերեց անսպասելի այն արդյունքին, որ Գալակտիկայում աստղազույգերի քայքայման երևույթները, աստղերի հետ նրանց պատահական մերձեցումների հետևանքով, էապես գերակշռում են աստղերի պատահական հանդիպումների ժամանակ նոր զույգերի առաջացման պրոցեսներին։*

*Վերոհիշյալ փաստերը մատնանշում էին, որ* մեր Գալակտիկայում տեղի ունեցող պրոցեսների համար բնորոշ ընդհանուր ուղղությունը համապատասխանում է տրոհման և ցրման պրոցեսներին: *Ընդ որում այդ երևույթների ուսումնասիրությունը ցույց տվեց, հակառակ մինչ այդ գիտության մեջ ընդունված պատկերացման, որ մեր Գալակտիկայում ներկայումս ընթանում են տիեզերական մարմինների և նրանց համակարգերի վիճակի բուռն, հաճախ շատ արագ ու անդառնալի փոփոխություններ։*

*Սակայն վճռական ճեղքվածքը Գալակտիկայի անփոփոխության վերաբերյալ անխորտակելի թվացող և երկար ժամանակ իշխող պատկերացման հիմքում բացվեց 1947 թ., երբ հայտնագործվեցին* աստղասփյուռները *(այլ լեզուներով՝ աստղային ասոցիացիաները), նոր տիպի աստղային այն համակարգերը, որտեղ ներկայումս ընթանում են աստղառաջացման ակտիվ պրոցեսներ։ Այդ հայտնագործությունը, որը բերեց դիտողական փաստերի վրա հիմնվող, գիտության մեջ առաջին վկայությունը՝ Գալակտիկայում նրա զարգացման արդի փուլում շարունակվող աստղառաջացման վերաբերյալ, ճակատագրական եղավ հիշյալ պատկերացման համար։*

*Աստղասփյուռները միատեսակ ֆիզիկական հատկություններ ունեցող աստղերի խմբեր են։ Նրանց բնորոշ աստղային բնակչությունը կազմված է* O *և* B *տիպերի ջերմ հսկա ու գերհսկա աստղերից (*O*-աստղասփյուռներ) կամ* T *Ցուլի տիպի փոփոխական աստղերից (*T*-աստղասփյուռներ)*[1]*։ Այդ աստղերը*

---

[1] *Որոշ* O*-աստղասփյուռներ պարունակում են* T*-աստղասփյուռներ (*O+T*-աստղասփյուռներ)։*

հանդիպում են գերազանցապես աստղասփյուռներում և համարյա բացակայում են Գալակտիկայի ընդհանուր աստղային դաշտում: Տարածական բաշխման հենց այդ առանձնահատկությունն էլ հիմք ծառայեց աստղասփյուռների հայտնագործման համար:

Աստղասփյուռները, որպես աստղերի ֆիզիկական խմբեր, դինամիկական տեսակետից անկայուն են:

Աստղերի ցածր տարածական խտության պատճառով նրանց միջև գործող ձգողական ուժերը աստղասփյուռներում փոքր են և ի վիճակի չեն աստղերն իրար մոտ պահելու: Դրա հետևանքով աստղասփյուռի աստղերը, Գալակտիկայի ձգողական դաշտի մակընթացային ուժերի ազդեցության տակ, կարճ ժամանակի ընթացքում իրարից պետք է հեռանան: Այդ պրոցեսը պետք է հանգեցնի աստղափյուռի աստիճանական քայքայման: Այս դատողություններն էին ընկած աստղասփյուռների լայնացման երևույթի կանխատեսության հիմքում:

Աստղասփյուռների լայնացման միջին արագության գնահատականը՝ 5—10 կմ/վ, վկայում էր, որ որևէ աստղասփյուռի լրիվ քայքայման համար անհրաժեշտ ժամանակամիջոցը չի անցնում մի քանի տասնյակ միլիոն տարուց:

Քանի որ այդ ժամանակամիջոցը շատ փոքր է Գալակտիկայի տարիքից (մոտ 10 միլիարդ տարի), ապա այդ փաստը վկայում է աստղասփյուռների երիտասարդության մասին. նրանք ձևավորվել են համեմատաբար վերջերս: Ընդ որում շատ երիտասարդ են նաև աստղասփյուռներում գտնվող աստղերը:

Աստղասփյուռների և նրանց կազմում գտնվող աստղերի երիտասարդությունից հետևում է, որ Գալակտիկայում աստղառաջացման երևույթները ներկայումս շարունակվում են, իսկ աստղափյուներն այն օջախներն են, որտեղ ներկայումս ձևավորվում են աստղերը:

Աստղասփյուռների հայտնագործման շնորհիվ ստացված այս եզրակացությունները սկզբունքային նշանակություն ունեն ինչպես աստղերի առաջացման ու էվոլյուցիայի պրոբլեմի համար, նույնպես և Գալակտիկայում երկար ժամանակ բացառվող բուռն անկայունության տարբեր բնույթի դրսևորումների բացահայտման առումով: Բնականաբար նրանք հարուցեցին նոր հետազոտություններ աստղասփյուռների, մասնավորապես նրանց դինամիկական անկայունության ուսումնասիրության ասպարեզում:

Աստղասփյուռների լայնացման վերաբերյալ տեսական կանխատեսության առաջին դիտողական հաստատումն արդեն 1952 թ. ստացավ հոլանդացի աստղագետ Ադրիան Բլաաուն, Պերսեոս II O-աստղասփյուռի աստղերի տեսանելի շարժումների ուսումնասիրությունից: Հետագայում ստացվեցին մի քանի այլ մոտակա աստղասփյուռների լայնացման վկայություններ, որոնք նույնպես հիմնվում էին աստղերի տեսանելի շարժումների ուսումնասիրության վրա:

Համեմատաբար հեռավոր աստղասփյուռների աստղերի, այդ խմբերի լայնացմամբ պայմանավորված, դիտվող-տեսանելի շարժումները գտնվում են չափման սխալների սահմաններում (հաճախ ավելի փոքր են): Ուստի նրանց լայնացման ուսումնասիրության համար օգտագործվում են աստղերի տարածական շարժումների բաղադրիչները տեսագծի ուղղությամբ[1]:

Լայնացող աստղասփյուռների դեպքում աստղերի տեսագծային արագությունները պետք է կանոնավոր կերպով աճեն, ըստ բացարձակ մեծության, աստղասփյուռի կենտրոնից հեռանալիս: Աստղերի սպեկտրալ դիտումների արդյունքները ցույց են տալիս, որ աստղասփյուռներում, իրոք, աստղերի բացարձակ տեսագծային արագությունները, որոնք ուղիղ համեմատական են նրանց տարածական արագություններին, աճում են աստղասփյուռի կենտրոնից հեռանալիս: Աստղերի արագության և աստղասփյուռի կենտրոնից նրանց ունեցած հեռավորության կապը, Պերսեոս I աստղասփյուռի դեպքում, բերված է նկ. 1-ում: Ընդհանուր դեպքում, նույն բնույթի կապ (աստղերի տարածական

[1] Այդ, այսպես կոչված՝ տեսագծային արագությունները չափվում են աստղերի սպեկտրներում դիտվող գծերի նկատմամբ Դոպլերի օրենքի կիրառությամբ: Նրանք գործնականում կախված չեն հեռավորությունից:



արագությունների (կմ/վ) և մայրական կորիզներից նրանց ունեցած հեռավորությունների (պարսեկներ)[1] միջև) գոյություն ունի ջերմ հսկա և գերհսկա աստղերի բազմության համար, աստղեր, որոնք կազմում են O-աստղասփյուռների բնորոշ բնակչությունը:




Նկ. 1. Պերսեոս I աստղասփյուռում աստղերի տարածական արագության աճը աստղասփյուռի կորիզից նրանց ունեցած հեռավորության հետ աստղասփյուռի լայնացման ապացույց է:

Աստղասփյուռների կառուցվածքի ուսումնասիրությունը հնարավորություն է ընձեռել բացահայտելու նրանց կազմում գտնվող բազմակի աստղերի մի նոր դաս՝ Օրիոնի Տրապեցիայի տիպի կամ ուղղակի Տրապեցիայի տիպի բազմաստղերը[2], իրենց յուրահատուկ կառուցվածքի պատճառով, դինամիկական տեսակետից խիստ անկայուն են, որի հետևանքով նրանց կյանքի տևողությունը շատ կարճ է: Նրանք պետք է քայքայվեն մայրական աստղասփյուռներից զգալիորեն ավելի արագ, երբեմն ընդամենը մի քանի հարյուր հազար տարում: Տրապեցիայի տիպի բազմաստղերի հայտնագործումը Գալակտիկայում դինամիկական բնույթի ուժեղ անկայունության գոյության մի նոր հաստատում էր:

Երիտասարդ աստղերի մոտ դիտվում են նաև ֆիզիկական բնույթի անկայունության տարբեր դրսևորումներ: Այսպես, օրինակ, Վոլֆ-Ռայե տիպի[3] ջերմ հսկա աստղերը, որոնք շատ հաճախ մտնում են O-աստղասփյուռների կազմի մեջ, շռայլորեն դուրս են նետում իրենց աստղանյութը շրջակա տարածության մեջ, անընդհատ արտահոսքի ձևով: Հաշվումները ցույց են տալիս, որ դրա հետևանքով նյութի անընդհատ ծախսն այնքան մեծ է, որ կհանգեցնի աստղի

[1] Պարսեկ—աստղագիտության մեջ հեռավորություններ չափելու միավոր: Մեկ պարսեկը հավասար է շուրջ $3 \times 10^{13}$ կմ (30 միլիոն անգամ միլիոն կմ):

[2] Նրանք այդպես են կոչվում իրենց նախատիպի Օրիոնի համաստեղության մեջ դիտվող Ֆրապեցիայի բազմաստղի անունով:

[3] Այդպես են կոչվում իրենց առաջին հետազոտողների՝ ֆրանսիացի աստղագետներ Վոլֆի և Ռայեի անունով:

ամբողջ զանգվածի սպառմանն ընդամենը մի քանի միլիոն տարում: Ֆիզիկական անկայունության մի այլ դրսևորում է ջերմ հսկա և գերհսկա աստղերի հզոր ճառագայթման հետևանքով նրանց զանգվածների անընդհատ և գրեթե նույն կարգի կորուստը: Աստղի ֆիզիկական անկայունությունը որոշ դեպքերում արտահայտվում է ճառագայթման հզորության անկանոն, երբեմն շատ ուժեղ փոփոխությունների ձևով: Այդ բնույթի փոփոխություններ դիտվում են, օրինակ, երիտասարդ T Ցուլի տիպի և բռնկվող աստղերի մոտ[1] (Նկ. 2):




Նկ. 2. Բռնկվող աստղի պայծառության փոփոխությունները բռնկումների հետևանքով: Կետերը համապատասխանում են դիտումներին: Գծագրի վրա նշված հատվածի երկարությունը համապատասխանում է 60 վայրկյանի:

Այսպիսով, աստղաֆիզիկական դիտումները վկայում են նաև այն մասին, որ բոլոր հայտնի դեպքերում աստղերի ու աստղախմբերի առաջացումն ու զարգացումը ուղեկցվում են անկայուն երևույթներով, ինչպես դինամիկական (նոր ձևավորված աստղախմբի լայնացում ու քայքայում), նույնպես և ֆիզիկական (աստղերից նյութի արտավիժում, արտահոսք, պայծառության անկանոն փոփոխություններ և այլն) բնույթի: Այդ փաստի քննարկումը բերել է այն կարևոր եզրակացության, որ էվոլյուցիայի վաղ փուլերում աստղերը և աստղախմբերն օժտված են տարբեր մասշտաբների անկայունությամբ: Այլ կերպ ասած, անկայունությունն օրինաչափ փուլ է տիեզերական մարմինների ու նրանց համակարգերի էվոլյուցիայում:

Աստղասփյուռների ուսումնասիրությունը ո՛չ միայն հնարավորություն ընձեռեց դիտողական տվյալների հիման վրա հայտնաբերելու աստղերի էվոլյուցիայի հիմնական օրինաչափությունները, այլև բացահայտելու անկայուն օբյեկտների հսկայական կարևորությունը տիեզերական մարմինների ու նրանց համակարգերի առաջացման և էվոլյուցիայի հարցերի համար:

Աստղաֆիզիկական դիտումները վկայում են, որ աստղառաջացման երևույթներ և նրանց հետ կապված դինամիկական ու ֆիզիկական բնույթի անկայունություն բնորոշ են նաև ուրիշ գալակտիկաների: Աստղասփյուռներ են հայտնաբերվել բազմաթիվ մոտակա գալակտիկաներում:

Ավելին, մի շարք գալակտիկաներում դիտվում են գերաստղասփյուռներ՝

[1] Այդ աստղերի մասին մանրամասն տե՛ս «Լենինյան ուղիով», 1982 թ., № 5:



աստղասփյուռների բնույթի, սակայն իրենց չափերով ու զանգվածներով նրանց զգալիորեն գերազանցող աստղային համակարգեր: Գերաստղասփյուռները աստղառաջացման շատ ավելի հզոր օջախներ են, որտեղ ներկայումս ձևավորվում են մեծ թվով աստղեր:

Այսպիսով, աստղասփյուռների ու գերաստղասփյուռների գոյությունը գալակտիկաներում վճռական փաստարկ է այն պատկերացման օգտին, որ մեր շրջակա տարածության մեջ, Մետագալակտիկայում[1], մեր ժամանակներում ևս շարունակվում են աստղերի ու աստղային համակարգերի առաջացման ու զարգացման պրոցեսները:

Սկզբունքային նշանակություն ունեցող այդ նոր պատկերացումն իր հետագա զարգացումն ստացավ գալակտիկաների ուսումնասիրությանը նվիրված հետազոտություններում:

Պարզվեց, որ անկայունությունը, ավելի հաճախ և անհամեմատ ավելի մեծ հզորությամբ, հանդիպում է գալակտիկաների աշխարհում: Այսպես, օրինակ, բազմագալակտիկաները՝ մի քանի գալակտիկաներից կազմված ֆիզիկական խմբերը, շատ ավելի հաճախ, քան բազմաստղերի դեպքում, ունեն Տրապեցիայի տիպի կոնֆիգուրացիաներ, որը վկայում է նրանց դինամիկական անկայունության մասին:

Ավելի նշանակալից են գալակտիկաներում ֆիզիկական բնույթի անկայունության դրսևորումները: Այդ զարմանալի երևույթի ուսումնասիրության համար վճռական նշանակություն ունեցավ ռադիոգալակտիկաների հայտնագործումը 1952 թ. ամերիկյան աստղագետներ Վալտեր Բաադեյի և Ռուդոլֆ Մինկովսկու կողմից: Պալոմարի աստղադիտարանի 5 մ տրամագիծ ունեցող աստղադիտակով ստացված լուսանկարների հիման վրա նրանք ապացուցեցին, որ տիեզերական ռադիոճառագայթման մի շարք աղբյուրներ կապված են գալակտիկաների հետ: Հաշվումները ցույց տվեցին, որ գալակտիկաների հետ կապված այդ ռադիոճառագայթումն իր հզորությամբ չի զիջում, իսկ երբեմն գերազանցում է այդ գալակտիկաների օպտիկական ճառագայթմանը: Պարզվեց, որ այդ, այսպես կոչված, ռադիոգալակտիկաների լուսանկարների վրա երևում է, որ նրանց կառուցվածքում միշտ առկա է երկրորդ բաղադրիչը: Կույս A ռադիոգալակտիկայի դեպքում այն կենտրոնից դուրս շպրտված մի շիթ է (Նկ. 3), Կենտավրոս A-ի դեպքում՝ մի երկրորդ գալակտիկա (Նկ. 4), Կարապ A-ի դեպքում՝ գալակտիկան ունի երկու կենտրոնական խտացում՝ կորիզ և այլն:

Այդ փաստը Բաադեյի և Մինկովսկու համար հիմք ծառայեց առաջ քաշելու այն վարկածը, որ ռադիոգալակտիկաները երկու գալակտիկաների բախման արդյունք են՝ նրանց հզոր ռադիոճառագայթումը ծնվել է այն բանի հետևանքով, որ բախման էներգիան փոխարկվել է ռադիոճառագայթման:

Հարցի խոր քննարկումը, սակայն, ցույց տվեց այդ շատ գրավիչ բացատրության սնանկ լինելը: Բանն այն է, որ երկու գալակտիկաների պատահական հանդիպման հավանականությունը չնչին է նրանց միջև եղած մեծ հեռավորությունների պատճառով: Այդ հավանականությունը շատ ավելի փոքր է գերհսկա գալակտիկաների համար, որպիսին, ինչպես պարզվեց, ռադիոգալակտիկաներն են: Երկու գալակտիկաների բախման հավանականությունը է՛լ ավելի փոքր է ճակատ առ ճակատ բախումների համար, ինչպիսին պետք է լինի բախումը ռադիոգալակտիկաների դեպքում, դատելով նրանց լուսանկարներից: Ուստի ռադիոգալակտիկաների դիտվող բազմաքանակությունը հնարավոր չէ բացատրել բախումների հետևանքով նրանց առաջացման Բաադեյի և Մինկովսկու վարկածի օգնությամբ: Այն չի համապատասխանում իրականությանը:

Ուստի աստղասփյուռների ուսումնասիրության արդյունքներից ելնելով՝ մշակվեց ռադիոգալակտիկաների մի նոր մեկնաբանություն, որի համաձայն ինչպես հզոր ռադիոճառագայթումը, այնպես էլ նրանց կառուցվածքում դիտ-

[1] Այսպես է կոչվում Տիեզերքի՝ ժամանակակից աստղագիտական դիտումների համար մատչելի մասը:



Նկ. 3. Կույս A ռադիոգալակտիկան։ Լավ երևում է գալակտիկայի կորիզից դուրս շպրտված նյութի շիթը՝ մի քանի խտացումներով, որոնցից ամեն մեկը, իր լուսատվությամբ (ճառագայթման հզորությամբ), համեմատելի է ցածր լուսատվության մի գալակտիկայի հետ։

վող երկրորդ բաղադրիչի առկայությունը հետևանք են այդ գալակտիկաներում ներկայումս տեղի ունեցող անկայուն երևույթների։

Իրենց մասշտաբներով, օրինակ, անջատվող էներգիայի քանակներով և իրենց մեջ գործող զանգվածներով այդ երևույթները տիեզերական անկայունության անհամեմատ շատ ավելի հզոր դրսևորումներ են։

Ռադիոգալակտիկաների ուսումնասիրությունը հնարավորություն ընձեռեց ենթադրելու, որ համապատասխան գալակտիկաների կորիզներում տեղի են ունենում մեծ հզորության պայթյուններ, որի հետևանքով առաջանում են ցրըված նյութի ռադիոճառագայթող մեծ զանգվածներ։ Այլ կերպ ասած, հզոր ռադիոճառագայթման առկայությունը ռադիոգալակտիկաներում կարելի էր դիտել որպես արդյունք նրանց կորիզներում տեղի ունեցող հզոր պայթյունների, որոնք ուղեկցվում են նյութի մեծ զանգվածների արտավիժմամբ։

Գալակտիկաներում անկայուն երևույթների ուսումնասիրության այդ և մի շարք այլ արդյունքներ հանգեցրին գալակտիկաների կորիզների ակտիվության կոնցեպցիայի մշակման։ Նոր կոնցեպցիայի համաձայն, ինչպես ռադիոճառագայթող ամպերի արտանետումները, նույնպես և նոր գալակտիկաների և գալակտիկաներում նոր կառուցվածքային մասերի, օրինակ՝ պարույրաձև թևերի առաջացումը գալակտիկաների կորիզների գործունեության հետևանք են։





Նկ. 4. Կենտավրոս A ռադիոգալակտիկան, որը ցույց է տալիս կրկնակիության նշաններ՝ թվում է թե էլիպսաձև գալակտիկայի վրա վերադրված է մի երկրորդ գալակտիկա։

Երբ հրապարակվեց գալակտիկաների կորիզների ակտիվության կոնցեպցիան, դրա օգտին խոսող դիտողական տվյալները քիչ էին և անբացահայտ։ Ռադիոգալակտիկաներին վերաբերող տվյալներից բացի այդ ժամանակ հայտնի էր, որ որոշ ռադիոաստղագիտական դիտումներ վկայում են այն մասին, որ մեր Գալակտիկայի, ինչպես նաև Անդրոմեդայի գալակտիկայի կորիզից տեղի ունի ջրածնային գազի անընդհատ արտահոսք։ Վերջապես նոր կոնցեպցիայի մշակման շրջանում Բյուրականում հայտնաբերվել էին հսկայական

էլիպսաձև գալակտիկաների արտասովոր կապույտ արբանյակ-գալակտիկաներ, որոնք, ինչպես ենթադրվում էր, դուրս են շպրտվել այդ հսկա գալակտիկաների կորիզներից։

Գոյություն ունեցող, վերը հիշատակված, սակավաթիվ դիտողական տվյալները բավարար չէին գալակտիկաների կորիզների ակտիվության հեղափոխական կոնցեպցիայի ընդունման համար։ Բնական էր, որ 1958 թ. Բրյուսելում, Սոլվեյի կոնֆերանսում, գալակտիկաների էվոլյուցիային նվիրված և այդ կոնցեպցիայի վրա հիմնվող զեկուցման հիմնադրույթները սվիններով ընդունվեցին։ Բանն այն է, որ այդ դրույթները ելնում էին տիեզերական նյութի էվոլյուցիայում պայթյունների, արտավիժումների, տրոհումների և ցրումների վճռական դերի վերաբերյալ նոր գաղափարից, որը խիստ հակասում էր նյութի խտացման ավանդական վարկածին։

Սակայն, չնայած մասնագետների համառ դիմադրությանը, գալակտիկաների կորիզների ակտիվության կոնցեպցիան բռնեց ժամանակի քննությունը։ Նոր կոնցեպցիայի հաղթարշավի համար հատուկ նշանակություն ունեցան արդեն 1963 թ. կատարված երկու կարևոր հայտնագործություն։

Մարտին Շմիդտը և Ջեսս Գրինստեյնը Պալոմարի աստղադիտարանում (ԱՄՆ) հայտնագործեցին քվազարները։ Այսպես կոչվեցին տիեզերական ռադիոճառագայթման այն աղբյուրները, որոնք գրեթե աստղային տեսք ունեն և գտնվում են շատ մեծ հեռավորությունների վրա։ Պարզվեց, որ քվազարներն օժտված են անսովոր մեծ զանգվածներով և լուսատվությամբ (ճառագայթման հզորությամբ)։ Քվազարների մեջ հայտնաբերվեցին այնպիսիները, որոնք ճառագայթման հզորությամբ մի քանի հարյուր անգամ գերազանցում են հարյուր միլիարդ աստղերից կազմված մեր Գալակտիկան։ Շուտով ամերիկացի աստղագետ Թեդ Կինմանը ցույց տվեց, որ գոյություն ունեն նաև միայն օպտիկական ճառագայթմամբ օժտված քվազարներ, որոնց թիվը մի քանի տասնյակ անգամ ավելի մեծ է։ Ժամանակակից հետազոտությունների համաձայն քվազարները շատ ակտիվ կորիզներ ունեցող գալակտիկաներ են։ Հսկայական հեռավորությունների պատճառով դիտվում են միայն քվազարների կորիզները, որպես ճառագայթման գրեթե կետային աղբյուրներ։ Այդ մասին է վկայում, օրինակ, այն փաստը, որ Պալոմարի աստղադիտարանում Ջերոմ Քրիստիանը մոտակա քվազարների շուրջը հայտնաբերել է աստղային բնակչություն։ Այդ նշանակում է, որ քվազարներն իրոք հեռավոր գալակտիկաներ են, որոնց կորիզների ակտիվությունը բնորոշվում է, առաջին հերթին, նրանց արտակարգ բարձր լուսատվությամբ։

Գալակտիկաների կորիզների ակտիվության անմիջական ապացույց էր M82 գալակտիկայի կորիզում ամերիկացիներ Ռոջեր Լինդսի և Ալան Սանդեյջի հայտնաբերած պայթյունը։ Դիտումների հիման վրա նրանք ցույց տվեցին, որ 1,5 միլիոն տարի առաջ տեղի ունեցած այդ հզոր պայթման ժամանակ գալակտիկայի կորիզից դուրս է շպրտվել մոտ 5 միլիոն արեգակնային զանգված ունեցող գազանյութ, որը ներկայումս կորիզից հեռանում է վայրկյանում ավելի քան 1000 կմ արագությամբ։

Հետագայում հայտնաբերվեցին և ուսումնասիրվեցին կորիզների բարձր ակտիվությամբ օժտված մեծ թվով գալակտիկաներ, որոնց մոտ դիտվում են կորիզների ակտիվության ամենատարբեր դրսևորումներ, տարբեր մասշտաբների ակտիվ պրոցեսներ, սկսած վիթխարի պայթյուններից, որոնք ուղեկցվում են մեծ զանգվածների արտավիժումներով ու արտանետումներով, մինչև կորիզներից նյութի հանգիստ արտահոսքը և արտասովոր հզոր ուլտրամանուշակագույն ու ինֆրակարմիր ճառագայթումը։

Մեր օրերում արդեն վկայությունները գալակտիկաների կորիզների ակտիվության օգտին, ամերիկյան նշանավոր գիտնական Ջերզի Նեյմանի խոսքերով ասած, անհամար են։ Այդ է պատճառը, որ այժմ գալակտիկաների կորիզների ակտիվության կոնցեպցիան համընդհանուր ճանաչման է արժանացել։

Աստղերի և գալակտիկաների առաջացման ու զարգացման՝ մեր ժամանակներում ընթացող երևույթների բացահայտման և ուսումնասիրության շնորհիվ, որն սկսվեց աստղասփյուռների հայտնագործմամբ, այսպիսով, հե-



ղաշրջում կատարվեց ժամանակակից գիտության մեջ, որը հանգեցրեց դրանում էվոլյուցիոն տեսակետի հաղթանակին։

Այդ ասպարեզում կատարված հետազոտություններն այսօր արմատապես փոխել են Տիեզերքի ժամանակակից վիճակի վերաբերյալ երկար ժամանակ իշխող ավանդական պատկերացումը։

Անփոփոխ և հանգիստ Տիեզերքի պատկերի փոխարեն ժամանակակից բոլոր հետազոտությունների հիմքում ընկած է փոփոխվող ու զարգացող Տիեզերքի վերաբերյալ նոր պատկերացումը, որի համաձայն նրա բոլոր բաղադրիչների համար ներկայումս բնորոշ են առաջացման ու զարգացման հետ կապված տարբեր մասշտաբների անկայունության երևույթները։

Տիեզերքն անընդհատ փոփոխվում և զարգանում է։

Տիեզերական անկայունության երևույթների հայտնագործումը և դրանց բազմակողմանի ուսումնասիրությունը բեղմնավոր եղան ո՛չ միայն աստղագիտության մեջ էվոլյուցիոն տեսակետի հաղթանակի համար։

Աստղերում և աստղային համակարգերում դիտվող անկայունության բազմապիսի դրսևորումների ուսումնասիրությունը հնարավորություն ընձեռեց բացահայտելու նաև մինչ այդ անհայտ բնույթի շարժումներ և ճառագայթման նոր ձևեր։ Հիմնավորվեց այն դրույթը, որ նրանք կարող են պայմանավորված լինել նյութի երկրային ֆիզիկայի համար առայժմ անհայտ վիճակներով։ Այսպես, օրինակ, աստղասփյուռների լայնացումը, նրանց կազմում եղած որոշ աստղերի (P Կարապի, Վոլֆ-Ռայե, T Ցուլի տիպերի և այլն) կողմից նյութի անընդհատ արտահոսքը վկայում են այն մասին, որ այդ դեպքերում նյութի էվոլյուցիան պայմանավորված է խիտ վիճակներից դեպի նոսր վիճակները կատարվող անցումներով։

Այդ փաստից ելնելով՝ մշակվեց գերխիտ նախաաստղերի վարկածը, որի համաձայն աստղերն ու միգամածություններն առաջանում են մեծ խտություն և փոքր չափեր ունեցող անհայտ բնույթի մարմիններից, դրանց տրոհման հետևանքով։ Այդ վարկածն արմատապես տարբերվում է գիտության մեջ մինչ այդ տարածված վարկածից, որն ընդունում է, որ աստղերն առաջանում են նոսր գազափոշային նյութի (դիֆուզ նյութի) խտացման միջոցով։

Այնուհետև պարզվեց, որ գալակտիկաների կորիզների ակտիվությամբ պայմանավորված հսկայական մասշտաբների անկայունության երևույթների ուսումնասիրությունը հնարավորություն է տալիս ենթադրելու, որ գալակտիկաների կորիզներում աստղերից ու նոսր ցրված նյութից (գազից ու փոշուց) բացի պետք է գոյություն ունենան նաև այլ բնույթի մարմիններ։ Հանդիսանալով նյութի մեծ զանգվածների և էներգիայի վիթխարի քանակների սկզբնաղբյուրներ, այդ, ըստ երևույթին, փոքր չափերի գերխիտ մարմինները հենց պայմանավորում են կորիզների դիտվող ակտիվությունը, մասնավորապես աստղառաջացման երևույթները։ Այս ենթադրությունը կարող է դիտվել որպես որոշակի վկայություն գերխիտ նախաաստղերի վարկածի օգտին։

Մյուս կողմից, գալակտիկաների կորիզներում հսկայական զանգվածների (միլիարդավոր արեգակնային զանգված) կուտակում· համեմատաբար փոքր ծավալներում (աստղակույտերի ծավալներից զգալիորեն ավելի փոքր), նյութի այնպիսի փոխարկումներ, որոնց դեպքում նյութի խտությունը փոխվում է միլիարդավոր անգամ, էներգիայի աներևակայելի քանակների անջատում— դրանք բոլորն այնպիսի երևույթներ են, որոնք իրենց նմանակը չունեն արդի ֆիզիկայում հայտնի պրոցեսներում։ Բավական է նշել, որ գալակտիկաների կորիզներում տեղի ունեցող պայթյունների ժամանակ անջատվող էներգիան ավելի քան միլիարդավոր անգամ գերազանցում է մեկ տարում Արեգակի ճառագայթած էներգիան, որն իր հերթին մոտ միլիոն միլիարդավոր անգամ մեծ է գոյություն ունեցող ջրածնային ռումբերի պայթման էներգիայից։

Բնական է կարծել, որ ոչ բոլոր դեպքերում գալակտիկաների կորիզների ակտիվության հետ կապված այդ անսովոր երևույթները կարող են բացատրվել մեզ հայտնի ֆիզիկական պատկերացումների հիման վրա։ Շատ հնարա-

*վոր է, որ գալակտիկաների կորիզների տարբեր դրսևորումներում ի հայտ են գալիս նյութի նոր, գիտությանն անհայտ արմատական հատկություններ, իսկ էներգիայի անսովոր մեծ քանակների անջատմամբ ուղեկցվող պրոցեսներում տեղի ունեն նաև հայտնի ֆիզիկական օրենքների խախտումներ։*

*Տիեզերական անկայունության տարբեր դրսևորումների հայտնաբերմանը ու ուսումնասիրությանը նվիրված և վերը քննարկված հետազոտությունները մեծ ազդեցություն են թողել ժամանակակից աստղաֆիզիկայի զարգացման վրա։ Բավարարվենք այդ ազդեցության ճանաչման արտահայտություններից մի քանիսի թվարկմամբ։ Աստղասփյուռներին և գալակտիկաների կորիզների ակտիվությանը նվիրված առաջին աշխատությունները վերահրատարակվել են «20-րդ դարի աստղագիտության սկզբնաղբյուրներ» ժողովածուում (ԱՄՆ)։ Գալակտիկաների կորիզների ակտիվության և լայնացող աստղասփյուռներում աստղերի շարունակվող առաջացման վերաբերյալ հետազոտությունները աշխարհահռչակ գիտնական, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի օտարերկրյա անդամ, հոլանդացի աստղագետ Յան Օորտի կարծիքով, սովետական աստղագետների «ամենակարևոր ներդրումն են աստղագիտության մեջ»։*

*Գալակտիկաների կորիզների ակտիվության կոնցեպցիան՝ «Կոպեռնիկոսի ժառանգությունը» գրքում, որը ԱՄՆ-ի գիտությունների ազգային ակադեմիան հրապարակել է հանճարեղ գիտնականի ծննդյան 500-ամյակի առթիվ, շարադրվում է այն գաղափարների շարքում, որոնք քվազիկոպեռնիկոսյան հեղափոխություն են առաջ բերել մեր գիտական պատկերացումներում։*

*Մնում է ավելացնել, որ այս հոդվածում շարադրված բոլոր կարևորագույն հայտնագործությունների և դրանցից բխող սկզբունքային նշանակություն ունեցող նոր պատկերացումների ու գաղափարների հեղինակը ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանն է, իսկ այդ պատկերացումների ու գաղափարների հետագա հիմնավորմանն ու զարգացմանը ակտիվ մասնակցել է նրա գլխավորած Լենինի շքանշանակիր Բյուրականի աստղադիտարանի կոլեկտիվը։*

---

# ՍԻՐՎԱԾ ԳԻՏՆԱԿԱՆԸ



**ՆՐԱ ԴԵՄՔԸ ԼՈՒՍԱՎՈՐՎԱԾ Է** վարակիչ, առինքնող ժպիտով։ Այդպես ժպտում են բարի, մարդամոտ մարդիկ։ Տարիները ո՛չ միայն չեն աղարտել այդ ժպիտը, այլև մի առանձին փայլ ու երանգ են հաղորդել նրան, դարձրել առավել իմաստալից։ Տքնումի և արարման ժպիտը, Աղայանական ժպիտը։

...Հազար ինը հարյուր տասներեք թվականի մայիսյան մի օր Մեղրի գավառական կենտրոնի նեղլիկ փողոցներից մեկով, ուրախ քրքջոցով, ծոպավոր շալերով փաթաթված գեղջկուհիներ էին բարձրանում։ Թևատակերին բոխչաներ ունեին՝ մեջը գաթա ու խավիծ՝ ծննդկանի համար։ Հասան ծանոթ խրճիթին ու բացեցին դուռը։

— Համեցե՛ք, բարո՛վ եք եկել,— լսվեց հյուրընկալ ձայնը, և տունը մեկեն լցվեց բարեմաղթանքի ջերմ խոսքերով։

— Աչքներդ լո՛ւյս, ուրախանաք ձեր արու զավակով,— իրար հերթ չտալով, մաղթեցին այցելու բարեկամուհիները։

— Շնորհակալ ենք, ձեր դուռն էլ ուրախությամբ բացենք,— եղավ պատասխանը, և տնեցիներն աշխույժ սկսեցին սեղանի պատրաստություն տեսնել։

Նորածնի երիտասարդ հորը, սակայն, վիճակված չէր վայելելու ընտանեկան սերն ու քաղցրությունը։ Ընդամենը մեկ տարի անց նա զոհվեց առաջին համաշխարհայինի ռուստաճկական ճակատում՝ զույգ երեխաներին թողնելով կնոջ՝ Շուշանիկի խնամքին։ Հետո պակաս-պռատ տարիներ վրա հասան, սարսափազդու լուրեր ստացվեցին հայկական կոտորածների մասին։ Բայց լավ էր, գոնե, որ դրանք Մեղրի չհասան, և որբևայրի կինը մի հնարով ոտքի կանգնեցրեց երեխաներին։ Հետո ճառագեց նոր կյանքի արշալույսը, և բանվորն ու գյուղացին, զրկվածն ու զրկվածը իրենց վաստակի, իրենց հանդ ու արտի տերը դարձան։

Աղայանների տան կրտսերը՝ Էդուարդը, աչքաբաց տղա դուրս եկավ, դպրոց ընդունվեց, սիրեց գիրքն ու գրականությունը։ Տարիներ հետո սկսեց նույնիսկ բանաստեղծություններ հորինել, մասնակցել գյուղի գրական խմբակի հավաքույթներին, որը ղեկավարում էր խրճիթ-ընթերցարանի վարիչը։ Վերջինս մեծ հույսեր էր կապում Էդուարդի հետ, պատանին ազնիվ զգացմունքներ ուներ և պատկերավոր մտածողություն, նա հմայված էր մայրենի խոսքով, մեր քառ ու բանով, մեր պոեզիայով։

Հենց այդ հոգսերով էլ, տասնամյակն ավարտելուց հետո, Էդուարդը վճռեց ընդունվել համալսարանի բանասիրական ֆակուլտետը։ 1933 թվականի ամռանը ավարտական իր վկայականով ու մյուս փաստաթղթերով, խռիվ մազափունջը ճակատին թափած, նա Մեղրիից եկավ Երևան, հաց ու փորձով գրտավ Աբովյանի վրայի հայտնի սև շենքը և ներկայացավ ընդունող հանձնաժողովին։

— Անո՛ւն-ազգանո՛ւնդ,— հարցրին այստեղ։

— Աղայան Էդուարդ,— շեշտված պատասխանեց նա։

— Ֆակուլտե՞տը։

— Բանասիրակա՛ն։

Ուրախացան գեղջկական համարձակության վրա, ընդունեցին գործերը։ Եվ սեպտեմբերին, քննությունները հաջող հանձնած, նա ընդունվեց համալսարան։ Ավելի լրջացած, ավելի ուշիմ, բայց մի տեսակ նաև զարմացած համալսարանով ու նրա դասախոսներով։ Դասախոսությունները գրելու, նշումներ կատարելու սովորություն չուներ։ Նստում, ուշադիր լսում էր՝ միշտ հույսը դրած լավ հիշողության վրա։ Հետո գրքեր, սկզբնաղբյուրներ և, իբրև համեմունք, միշտ գեղարվեստական գրականություն։ Մի անգամ պրոֆեսոր Հրաչյա Աճառյանը, որ տանել չէր կարողանում Էդուարդի անփույթ սանրվածքը և նկատել էր, որ նա իր ժամերին գրիչ չի շարժում թղթի վրա, լսարան մտնելով, առանց պարտադիր

նէրկա-բացակայի, սկսեց դասախոսությունը: Երրորդ կուրսում էին: Այդ տարվանից էին ունկնդրում Աճառյանին:

— Բայի խոնարհումն անցնելիս, հիմքերի մասին մենք ասացինք, որ...— հատ-հատ արտասանեց մեծ լեզվաբանը, նախադասությունը կիսատ թողեց և դարձավ լսարանին,— ի՞նչ ասացինք, ո՞վ կարող է ասել:

Լսարանում մի ձեռք բարձրացավ՝ Էդուարդինը: Բայց Աճառյանը չնկատելու տվեց և սկսեց հերթով հարցնել մյուսներին: Զգոհացավ և վերջում ստիպված դիմեց նրան:

— Ի՞նչ ասացինք:

— Ասացինք, որ կան հիմքերի բնավոր տիպեր և անբուն տիպեր,— ընդգծված պատասխանեց Էդուարդը, և պրոֆեսորի դեմքը մեկեն ողողվեց խանդավառ ժպիտով: Մոտեցավ, ամուր գրկեց նրան և հայրական գորովանքով շշնջաց

— Ապրե՛ս, տղաս... ես ներողություն եմ խնդրում քեզնից:

Էդուարդն ապշեց.

— Ինչո՞ւ, ընկեր Աճառյան:

— Քո նկատմամբ սխալվելուս համար, տղաս: Իսկ գիտե՞ս, որ դասախոսն իրավունք չունի սխալվելու, դասախոսի սխալը հղի է վտանգավոր հետևանքներով: Այն կարող է հավատ սպանել, կանգնեցնել մատաղ շյուղի ծլարձակումը: Ա՛յ, թե ինչու եմ ներողություն խնդրում:

Ողջ խումբը զարմացել էր առաջին հայացքից սենտիմենտալ թվացող միջադեպով: Ու հաջորդ ժամից ֆակուլտետում թնդաց լուրը՝ Աճառյանը ներողություն է խնդրել... ուսանողից: Շատ ուշ, կրքերը հանդարտվելուց հետո միայն պարզ դարձավ, որ դա սովորական ներողություն չէր, դա դաս էր մեծության, խոհեմության, շիտակության:

Երիտասարդի լեզվամտածողության ճկունությունը, գրաբարին, պարսկերենին, ֆրանսերենին արագ տիրապետելը շուտով առավել սևեռուն իրենց վրա հրավիրեցին մեծ լեզվաբանի ուշադրությունը: Եվ նա, հարց ու փորձից իմանալով, որ Էդուարդը մեղրեցի է, հանձնարարեց նրան ուսումնասիրել Մեղրու բարբառը: Այդ հանձնարարությունը ճակատագրական եղավ ապագա գիտնականի համար: Նա բանաստեղծական հոգսերը մի կողմ թողեց և վճռեց խորանալ լեզվի մեջ: Այդ հարցում նրան սատարեցին նաև համալսարանի դասախոսները, ականավոր լեզվաբաններ Գրիգոր Ղափանցյանն ու Գուրգեն Սևակը:

Տարիներն արագ հաջորդեցին իրար: Աղայանն ավարտեց ասպիրանտուրան, «Մեղրու բարբառը» թեմայով դիսերտացիա պաշտպանեց, որում գիտական բարձր մակարդակով ու համակողմանի քննարկվում էին մայրենի բարբառի հնչունական, քերականագիտական համակարգն ու բառապաշարը, և հետևյալ օրը, առավել ճոխ ներկայանալու նպատակով, գրաբար շնորհակալական խոսք գրեց ու այցելեց Աճառյանին: Նա կարդաց տեքստը, հրճվեց, բայց և երեք-չորս բառի տակ ընդգծեց:

— Ճիշտ չե՞ն,— զարմացավ Աղայանը:

— Ճիշտը ճի՛շտ են, բայց ոսկեդարյան չեն: Սովորիր ոսկեդարյանին ուրիշ բան չխառնել: Լեզուն դա չի հանդուրժում:

Աճառյանի դասը շարունակվում էր: Այդ դասի կենսունակ հողում անում, առնականանում, խոր արմատներ էր ձգում Աղայան գիտնականը, հանդես գալիս նոր ուսումնասիրություններով, չսահմանափակվելով սոսկ լեզվաբանական ու քերականական հետազոտություններով: Նա անդուլ պրպտումով թափանցում էր նաև հոգևոր կյանքի մյուս բնագավառները՝ պատմություն, փիլիսոփայություն, գրականություն, արժանի նպաստ բերելով հայագիտությանը:

Հապա դասախոսություննե՛րը: Նրան լսելու էին գալիս ո՛չ միայն համալսարանի մյուս ֆակուլտետներից, այլև քաղաքի ամենատարբեր բուհերից և ուսումնական հաստատություններից: Նա իր մարդամոտությամբ, սրտաբաց վերաբերմունքով, արագ մտերմանալու բացառիկ շնորհքով մոգական ուժով դեպի իրեն էր ձգում ուսանողներին, դառնում նրանց ամենասիրելի անձնավորություններից, ամենահաճելի ու ամենահարգելի դասախոսներից մեկը:

Որոշ ժամանակ անց, դարձյալ Աճառյանի խորհրդով, Աղայանը ձեռնամուխ եղավ «Հայ լեզվաբանության պատմություն» դոկտորական դիսերտացիայի պատրաստմանը: Քիչ է ասել՝ խորհրդով: Մեծ Աճառյանը, որ աշխատասիրության մարմնացում էր, քայլ առ քայլ հետևում էր իր շնորհալի սանի առաջընթացին:

— Հը՞, մի բան արեցի՞ր,— մի օր հարցրեց նրան:

— Գրականությունն եմ կարդում, ընկեր Աճառյան:

— Է՜, բավական չէ՞ կարդաս: Սկսել է պետք, որ սկսեցիր՝ կգնա: Ե՞րբ ես սկսելու:

— Մի տասն օրից, ընկեր Աճառյան:

Ուղիղ տասն օր հետո հանդիպեց. հարցրեց՝ «գրեցի՞ր»:

Աշխարհային հազար ու մի հարցերը, ջահել հետաքրքրությունները, ընկերներն ու մտերիմները առաջին պլան էին մղվել ու



խանգարել նրան կատարելու տված խոստումը, բայց ամոթից ասաց՝ «այո՛»:

— Ինչքա՞ն ես գրել:

— Երևի մի տասը-տասնհինգ երես:

— Կբերես, կկարդաս: Երեքշաբթի սպասում եմ:

Գնաց, երկու գիշեր նստեց-գրեց ու նշանակված օրը ներկայացավ Աճառյանին:

— Լավ է, ամեն շաբաթ տասնհինգ էջ կբերես:

Կարճ ժամանակում Աղայանն ավարտեց «Հայ լեզվաբանության պատմություն» երկհատոր աշխատությունը, ուր հանգամանորեն և պատշաճ մակարդակով ներկայացվում է հայ լեզվաբանության անցած մեկ և կես հազար տարվա ճանապարհը, տրվում է լեզվաբանական տարբեր ուսմունքների, ուղղությունների, դպրոցների ու տեսությունների ճշգրիտ գնահատականը, լուսաբանվում տարբեր ուղղությունների հարող հայագետների կյանքն ու գործունեությունը, վերհանվում այն նպաստը, որ բերել են նրանք ընդհանուր լեզվաբանությանը, հայերենի ուսումնասիրությանն ու հայագիտությանը: Այս աշխատությունը, որպես դոկտորական դիսերտացիա, նա պաշտպանեց 1945 թվականի մայիսի 11-ին, մեծ հաղթանակի անմոռաց օրվանից երկու օր անց, երեսուներկու տարեկան հասակում: Մեկ տարի հետո նրան շնորհվեց նաև պրոֆեսորի կոչում: Այդքան երիտասարդ դոկտոր-պրոֆեսորի հիմա էլ հազվագյուտ ենք հանդիպում, ո՛ւր մնաց թե այն տարիներին: Դիսերտացիայի պաշտպանությունը արտակարգ դեպք էր բուհի գիտական կյանքում և ես, համալսարանի այդ ժամանակվա ուսանողս, լավ եմ հիշում, որ բոլորի խոսակցության թեման Աղայանն էր: Հաջողությանը մեծապես նպաստել էին, անշուշտ, նրա մարդկային նկարագիրը, դասախոսի ներքին հմայքն ու խորագիտակությունը:

Տքնումի և արարման կանաչ տարիներին ծնվեցին գիտական աշխատություններ՝ նվիրված ընդհանուր և համեմատական լեզվաբանության, հայագիտության ամենատարբեր ու խիստ արդիական բնագավառներին: Դրանցում գիտական բարձր մակարդակով վերլուծվում են հայոց լեզվի դրսևորումների՝ գրաբարի, բարբառների, ժամանակակից հայերենի կառուցվածքի ու պատմության, հայոց գրի ու դպրության, մեր տոմարագիտության կնճռոտ հարցերը:

Իրար ետևից ընթերցողի սեղանին դրվեցին «Լեզվաբանության ներածություն» բուհական ձեռնարկը, որն ունի հայերեն չորս հրատարակություն և լույս է տեսել ռուսերեն, «Գրաբարի քերականությունը»՝ նվիրված հին գրական հայերենի հնչյունական համակարգի ուսումնասիրությանը, «Ժամանակակից հայերենի հոլովումն ու խոնարհումը», որ սովետահայ լեզվաբանության ակնառու նվաճումներից է, բառարանագիտական-ստուգաբանական մյուս աշխատություններն ու ուսումնասիրությունները:

Աղայանը երկար տարիներ գեղարվեստական ու հանրամատչելի գրականության, դասագրքերի, հրապարակախոսության և պարբերական մամուլի նյութերի հիման վրա տքնաջան աշխատանքով ստեղծեց հատուկ քարտարան, պարզեց արդի հայերեն գրական լեզվի ակտիվ ու պասիվ բառապաշարը և ձեռնամուխ եղավ «Արդի հայերենի բացատրական բառարանին»՝ գիտական մեծարժեք մի աշխատություն, որի երկու հատորները պարունակում են մոտ 136 հազար բառ և ավելի քան 10 հազար դարձվածքային միավոր: Բառարանում, գրավոր աղբյուրների հետ, տեղ գտան նաև բանավոր՝ խոսակցական լեզվի բառային ու դարձվածքային միավորները: Գիտահետազոտական բազմազբաղ գործունեությանը զուգահեռ նա շնորհակալ աշխատանք է կատարում իր ուսուցչապետի՝ Հրաչյա Աճառյանի ժառանգությունը հրատարակության նախապատրաստելու և խմբագրելու նպատակով:

Ծանրակշիռ վաստակն արժանի ճանաչում բերեց լեզվաբան-հայագետին: 1953 թվականին Աղայանն ընտրվեց Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, 70-ին ստացավ Հայկական ՍՍՀ գիտության վաստակավոր գործչի կոչում, 80-ին ընտրվեց հանրապետության բարձրագույն իշխանության՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, 1982-ին իր արժանի տեղը գրավեց Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսների շարքում: Բայց դրանցով չի ավարտվում նրա տիտղոսների ցանկը. նա նաև մեկ տասնյակից ավելի գիտական խորհուրդների, տարբեր հանձնաժողովների, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր տերմինաբանական կոմիտեի անդամ է:

Եվ, զարմանալի կերպով, գիտամանկավարժական մեծազբաղ գործունեությունը դույզն իսկ նրան չի կտրել և այսօր էլ չի կտրում աշխարհիկ վայելքներից, մերձավորների, ընկեր-բարեկամների մտերմիկ ու ջերմ շրջապատից: Լիաթոք հրճվում, ուրախանում

է մարդկանց հաջողություններով ու գիտե նաև վշտանալ ի խորոց սրտի:

Իսահակյանն էր վախճանվել՝ Վարպետը: Շատերի հետ Աղայանը ևս նրա հետ ունեցած անմոռաց հանդիպումների անջնջելի տպավորության տակ էր: Ընկերներով պայմանավորվեցին ևս մի անգամ այցի գնալ բանաստեղծի թարմ շիրմին: Բայց ոչ առանց Լևոն Մադոյանի: Ակադեմիայի գրադարանի այդ ժամանակվա դիրեկտոր Վաչե Կարմենյանի ու հանրային գրադարանի դիրեկտոր Լեկապե Մելքումյանի հետ հանդիպեցին դուդուկի մեծ վարպետին, խանութ մտան՝ խմիչք վերցրին և Կոմիտասի անվան զբոսայգու մուտքի մոտ պատահականորեն միացան Պարույր Սևակին, Վահագն Դավթյանին ու Խաչիկ Դաշտենցին: Խմբով գնացին Պանթեոն: Մի-մի թաս խմեցին, վշտի ու մեծարանքի խոսքեր շշնջացին, արտասանեցին Վարպետի ստեղծագործություններից և սքանչացան Մադոյանի կատարումով: Մինչև մայրամուտ: Այդ նշանավոր մայրամուտը հիշելիս Աղայանը հիմա էլ հուզվում է:

— Շատերը եկան ու գնացին,— պատմում է նա,— և մեկ էլ երկու ուշացած այցելու: Մեկը տարեց, բարձրահասակ և ուսապարկով, մյուսը՝ ջահել-ջլապինդ: Չնկատելով մեզ (քեֆներս արդեն լավ էր, ու մենք մի կողմ էինք քաշվել), տարեցը մոտեցավ ծաղկապատ հողաթմբին, ուսից իջեցրեց պարկը, հանեց օղու շիշը, լցրեց բաժակը և դողդողացող շուրթերով ասաց. «Է՜, Ավո ջան, քունդ անուշ էղնի»: Մի կում արեց, մնացածը խաչաձև շաղ տվեց հողաթմբի վրա, և... սկսեց երգել «Սև-մութ ամպեր»: Ո՜նց էր երգում, ի՜նչ անուշ ձայնով, ինչպիսի՜ հազվագյուտ զգացմունքով: Երբ երգն ավարտեց, մենք ընդառաջ ելանք ու հարցրինք նրա ով լինելը:

— Քարտաշ եմ, ձեզի մատաղ, էսիկ էլ իմ աշկերտս է,— պատասխանեց,— Ավետիքի հետ մանկության ընկեր ենք էղե, ի՞նչ էնենք, օր ըսպես պատահավ...

Գրողների, գիտության ու մշակույթի մարդկանց համար Վարպետի մանկության ընկերը գյուտ էր: Այն էլ նման պարագայում: Հրավիրեցինք, նոր բաժակներ պարպեցինք և թախանձագին խնդրեցինք, որ նա նորից կատարի իր սքանչելի երգը.

— Չի ստացվի, էլ էնպես չի ստացվի, կարոտս արդեն առա, ներող կեղնիք,— առարկեց այնպես սպառիչ, որ ոչ ոք այլևս հորդորելու կարիք չունեցավ: Միայն իմանալով ովքեր են, ուրախացած ասաց.

— Երկան ումբր էղնիք, տղերք ջան: Հիշող օր ունեցավ՝ մարդս չի մեռնի: Ըսպես է աշխըրքիս բանը: Մի հատ էլ լցրեք՝ խմենք ինոր անմահության կենացը:

Մութն էր արդեն, երբ մենք հրաժեշտ տըվինք Պանթեոնին՝ հուզված-մաքրված և ափեափ լցված խոհերով ու մտածումներով:

Էդուարդ Աղայանը ո՛չ միայն ականավոր լեզվաբան է, այլ նաև գիտության և ուսումնական պրոցեսի հմուտ կազմակերպիչ: Տարբեր ժամանակներում աշխատելով որպես համալսարանի գիտական աշխատանքների գծով պրոռեկտոր, բանասիրական ֆակուլտետի դեկան, ներկայումս հմտորեն գլխավորելով համալսարանի համեմատական լեզվաբանության ամբիոնը և ակադեմիայի Հր. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտի ընդհանուր լեզվաբանության բաժինը, նա ամենուր ստեղծել է գործարար հաճելի մթնոլորտ, դրսևորելով կազմակերպչի ու ղեկավարի հիանալի հատկություններ: Նրա բեղմնավոր գործունեությունը՝ որպես գիտական ղեկավար, հիրավի պատկառելի նպաստ է բերել համալսարանի հայագիտական կենտրոնին՝ նրան արժանացնելով միջազգային ճանաչման:

Գիտնականի ստեղծարար պրպտումն արտասովոր եղավ նաև արևելքի բանասիրության ասպարեզում: Այստեղ նա ընթերցողի սեղանին դրեց այնպիսի աշխատություններ, ինչպես՝ «Նիզամի Գյանջևին» և արևելքի գրականության պատմության «Դրվագները»: Հայա՜ անդադրում աշխատանքը երիտասարդ լեզվաբանների հետ: Նա, իր մեծ նախորդի համառությամբ, քայլ առ քայլ հետևել է նրանց ոճին ու մասնագիտական հմտությունների դրսևորմանը, հսկել նրանց աշխատանքը, եղել գիտական առաջին գործերի խմբագիրը, դիսերտացիաների համբերատար ղեկավարն ու բարյացակամ ընդդիմախոսը:

Քառասունհինգ տարի շարունակ, սկսած 26-ամյա հասակից, Էդուարդ Աղայանը մի առանձին սիրով ու բարեհաճությամբ է կատարում դասախոսի իր պարտականությունները՝ միշտ անձանձիր, միշտ պատրաստակամ, ներողամիտ ժպիտը դեմքին: Դրա համար ուսանողները պաշտելու չափ սիրում են նրան: Եվ ո՛չ միայն ուսանողները: Այլասիրության նրա բնատուր տաղանդը մշտապես փոխադարձության մթնոլորտ է ապահովում:

— Գոհ ու շնորհակալ եմ և՛ իմ ճակատագրից, և՛ ինձ շրջապատող մարդկանցից,— վերջերս համալսարանում մեր միջև ծայր առած մտերմիկ մի զրույցի ժամանակ ասաց նա:— Իհարկե, ավելին կարող էի անել, եթե...

Այդ «եթեի» վրա ժպտաց, նայելով աչքերիս, կարծես հասկացնելով, որ ո՞վ



խենթություններ չի ունեցել: Եվ այդտեղ ես մտովի նրան պատկերացրի ջահել-հպարտ հասակում, 1945 թվականին, երբ առաջին անգամ տեսա: Որքան էլ որ պահպանել է հոգու կորովը, կեցվածքն ու առույգությունը, տարիները, ինչպես ասում են, կողքով չեն անցել: Ժամանակն արծաթ է մաղել մազերին, դեմքին իմաստնության խորշումներ են գծագրվել, բայց նույնն են մնացել աչքերը՝ բարի, ժպտացող, խելացի, նույնն են մնացել խոսքի համոզկեր տոնը, բոցավառ սերը մարդկանց ու աշխարհի, հարազատ եզերքի ու հայրենիքի նկատմամբ:

— Զավակներիցս էլ եմ գոհ,— հարցիս պատասխանում է նա,— աղջիկս էլ է լավը, երկու տղաներս էլ: Թոռներիս մասին արդեն չեմ ասում:— Հետո կատակում է.— Միայն կրտսեր տղաս՝ Ռուբենը, որքան էլ խելացի, ինձ չի քաշել: Նրա տարիքում ես վաղուց դոկտոր էի, իսկ նա, արդեն ճանաչված դասախոս, չի էլ շտապում դիսերտացիա պաշտպանել: Ի՞նչ արած, ուշ լինի՝ նուշ լինի:

Հետո ինքն է դիմում ինձ.

— Իսկ Բագրատիս, կարծեմ, ճանաչում ես, հորս անունով եմ կնքել:

— Ինչպե՞ս չէ, մի անգամ, երբ դեռ Լենինյան շրջանի դատախազությունում էր աշխատում, նրա քննած գործերից մեկի մասին նույնիսկ հոդված եմ գրել, դրվատանքի խոսք ասել:

Դուռը թախում են: «Մտե՛ք», ասում է Աղայանը, և սենյակ է մտնում մի սիրունատես աղջնակ: Բարևում է, շիկնում ամոթխածությունից:

— Դիպլոմային աշխատա՞նքդ ես բերել,— հարցնում է Աղայանը:

— Այո՛, ուզում եմ նայեք, եթե ժամանակ ունեք:

— Այսօր դժվար հասցնեմ, բայց վաղը, ընդմիջումից հետո, անպայման եկ, կնայեմ:

Աղջիկը ներողություն է խնդրում անհանգըստացնելու համար և պատրաստվում դուրս գալ. Աղայանը հարցնում է.

— Սուրճ եփել գիտե՞ս:

— Այո՛, ինչպե՞ս չէ:

— Ապրե՛ս, դե՛, սուրճ պատրաստիր, կիսադառն,— և տեղից ելնելով, ցույց է տալիս սարք ու կարգի տեղը:

— Ախր քիչ առաջ խմեցիք,— նկատում եմ ես,— շատ չի՞ լինի:

— Շատը առաջ էր. օրական տասը գավաթ, իսկ հիմա եռակի կրճատել եմ, հասցրել երկուսի, մեկ-մեկ՝ երեքի: Այսօր առավոտվանից գործի մեջ էի, ընտրողներիցս երկու հոգի մի հարցով եկել էին, նրանցով զբաղվեցի ու սուրճը մոռացա: Իսկ հիմա միասին կվայելենք:

Ես հրաժարվեցի, հայտարարելով, որ սուրճ ընդհանրապես չեմ օգտագործում: Զարմացավ՝ «այդ ո՞նց»: Եվ երկու գավաթն էլ հերթով խմեց:

— Շատ թարմացնում, առույգացնում է, եթե կուզես՝ պայծառացնում է ուղեղը,— ասաց վերջում:

Քանի որ առիթ էր ներկայացել, հարցրի.

— Իսկ կերակուրներից ո՞րն եք նախընտրում:

— Լավ ճաշերը բոլորն էլ սիրում եմ և ախորժակից երբեք չեմ գանգատվել, բայց, ա՛յ, խմել սիրում եմ ընկերներով և անպայման՝ առիթով: Ամբաղ-զամբաղ խմողներից միշտ խուսափել եմ նույնիսկ ջահելության տարիներին, ուր մնաց թե հիմա:

— Իսկ սպորտ սիրո՞ւմ եք: Եվ եթե գաղտնիք չէ, առաջին հերթին՝ ո՞ր ձևը:

— Կարծում ես, պիտի ասեմ ֆուտբո՞լը: Չէ՛, անտարբեր եմ ֆուտբոլի նկատմամբ, ո՛չ առաջնությունների ընթացքին եմ հետևում, ո՛չ էլ որևէ թիմի «ցավում եմ», թեև լավ խաղի առանձին պահեր մեկ էլ տեսար ուշադրությունս գրավեցին: Դեռ աշակերտական տարիներից ինձ դուր է եկել պտտաձողը: Երևի դա էլ գալիս է նրանից, որ ջահել տարիներին իմ ունեցածը դա է եղել:

— Պլանների մասին ի՞նչ կասեք:

— Ի՞նչ ասեմ, դրանք ավելի շուտ իրականացնելու բաներ են, կապրենք՝ կտեսնենք:

Հաճելի զրուցակից է Աղայանը և, խոսակցությամբ տարված, չես էլ զգում, թե աննկատ ինչպես է հոսում ժամանակը: Ու երբ այդ մասին ասում եմ իրեն, ժպտում է.

— Չի հոսում, ուղղակի թռչում է: Կարծես երեկ էր, որ գյուղում գառներ էի արածացնում կամ համալսարանական ուսումնառությանը զուգահեռ հաշվապահություն անում պահածոների գործարանում: Ժամանակը ոսկի է, պետք է գնահատել, մանավանդ ստեղծագործական աշխատանքում: Դա պետք է անեն հատկապես երիտասարդները, որոնք ոչ մի վայրկյան իրավունք չունեն մոռանալու հայտնի խորհուրդը՝ այսօրվա գործը վաղվան չեն թողնի:

Հեռախոսը զանգահարում է: Աղայանն անշտապ մոտենում է, վերցնում լսափողը և ողողվում ժպիտով:

— Թոռնի՜կս է,— մեկուսի շշնջում է ինձ և շարունակում զրույցը: Աչքերը փայլում են ուրախությունից, ձայնի մեջ փաղաքուշ ե-

րանցներ են խլրտում, կատակում է, ծիծաղում: Իսկական պապի ու թոռան զրույց՝ գիտատեխնիկական առաջընթացի ընձեռած հնարավորություններով:

Օգտագործելով պահը՝ աչքի եմ անցկացնում սեղանին անփույթ թափված հեռագրերը, որ Աղայանն ստացել է ծննդյան 70-ամյակի առթիվ: Մարդկային այդ վավերագրերը հարգանքի, գնահատության ու բարեմաղթանքի անկեղծ զգացմունքներ են պարունակում, և դրանցից մեկն արժե մեջբերել ամբողջությամբ.

«Սիրելի Էդուարդ Բագրատի. ողջունում եմ Ձեր 70-ամյակը: Շնորհավորում եմ ոչ թե նրա համար, որ այդքան տարիներ անցել են, այլ որ Ձեր կողմից այդ տարիները լավ են օգտագործվել գիտությանը և հայոց լեզվին ծառայելու համար: Ձեր բացատրական բառարանը միշտ ձեռքիս տակ է: Ցանկանում եմ ամուր և երկարատև առողջություն: Վիկտոր Համբարձումյան»:

Ահա և «Երևանի համալսարան» շաբաթաթերթի թարմ համարը՝ մեկ ու կես էջը նվիրված ականավոր լեզվաբան, կոմունիստ Աղայանին: Ռեկտորատի, կուսկոմիտեի և արհկոմիտեի ողջույնում, մասնավորապես, ասված է. «Դուք ո՛չ միայն մեր ուսանողների, այլև ամբողջ համալսարանի սիրելի անձնավորություններից մեկն եք, և պատահական չէ, որ համալսարանի կոլեկտիվը վերջին ընտրությունների ժամանակ հենց Ձեզ առաջադրեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ: Մաղթում ենք ստեղծագործական նոր խիզախումներ, մտքի թռիչք, քաջառողջություն և անսպառ եռանդ՝ ի փառս բազմադարյան հայ մշակույթի ու գիտության է՛լ ավելի զարգացման»:

Թերթի ճակատը զարդարում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը, որով Էդուարդ Աղայանը պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով՝ լեզվաբանության զարգացման, գիտական կադրերի պատրաստման գործում ունեցած վաստակի համար և ծննդյան յոթանասունամյակի կապակցությամբ:

— Կներես,— թոռնիկի հետ խոսակցությունն ավարտելով, ինձ է դառնում Աղայանը,—էդ լակոտներին շատ եմ սիրում:—Հետո թեթև դադար է առնում ու շարունակում,— իրենք էլ ինձ են սիրում: Եվ շա՛տ-շա՛տ: Գիտե՞ս ինչ բան են գեները:

Դեմքը նորից լուսավորվում է վարակիչ, առինքնող ժպիտով: Այդպես ժպտում են բարի, մարդամոտ մարդիկ: Յոթ երկար ու ձիգ տասնամյակները ո՛չ միայն չեն աղարտել այդ ժպիտը, այլև մի առանձին փայլ ու երանգ են հաղորդել նրան, դարձրել առավել իմաստալից: Տքնում և արարում է խորհրդանշում այդ ժպիտը, Աղայանական ժպիտը:

Է. Լ. ՇԱՀԻՐՅԱՆ



# ԳԻՏԵԼԻՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԸ

Հ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿՆԵՐՈՒՄ գիտության բուռն զարգացման շնորհիվ 8—10 տարում կրկնապատկվում է ինֆորմացիան: Դեռևս մեկ հարյուրամյակ առաջ գիտական գործոնը կյանք էր ներմուծվում այնպիսի մասշտաբներով, որի մասին, ինչպես նշել է Մարքսը, «անցած դարաշրջանում ոչ մի պատկերացում չունեին» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 47, стр. 556): Այսօր, հատկապես մեր երկրում, մեծ ուշադրություն է նվիրվում գիտության, գիտելիքների զարգացման տեսական և պրակտիկ խնդիրների լուծմանը: ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց ուժեղացնել հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների փոխգործողությունը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան պլենումում (1982 թ.) ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ընկ. Յու. Վ. Անդրոպովը նշեց գիտության և արտադրության միացման ուղիների մասին: Ժողովրդական տնտեսության «ռեզերվները պետք է որոնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում, գիտության, տեխնիկայի, առաջավոր փորձի նվաճումները արտադրության մեջ լայնորեն և արագ ներդնելու գործում»:

Գիտելիքների զարգացման բազմաթիվ պրոբլեմներից կարելի է առանձնացնել դրանց ըմբռնման, գնահատման, օգտագործման, չափանիշների հարցերը: Բազմաթիվ հետազոտողներ նշում են չափանիշների դերի և կարևորության մասին: Անդրադառնանք գիտական և հասարակական չափանիշների փոխհարաբերության հարցին: Գիտելիքի չափանիշի տակ նկատի է առնվում առաջին հերթին նրա ճշմարտության չափանիշը: Մարքսիզմ-լենինիզմի դասականները տվել են գիտելիքների ճշմարտության ստուգման բանալին՝ համապատասխանությունն իրականությանը: «Այն հարցը,— նշել է Կ. Մարքսը,— թե մարդկային մտածողությունն արդյոք ունի՞ առարկայական ճշմարտացիություն,— ամենևին էլ տեսության հարց չէ, այլ պրակտիկ հարց է: Պրակտիկայում մարդը պետք է ապացուցի իր մտածողության ճշմարտացիությունը, այսինքն՝ իրական լինելը, հզորությունը, աշխարհիկ բնույթը: Պրակտիկայից մեկուսացող մտածողության իրական կամ անիրական լինելու վեճը զուտ սխոլաստիկ հարց է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972 թ., էջ 1—2):

Բուրժուական հետազոտողները միակողմանի բացարձականացնում են «գիտական», «էմպիրիկ» կամ «ռացիոնալ» չափանիշները: Նրանք չափանիշները լրիվ կտրում են սոցիալականից և հակադրում վերջինիս: Հասարակականը հայտարարում են երկրորդական, ոչ էական, գիտելիքի պատմության համար նշանակություն չունեցող:

Դիալեկտիկամատերիալիստական իմացության տեսությունը գիտելիքին ներկայացվող գիտական և հասարակական պահանջները, սկզբունքները դիտում է միասնության, փոխներգործության մեջ, որը բխում է, առաջին հեր-

թին, բուն գիտելիքի էությունից և ճիշտ ըմբռնումից։ Կարևոր է առանձնացնել նաև չափանիշների աստիճանականությունը և պրակտիկայի հետ դրանց կապի առանձնահատկությունը։ Քանի որ գիտելիքների հասարակական և գիտական չափանիշները չեն սպառվում միայն պրակտիկայի մատնանշումով, ապա փորձենք դրանք դիտարկել նաև գործնական և տեսական շրջանակներում՝ մասնակիացնելով գիտական և հասարակական չափանիշների միասնական գործադրման հարցերը։

Մարքս-լենինյան փիլիսոփայության տեսանկյունից դիտարկելով գիտելիքի ձևով հանդես եկող աշխարհի մշտապես զարգացող գիտական պատկերը, ավելի ենք համոզվում, որ իդեալիզմի իմացաբանական արմատը այս հարցում ևս դրսևորվում է գիտելիքները պրակտիկայից խզելու մեջ, որից ելնելով իդեալիստները գիտելիքը և դրա չափանիշները դիտում են բացարձակապես ինքնուրույն և մեկուսացված։ Այս առնչությամբ Մարքսը նկատել է, որ «այդ պահից գիտությունը իրոք կարող է երևակայել, որ ինքը ինչ-որ այլ բան է, քան գոյություն ունեցող պրակտիկայի գիտակցումը» (Նույն տեղը, էջ 30)։ Հիմնավոր պահանջ է, որ գիտական ամեն մի հայտնագործության, նոր գիտելիքի, ինչպես նաև արդեն կուտակված գիտելիքների ադեկվատ ըմբռնման, գնահատման և օգտագործման համար չպետք է ելնել միայն առանձին գիտելիքներից և գաղափարներից։ Դա գիտելիքի ճշմարտության և ընդհանուր առմամբ հարցի միայն մի կողմն է։ Վ. Ի. Լենինը շեշտել է, որ «ճշմարտության համար հարկավոր են իրականության նաև մյուս կողմերը, որոնք նույնպես միայն թվում են ինքնուրույն ու առանձին։ Միայն նրանց համախմբության մեջ և նրանց հարաբերության մեջ է իրականանում ճշմարտությունը» (ԵԼԺ, հ. 29, էջ 215—216)։ Դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունից ճշմարտության չափանիշը հասկացության և ռեալության միասնության մեջ է։ Դա հնարավոր է դարձնում մետաֆիզիկորեն չառանձնացնել և մեկուսացած, միակողմանի չդիտարկել ու լուծել հարցերը՝ ընդհուպ մինչև գիտելիքի չափանիշի հարցը։

Մարքս-լենինյան տեսությունը պահանջում է գիտելիքների և ընդհանուր առմամբ դիալեկտիկայի այսկողմային ճշմարտությունը որոշել կոնկրետ բնագիտության պատմությամբ։ Գիտության ճշմարտացիությունը մարդն ապացուցում է պրակտիկայով։ Հենց այս տեսանկյունից էլ խիստ կարևոր է սահմանել, թե որն է գիտականը և որը՝ ոչ գիտականը, ինչպես են տարբերվում դրանք միմյանցից։ Այս հարցի պատասխանը կարող է պարզություն մտցնել չափանիշների խնդրի լուծման ուղիների մեջ։ Նույն հարցի տրամաբանական վերլուծությունը և շարունակությունը կարող է լինել նաև այն, թե այդ չափանիշները ինչ հնարավորություններ են ընձեռում։ Արդյոք շինական պարբերով սահմանազատո՞ւմ են գիտականը ոչ գիտականից, կարելի՞ է արդյոք գիտելիքի մի բնագավառի կոնկրետ չափանիշներն ու նորմերն ընդհանրացնել և տարածել մյուս բոլոր բնագավառների վրա, կամ ինչ սահմաններում և վերապահումներով է այն հնարավոր ու թույլատրելի։

Մարքսիստական ըմբռնմամբ գիտելիքները, ինչպես առօրեականը, այնպես էլ գիտականն ու գեղարվեստականը, մարդկանց հասարակական պրակտիկ գործունեության հոգևոր արդյունքներն են, որոնք միակողմանի գիտականության կամ առօրեականության տեսանկյունից դիտելը և միանշանակ չափանիշներով չափելն անհնարին է։ Եթե ընդունում ենք, որ գիտելիքները ծագումնաբանորեն հասարակական բնույթ ունեն և չեն կարող բացարձակ անկախ լինել իրականությունից, ապա պետք է ճիշտ ըմբռնել դրանց հարաբերական անկախությունը։

Գիտելիքների և դրանց սահմանման բազմազանությունը հնարավոր չէ հանգեցնել միայն առանձին չափանիշների ու պահանջների բավարարման։ Դա բխում է գիտելիքի բնույթից, աշխարհայացքային ըմբռնումներից։ Սկզբունքորեն պետք է գիտելիքի մեջ տեսնել և՛ ծագումնաբանականը, և՛ գոյաբանականը, և՛ պատմականն ու տրամաբանականը, ընդհանրապես գիտական և հասարակական հիմքերը, իրականության կապերն ու կողմերը, պահանջներն ու սկզբունքները, որոնք դրանցում կան «վերածված ձևով»։ Ինչպիսին



էլ որ լինի գիտելիքը, ինչ բնագավառի էլ վերաբերի կամ դրանք արտացոլի, ինչպիսի խիզախ ստեղծագործական անհատական և կոլեկտիվ մտքի թռիչք էլ հանդիսանա, մարդկային նյութական և հոգևոր գործունեության արդյունք է, և ընդհանրության այդ իսկ մակարդակում էլ չափվում է։

Ընդունելով գիտելիքների հասարակական բնույթը, չպետք է մոռանալ ու անտեսել դրանց առանձնահատկությունները, ներկայացվող պահանջները և հատկապես նյութականից տարբեր դրանց ձևը, կառուցվածքը, բովանդակությունը և այլն։

Գիտելիքները չպետք է նույնացնել նյութականի հետ, առավել ևս սահմանել միայն դրա չափանիշներով։ Մյուս կողմից դժվարություններ և բարդություններ են ստեղծվում, որովհետև չկան այսպես կոչված մերկ չափանիշներ։ Գիտելիքները իդեալական կառույցներ են, արտացոլումներ։

Գիտելիքների գոյաձևերը տարբեր են ամենաթանկարժեք ու ամենանուրբ նյութական կառուցվածքից ու հյուսվածքներից։ Գիտելիքները յուրահատուկ մտավոր երևույթներ են, ֆենոմեններ, թեև դրանց միջոցով են ստեղծվում սինթետիկ սիրտն ու կիբեռնետիկական սարքը, կամուրջն ու հրթիռը, որոնք միմյանցից ակնհայտորեն տարբեր են, բայց նաև ինչ-որ հիմքի վրա՝ նման։

Նույն անալոգիան կարելի է շարունակել գիտելիքներին ներկայացվող չափանիշների ասպարեզում։ Թեև այդ չափանիշները բնութագրում են գիտելիքի խորությունը, կշիռը, ուժը, հիմնավորվածությունը, սակայն բոլորովին էլ նման չեն մետրին, գրամին, ամպերին և այլն։ Այլ կերպ ասած՝ պետք է ճիշտ հասկանալ գիտելիքի և իրականության համապատասխանությունը, որը ֆիզիկական նմանության հիման վրա չէ, որ ստեղծվում է, այլ՝ իմացաբանական պատկերի։

Դժվար է, եթե ոչ անհնարին, վերջնական լիարժեք համարել գիտելիքների գոյություն ունեցող չափանիշներն ու բնորոշումները։ Նշենք միայն, որ գիտության ամենատարածված սահմանումը հենց գիտելիքի միջոցով է, այսինքն՝ իմացաբանական է։ Տվյալ դեպքում մեզ բավարարում է գիտության այն սահմանումը, ըստ որի գիտությունը իմացության և գործունեության ոլորտ է։ Գիտական գործունեությունը միտում է բնության, հասարակության և մտածողության վերաբերյալ նոր գիտելիքների արտադրությանը և օգտագործմանը, ներառում է բոլոր պայմաններն ու մեթոդները։ Գոյություն ունեցող ծայրահեղ, նույնիսկ հակադիր մոտեցումներից, հայեցակետերից, տեսանկյուններից նշենք միայն, որ նեոպոզիտիվիստական չափանիշները միակողմանի են, իդեալիստական։

Գիտելիքների չափանիշների շարքին են դասվում վերիֆիկացիայի, Կ. Պոպպերի կողմից առաջադրվող ֆալսիֆիկացիայի սկզբունքները, պարզության պահանջը։ Յուրօրինակ չափանիշներ են նաև Թ. Կունի «հարացույցը», Ի. Լակատոսի հետազոտական ծրագրերը և այլն։

Գրականության մեջ ամենից շատ հանդիպում ենք վերիֆիկացիայի սկզբունքին։ Հայտնի է, որ տրամաբանական պոզիտիվիզմը, հատկապես վիեննական խմբակը, այն առաջադրեց և համարեց ասույթների գիտական իմաստավորման չափանիշ։ Վերիֆիկացիան պահանջում է ասույթի ճշմարտության ստուգում՝ վերջավոր թվով ասույթների հանգեցման կամ բխեցման միջոցով։ Ի վերջո դրանք հաստատվում են անհատական զգայական տվյալների (արձանագրական նախադասությունների) միջոցով։ Այսինքն՝ աշխարհի վերաբերյալ ամեն մի դրույթի, պնդման ճշմարտացիությունը պետք է վերջին հաշվով հաստատվի զգայական տվյալների հետ այդ դրույթի, պնդման առդրմամբ։ Վերիֆիկացիայի սկզբունքի այդպիսի ըմբռնումը մի կողմ է թողնում ընդհանուր բնության օրենք արտահայտող բազմակողմանի նախադասությունները։ Նույնիսկ դաշտի ֆիզիկական հասկացությունը չի վերիֆիկացվում, էլ չենք խոսում փիլիսոփայության հիմնական հարցի մասին։ Կան չափանիշներ, որոնք, անկասկած, կարելի է գիտելիքի որոշ բնագավառների համար անառարկելիորեն անփոխարինելի համարել (օրինակ՝ դիտարկելիությունը)։ Այդ սկզբունքին մեծ ուշադրություն են դարձնում և առավել մեծ տեղ են տալիս ֆիզիկոսները և հատկապես՝ աստրոֆիզիկայի բյուրականյան դպրոցը։ Դա հիմնովին հասկա-

*նալի է։ Դիտարկումը մեթոդ է, գործողության տեսակ, գործունեություն՝ ուղղված ամենատարբեր նպատակների։ Տվյալ դեպքում դիտարկումը մեզ հետաքրքրում է որպես չափանիշ։ Այն գիտելիքի հավաստիության չափանիշներից է, դրա հաստատման միջոց։ Ավելին. դիտարկումը ապացուցողական հատկություն ունի, հանդես է գալիս որպես փաստ, գիտելիքի ստուգման եղանակ և այլն։ Սակայն դիտարկումը տարածել այնպիսի գիտելիքների վրա, ուր չկան զգայական, տարածական այնպիսի հնարավորություններ, ինչպես ասենք հանրահաշիվը, գիտելիքի այլ բնագավառներ, ինչ խոսք, որ դժվար է, եթե ոչ անհնարին։ Ինչ վերաբերում է պարզության, ակնհայտության չափանիշներին, որոնց մեծ ուշադրություն նվիրեցին Ռ. Դեկարտը և Ա. Էյնշտեյնը, գիտական մեթոդների հետագա ուսումնասիրողները, ապա այն ևս ունի իր հարաբերական սուբյեկտիվ կողմերը։*

*Առավել ընդհանրական չափանիշ է հանդես գալիս հարացույցը (պարադիգմ)։ Ամերիկյան գիտաբան Թ. Կունի տեսանկյունից հարացույցները անհամաչափելի են (տե՛ս* Т. Кун. Структура научных революций. М., изд. «Прогресс», 1977 г., стр. 258*)։ Այստեղ ևս մի շարքում են դրվում սոցիալ-տնտեսական և կրոնաաշխարհայացքային պահանջները։ Մինչդեռ դրանց տարբերակումը նույնպիսի գիտական անհրաժեշտություն է, ինչպես մյուս պահանջները։*

*Գիտական գիտելիքներից առաջին հերթին պահանջվում է, որ դրանք լինեն հավաստի, ստույգ, ճշգրիտ, խոր, դիպուկ, համակողմանի, ընդհանուր, համակարգված, պարզ, ակնհայտ, անկասկածելի և այլն։ Էմպիրիկ մակարդակում գիտելիքներից պահանջվում է գործնականորեն և փորձնականորեն ստուգելիություն, տեսականում՝ փաստարկված, ապացուցված, հիմնավոր և ամբողջական լինել և այլն։ Բ. Ռասելը, ընդհանուր առմամբ գտնում էր, որ մարդկային գիտելիքները հավաստի ու ճշգրիտ չեն, մասնավոր են, իսկ Ա. Բերգսոնը և հատկապես փիլիսոփայական էկզիստենցիալիզմի ներկայացուցիչները բացասական են արժեքավորում գիտելիքները՝ անկախ նրանց բովանդակությունից։ Պրագմատիստների համար գիտելիքները արդարացնողը շահն է, օգուտը։*

*Ակնհայտ է, որ գիտելիքներն ունեն ոչ միայն տրամաբանական, ռացիոնալ, էմպիրիկ, փորձնական, այլև փիլիսոփայական-աշխարհայացքային, հասարակական չափանիշներ, արժեքավորումներ, գնահատումներ, որոնք յուրահատուկ զտիչների նման տարրորոշում են դրանք։ Ցանկացած մակարդակի գիտելիքի աշխարհայացքային կողմերն այժմ ընդունում են նույնիսկ մատերիալիստական փիլիսոփայության հակառակորդները (տե՛ս* Философские и мировоззренческие проблемы современной науки. М., 1981 г., стр. 11*)։ Բնագիտական տեսությունների հնարավոր մոդելներում ևս որոշակի տեղ է հատկացվում հասարակական-փիլիսոփայական հարցերին։ Իրողություն է, երբ գիտելիքի ոչ ադեկվատ ընկալման և գնահատման հետևանքով կանխվել կամ ուշացվել է նրա մուտքն ու շրջանառությունը գիտական ինֆորմացիայի մեջ։ Այդպիսի օրինակ կարող է հանդիսանալ նույնիսկ Միլլերի հումորն այն կապակցությամբ, թե ինչպես ընկալեցին ու գնահատեցին Նյուտոնի հայտնագործած տիեզերական ձգողականության օրենքը բրիտանական կառավարական հանձնաժողովում։ Նյուտոնը իր նոր իդեան 22 բառով շարադրում և ուղարկում է Կարլոս Թագավորին։ Այն որոշ մեկնաբանություններով հասնում է նորին մեծության՝ հետազոտությունների և զարգացման հանձնաժողովին, նոր գաղափարների ուսումնասիրության կոմիտեին, հակաբրիտանական իդեաների կանխման ենթակոմիտեին։ Նախաքննության ընթացքում պարզվում է, որ հակաբրիտանական գաղափարներ չկան, Նյուտոնը երդվում է, որ նորին մեծության նկատմամբ լոյալ օպոզիցիայի անդամ չէ, անբարոյական գրքեր չի գրել... Ռուսաստանում չի եղել։ Վերջում նա կարճ հաղորդում է անում Կեպլերի օրենքների և «ընկնող խնձորի դեպքից ծնված հիպոթեզի մասին»։ Կոմիտեի անդամներից մեկը ցանկանում է իմանալ, թե ինչ միջոցներ կարող է առաջարկել Նյուտոնը Անգլիայում խնձորները աճեցնելու գործը բարելավելու համար։ Նյուտոնը սկսում է բացատրել, որ խնձորն իր հիպոթեզի բաղկացու-*



*ցիչ մասը չէ։ Հանձնաժողովի մի քանի անդամներ ընդհատում են նրան. միասնաբար արտահայտվելով անգլիական խնձորները բարելավելու նախագծի կողմը։ Վերջում հրավիրում են Նյուտոնին պայմանագիր կնքելու դրա վերաբերյալ (տե՛ս* Физики продолжают шутить. М., 1968 г., стр. 121*)։*

*Գիտական գիտելիքը չափվում է ոչ միայն նեղ գիտական չափանիշներով, այլև հասարակական-տնտեսական, բարոյական, գեղագիտական պահանջներով և այլն։ Հասարակությունը գիտելիքներից ակնկալում է, որ դրանք կատարեն ոչ միայն ճանաչողական ֆունկցիա, այլև նպաստեն առաջադիմությանը, լինեն օգտակար, կիրառելի մոտավոր և հեռավոր ապագայում։ Ինչպե՞ս կարելի է գիտական չափանիշների կողքին անտեսել հասարակական չափանիշները, օրինակ, ասենք միջուկային ֆիզիկայի առնչությամբ հաշվի չառնել ատոմային ռումբի, կենսաբանության մեջ՝ մանրէական զենքի, քիմիայում՝ նյարդապարալիտիկ միջոցների առկայությունն ու վտանգավորությունը։ Իհարկե, բոլորովին այլ է, երբ հասարակականի տակ հասկացվում է կրոնաաշխարհայացքային, դոգմատիկ այլ ձևերով գիտելիքների զարգացմանն ու պրոգրեսին խոչընդոտող հանգամանքները կամ ընդունել, որ գոյություն ունի միայն մեկ չափանիշ՝ գիտելիքների համապատասխանությունը դասակարգային կամ խմբակային նեղ շահերին։ Գիտության, գիտական գիտելիքների նկատմամբ հասարակության հետաքրքրությունը հասկանալի է բազմաթիվ պատճառներով, սակայն «խանգարո՞ւմ է այն գիտությանը, թե ոչ» հարցին բազմաթիվ նշանավոր գիտնականների տված պատասխաններից առանձնացնենք ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանինը. «Այդպես կարող են մտածել այն գիտաշխատողները, որոնք իրենց ստեղծագործությունը համարում են խիստ անձնական գործ։ Եթե գիտնականն աշխատում է հասարակության համար, իսկ ես կարծում եմ, որ առաջավոր գիտնականներից շատերը, ծայրահեղ դեպքում սովետական խոշոր գիտնականները, գիտակցաբար ծառայում են հասարակությանը, ապա նույնիսկ չի կարող խոսք լինել, որ հասարակության հետաքրքրությունը խանգարի, ընդհակառակը, նրանք հասարակության հետ կիսում են հաջողությունները»* (Наука и общество. М., 1969 г., стр. 118)։

*Ճշմարտության բացահայտման, գնահատման գիտական ու հասարակական չափանիշների, պահանջների, սկզբունքների համատեղ ու միասնական գործառնությունը միայն ցանկալի չէ, այլ իրական, պատմական գործընթացով ապացուցված ու հիմնավորված։ Տրամաբանական, ձևական, քանակական և մյուս համակարգերի կողքին լիիրավ հանդես է գալիս հասարականը։ Պրակտիկան և նույնիսկ տեխնիկան ճշմարտության ու գիտելիքի չափանիշների դեր են կատարում։ Դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունից չափանիշների այդ միասնական կիրառությունը համապատասխանում է տվյալ ժամանակաշրջանի ընդհանուր մտածողության, գիտական, սոցիալ-կուլտուրական համակարգերին, նորմերին, իդեալներին ու մակարդակին։ Դրանք զարգանում են, փոփոխվում, կատարելագործվում, ճշգրտվում իրականության ու ճանաչողության զարգացմանը զուգահեռ։ Գիտելիքների զարգացման ու գնահատման պատմության մեջ միայն պայմանականորեն կարելի է առանձնացնել ներքին ու արտաքին կողմերը, քանի որ դրանք գտնվել են կենդանի, դիալեկտիկական միասնության մեջ։ Այդպիսին է նաև համապատասխան չափանիշների կիրառելիությունը։ Ամեն մի ժամանակաշրջանին համապատասխանում է մտածողության, գիտականության, սոցիալ-կուլտուրական պահանջներ, նորմեր, սկզբունքներ, չափանիշներ։ Մարդկանց հասարակական պատմական պրակտիկան հանդես է եկել որպես գիտելիքի ծագման, գնահատման հիմք ու չափանիշ։ Հասարակական պահանջները կողմնորոշել են գիտելիքների զարգացումը։*

*Պրոբլեմի մեջ էական նշանակություն ունի ո՛չ միայն գիտելիքին ներկայացվող չափանիշի բնույթը, այլև թե դրա որ տարրին է այն ներկայացվում. ամբողջական գիտությանը, որևէ բնագավառի, գիտական տեսությանը, առանձին ուսմունքի, օրենքի, փաստի, մինչև անգամ դատողությանը կամ հասկացությանը։ Այնուհետև այն դուրս է գալիս ձևական տրամաբանության սահ-*

մաններից, միայն բխեցման ու համապատասխանեցման բնագավառներից։

Բնագիտության մեջ գիտականության կարևոր հայտանիշ ու չափանիշ է համարվում նրա փորձարարական հիմքը։ Այս հարցադրման հետ համաձայն են հետազոտողների գերակշռող մեծամասնությունը, եթե ոչ բոլորը։ Սակայն, ինչպես գիտենք, տարաձայնությունը հենց փորձի, փորձարարական հիմքի ըմբռնման մեջ է։ Ժամանակին Վ. Ի. Լենինը, քննադատելով էմպիրիոկրիտիկներին, ցույց տվեց, որ փորձի նրանց իդեալիստական հասկացությունը տանում է փակուղի։ Փորձը, նրա սուբյեկտիվ կողմը չպետք է միակողմանի ընկալվի։ Բացի դրանից այն չպետք է բացարձականացվի, որովհետև լրիվ ու ավարտուն չէ։ «Ամենահասարակ, ինդուկտիվ ճանապարհով ստացված ամենահասարակ ճշմարտությունը միշտ թերի է, որովհետև փորձը միշտ անավարտ է» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 29, էջ 195)։

Գիտականության պահանջների և չափանիշների ուսումնասիրությունը և մեկնաբանությունը տարբեր ուղիներով է ընթացել։ Դեռևս Ի. Կանտը առաջադրեց այնպիսի դրույթներ, որ գիտելիքները լինեն հավաստի, ճշգրիտ, ունենան ընդհանուր, տրամաբանորեն անհակասական և անառարկելի բնույթ։ Գիտական գիտելիքի հիմնավորման պրոբլեմը դրվեց խորությամբ, վերլուծվեց, թե ինչպես են հնարավոր մաթեմատիկան, բնագիտությունը, փիլիսոփայությունը (տե՛ս И. Кант. Соч,, т. 4, ч. I, стр. 95)։

Հայտնի է, որ նեոկանտականները և նեոպոզիտիվիստները բացարձականացրին բնական գիտությունների ու դրանց մեթոդների և հասարակագիտության տարբերությունները։ Գիտական համարեցին միայն առաջինը։ Նրանց կարծիքով անհամաչափելի են բնական օրենքն ու հասարակական իրադարձությունը, պատմությունը։ Նեղ բնագիտական չափանիշները եթե կիրառելի չեն, պնդում են նրանք, ուրեմն փիլիսոփայական, հասարակական պահանջները նշանակություն չունեն։ Պատմության դասերը, գիտության զարգացումը ապացուցեցին, որ նրանք իրավացի չեն։ Բոլորովին պատահական չէ, որ վերջին ժամանակներս գիտելիքների, գիտության զարգացման պատմությանն է ապավինում պրոբլեմի փիլիսոփայական հարցերն ուսումնասիրողների գերակշռող մասը։

«Պատմական» ուղղության հայեցակետը դիտվում է որպես ընդդիմախոսություն նեոպոզիտիվիստական միակողմանի «ռացիոնալ» փորձերին, հեռացում և որոշ դեպքում նաև հակադրում նրանց կողմնորոշումներին։

Այն հարցը, թե երբ և որտեղ կարելի է կիրառել մաթեմատիկականը, հասարակագիտականը, խիստ ճշգրտման կարիք է զգում։ Դժվար է չհամաձայնել, որ կենսաբանության, քիմիայի, ֆիզիկայի, մաթեմատիկայի բնագավառների գիտելիքները ու դրանցով կատարվող գործողությունները էականորեն տարբերվում են միմյանցից և հասարակագիտական դիսցիպլիններից։ Տարբերվում են մեթոդներով, բնույթով, ճշգրտությամբ և բազմաթիվ այլ պարամետրերով։ Ավելին. այսպես կոչված զուտ էմպիրիկ կամ զուտ տեսական գիտելիքների չափակարգերը ուրիշ են։ Չափման և գնահատման ընթացքում առավելությունները տրվում են քանակական, մաթեմատիկական ճշգրիտ չափանիշներին։ Էմպիրիկի գործնական ապացուցողականության հնարավորությունները համարվում են նրա առավելությունները։ Այստեղ, ինչ խոսք, դիտարկելիության, ստուգման, մետրիկական ճշգրտության և մյուս հնարավորություններն այլ են, քան տեսական բնագավառում հիմնավորվածության, փաստարկվածության հնարավորությունները։ Ցանկացած վերլուծություն անհստակ կթվա, եթե ցույց չտրվի կոնկրետ պատմությունը, հասարակական պրակտիկան։

Ձևական ու բովանդակային չափանիշների կիրառելիության փորձի հանրագումարը հեռու է վերջնական ու ավարտուն լինելուց։ Մտավոր ու նյութական էքսպերիմենտները աստիճանաբար հղկում ու կատարելագործում են դրանք։ Ուրեմն, գիտելիքը չափվում է նաև մարդկային ճանաչողական ընդունակություններով, նրա վերափոխող գործունեությամբ։ Սոցիալականը գիտելիքների համար հանդես չի գալիս միայն որպես ֆոն, այլ որպես վերածված և ուղղակի չափանիշ։



Գիտելիքների ձևական չափանիշների շարքում ուրույն տեղ ունի քանակական չափումը։ Սակայն չափանիշների մյուս համախմբերը վերաբերում են գիտելիքների խորությանը, հարստությանը, բովանդակալիությանը։ Դրանց շարքում պետք է հասկանալ ոչ միայն որպես քանակական հարստություն, այլև որպես առավել լայն ինֆորմացիա պարունակող գիտելիք։

Գիտական գիտելիքից պահանջվում է, որ այն ոչ միայն արձանագրի, նկարագրի, այլև բացատրի, հիմնավորի, ապացուցի և այլն։ Արձանագրելը գիտական նշանակություն ունի նույնիսկ վիճակագրական բնույթի օրինաչափություններ արտահայտող գիտելիքների համար։ Այն հնարավորություն է ստեղծում պատճառական, ֆունկցիոնալ, կառուցվածքային կապերի ու հարաբերությունների բացահայտման նպատակով։ Բացատրություններում դրսևորվում են գիտելիքի ապացուցողական բնույթի տարրերը։ Իսկ ինչ մնում է ապացուցմանը, ապա այն կատարում է տրամաբանական պահանջների գործողությունների դեր։ Գիտելիքի հիմնավորվածությունը վերջին ժամանակաշրջանում ուսումնասիրությունների կիզակետում է, հատկապես մաթեմատիկայում։ Այն պայմանավորված է բազմությունների տեսությամբ, ուր բացահայտված են այսպես կոչված պարադոքսները։

Հիմնավորումը գիտության տրամաբանության և մեթոդաբանության մեջ գիտելիքի առանձին ձևերի գնահատումն է ըստ այդ համակարգի համապատասխան ֆունկցիաների, նպատակների, խնդիրների։ Գիտելիքի ձևայնացած տրամաբանական, մաթեմատիկական մոդելներում հիմնավորումը դիտվում է որպես կապի ձև միմյանց և սկզբնադրույթների միջև։

Գիտական գիտելիքի կառուցվածքային, ֆունկցիոնալ, կազմակերպական ընդհանուր չափանիշներից զատ գոյություն ունեն նաև գիտելիքի առանձին տարրերի, հասկացությունների տարբերակման չափանիշներ։ Օրինակ, «ատոմ», «պուլսար», «արժեք» և այլ հասկացությունների գիտականությունը հասկանալու համար հարկ է, որ դրանք մեկուսի չդիտարկվեն։ Գիտական են համարվում այն հասկացությունները, որոնք սահմանված են տվյալ տեսության, գիտության շրջանակներում, գործածվում են միայն տվյալ սահմանման համապատասխան։ Ակներև է, որ ոչ մի սահմանում լրիվ ավարտուն, վերջնական չէ։ Ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, ամեն մի սահմանում նեղ է, մոտավոր, ոչ լրիվ։ Սահմանումները եզակի չեն, «կարող են շատ լինել, որովհետև առարկաները շատ կողմեր ունեն» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 29, էջ 264)։

Գիտելիքի առավել ամբողջական տարրը տեսությունն է։ Տեսությունները տարբերվում են կառուցվածքային, մեթոդական, բովանդակային և այլ հատկանիշներով։ Ամենատիպականը աքսիոմատիկ-դեդուկտիվ կառուցվածք ունեցող տեսություններն են։ Դրանք գիտելիքի ձևական համակարգեր են, որոնց ներկայացվում են այնպիսի պահանջներ ու չափանիշներ, ինչպիսիք են անհակասականությունը, աքսիոմների անկախությունը, լրիվությունը և այլն։

Լրիվությունը ձևական գիտելիքի այն պահանջն է, որով ապահովվում է ցանկացած դրույթի ապացուցման հնարավորությունը։ Ֆունկցիոնալ լրիվությունը վերաբերում է բխեցման կամ հանգեցման կանոնների ու պայմանների համակարգին։ Եթե տեսության մեջ հնարավոր է ցանկացած դրույթի ճշմարտացիությունը կամ կեղծությունն ապացուցել, նշանակում է աքսիոմների ընտրված համակարգը լրիվ է։

Ինչ վերաբերում է հակասականության կամ անհակասականության սկզբունքին, ապա դրա հիմնական բովանդակությունն այն է, որ եթե տեսությունը պարունակում է ժխտման գործողություն, ապա նրա սահմաններում հնարավոր չէ որևէ դրույթի և դրա ժխտականի միաժամանակ ճշմարտացիության ապացուցումը։

Գիտելիքների գիտական և հասարակական չափանիշների փոխհարաբերությունը ճիշտ որոշելու համար անհրաժեշտ է դրանց կապը դիտել գործնական խնդիրների լուծմանը զուգահեռ։

Գիտելիքների մի մասը անմիջական կապի մեջ է պրակտիկ խնդիրների լուծման հետ, այդպես եղել է ոչ միայն այն ժամանակ, երբ գիտական գիտելիքները ավելի մոտ էին կանգնած, ասենք, երկրագործությանը, ծովագնա-

ցության, բնական երևույթների ճանաչողությանը և այլն: Այդպես է նաև այժմ: Գիտելիքների մյուս մասը անմիջական կապ չունի, կիրառելիությունը չեշտված չէ և դժվար է, այսպես կոչված, անմիջական պետքականության չափանիշով չափել: Բնության օրենքների հիմնարար օրինաչափությունների բացահայտումը ճանաչողական, զուտ գիտական կողմնորոշում ունի: Ահա թե ինչու նման գիտելիքների մասին խոսելիս չի կարելի օգտվել գործնական անհրաժեշտության չափանիշներից: Սխալ կլինի դրանց մոտենալ միայն անմիջական օգտակարության տեսանկյունից: Դրանից է, որ այդ տիպի գիտելիքները դիտարկվում են որպես մտքի խաղ, մինչդեռ գիտելիքների մյուս ասպարեզներում շեշտվում է տնտեսական օգտակարության արդյունավետության չափանիշը, ինչպես նաև բարոյական, էսթետիկական նորմերը: Հետզհետե ավելի ցայտուն են դառնում տնտեսական չափանիշները, իսկ բարոյական հատկանիշների շարքում, այսպես կոչված, հումանիստական չափանիշները: Ինչ վերաբերում է հասարակական գիտություններին, այստեղ պահանջն ավելի անմիջական է՝ հասարակության դասակարգային շահերի չափանիշներով կողմնորոշվելը: Մարքսը գիտությունը համարում էր որպես անմիջական արտադրանք, իսկ արտադրությունը՝ կիրառական գիտություն: Հասարակական պահանջը գիտելիքի նկատմամբ դրսևորվում է ոչ միայն որպես չափանիշ, այլև շարժիչ ուժ: Էնգելսը նշել է, որ եթե հասարակությունը տեխնիկայի զարգացման պահանջ է զգում, ապա այն գիտությունն առաջ է շարժում ավելի, քան տասնյակ համալսարաններ:

Օգտակարությունը և արդյունավետությունը ևս չպետք է դիտել միակողմանի ու բացարձականացնել: Գիտությունն ունի պրագմատիկական, ուտիլիտար պահանջներ ու չափանիշներ: Ոչ ոք չի հերքում օգտակարությունը: Անդրադառնալով դրանց ճիշտ ըմբռնմանն ու մեկնաբանություններին՝ Վ. Ի. Լենինը Ա. Ռեյի ժամանակակից փիլիսոփայությունը գրքի էջերում ընդգծել է. «...Երբ մենք մեզ դիտում ենք որպես տիեզերքի միջավայրում գործող օրգանիզմ, ճիշտ է, որ մենք չենք կարող պրակտիկայի բնագավառն անջատել ճշմարտության բնագավառից, որովհետև... մենք չենք կարող ճշմարտությունն անջատել փորձարարական ստուգումից: Ճշմարիտ են միայն այն կոնցեպցիաները, որոնք հաջողություն ունեն: Բայց դեռ պետք է իմանալ՝ նրանք ճշմարիտ են, որովհետև հաջողություն ունեն, թե՞ նրանք հաջողություն ունեն, որովհետև ճշմարիտ են: Պրագմատիզմը միշտ հակվում է այն բանին, որ Երկընտրանքը լուծի առաջին իմաստով: Ողջախոհությունը, ըստ երևույթին, կարող է այն լուծել միայն երկրորդ իմաստով...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 29, էջ 621—622):

Գիտելիքների գիտական և հասարակական չափանիշների միասնական կիրառությունը ապահովում է ճշմարտության լայն ըմբռնում, համապատասխանության ու անհրաժեշտության սկզբունքների ներդաշնակություն, նյութական և հոգևոր գործունեության ճիշտ համատեղում:



# ՇՆՈՐՀԱԿԱԼ ԳՈՐԾ

ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ մարդու, նրա աշխատանքի ու կենցաղի պայմանների, նրա հոգևոր զարգացման նկատմամբ կուսակցության հանապազօրյա, կարևորագույն ծրագրային խնդիրներից է:

ՍՄԿԿ XXVI համագումարը առողջապահական օրգաններից պահանջեց «...անել ամեն ինչ, որ սովետական մարդը միշտ և ամենուրեք կարողանա ժամանակին ստանալ որակյալ և սրտացավ բուժօգնություն»: Ինչպես շեշտեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովը, այս դեպքում արդեն «...խոսքը վերաբերում է մարդկանց առողջությանը, այսինքն՝ ինչպես սոցիալական, այնպես էլ տնտեսական առումով հույժ կարևոր գործի»: Ահա ինչու ավելի ու ավելի պատասխանատու ու բարդ է դառնում առողջապահության աշխատողների, բժշկական գիտությունների դերը:

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության գործունեության հիմնական նպատակներից է մարդկանց առողջության պահպանումը. դրա վկայությունն է 1978 և 1982 թթ. ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Բնակչության առողջության պահպանումը բարելավելու ուղղությամբ լրացուցիչ միջոցառումների մասին» որոշումները:

Անցած հնգամյակում առողջապահության ու բժշկական գիտության, ինչպես և ողջ ժողովրդական տնտեսության զարգացումն ուղղվեց աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացմանը: Կուսակցական և սովետական օրգանների հոգածու ղեկավարությամբ, հասարակայնության ակտիվ մասնակցությամբ ամրապնդվեց առողջապահության նյութատեխնիկական ու կադրային բազան, բարձրացավ բժշկական և դեղորայքային սպասարկման մակարդակը, իրականացվեցին բուժկանխարգելիչ նոր միջոցառումներ, զարգացավ բժշկական գիտությունը: Այդ բոլորի համար տնտեսական հիմք ծառայեցին առողջապահությանը տրամադրվող՝ օրեցօր աճող միջոցները, որոնք միայն պետական բյուջեով հինգ տարում կազմել են 66 միլիարդ ռուբլի կամ 14 միլիարդով ավելի, քան իններորդ հնգամյակում: Շարք մտան նոր հիվանդանոցներ՝ 323 հազար մահճակալով և պոլիկլինիկաներ՝ մեկ հերթափոխում 650 հազար հաճախման համար: Բժշկական հիմնարկություններ կառուցվեցին նաև արդյունաբերական ձեռնարկությունների, սովետական ու կոլեկտիվ տնտեսությունների հաշվին: Տասնմեկերորդ հնգամյակի սկզբին երկրում ստացիոնար բուժհիմնարկությունների մահճակալային ֆոնդը կազմել է 3.329 հազար կամ 10 հազար բնակչին՝ 125 մահճակալ: Աճել է հիվանդանոցային կարողությունը, որը հնարավորություն է ընձեռել ավելի ճիշտ տեղաբաշխելու կադրերը, արդյունավետ օգտագործելու բժշկական սարքավորումները: Նկատելի է առաջընթացը սրտաբանության, ուռուցքաբանության, ստոմատոլոգիայի, օֆտալմոլոգիայի, նարկոլոգիական ու մասնագիտական ծառայության այլ ասպարեզներում: Միջոցներ են ձեռնարկվել մոր և մանկան առողջության պահպանման գործի հետագա բարելավման, ինչպես նաև սանիտարահակահամաճարակային ծառայության առավել զարգացման նպատակով:

Կուսակցության և կառավարության ձեռնարկած սոցիալ-տնտեսական խոշոր միջոցների շնորհիվ ակնառու հաջողություններ են ձեռք բերվել նաև Հայկական ՍՍՀ ազգաբնակչության առողջապահության գործում: Որոշակի աշխատանք է կատարվել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ 1977 թ. «Ժողովրդական առողջապահության հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշմամբ նախատեսված՝ մարդկանց առողջության պահպանման նպատակով կոմպլեքս միջոցառումների իրականացման մարզում: Նշանակալիորեն հարստացել է հանրապետության առողջապահության նյութատեխնիկական բազան, ընդլայնվել է ստացիոնար բուժհիմնարկությունների ցանցը: 1978—1981 թվա-

կաններին մահճակալների թիվն ավելացել է 1.180-ով, հասել մոտ 27 հազարի: Կառուցվել են ամբուլատոր-պոլիկլինիկական նոր հիմնարկություններ՝ մեկ հերթափոխում 4.500 հաճախման համար, այդ թվում՝ 11 ամբուլատորիա գյուղական վայրերում: Հանրապետության բժշկական ուսումնական հաստատություններում պատրաստվել են մոտ 1.800 բժիշկ և 8.600 միջին բուժաշխատող:

Բարձրացել է բուժօգնության կազմակերպման մակարդակն առողջապահության առաջնային օղակներում (պոլիկլինիկական ծառայություն): Կուսակցության XXVI համագումարում հատկապես նշվեց այդ օղակներն ամրապնդելու մասին: Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստրությունը մշակել է կոմպլեքս միջոցառումներ՝ պոլիկլինիկաների գործունեությունը կատարելագործելու նպատակով: Հատուկ ուշադրություն է նվիրվել բուժախտորոշիչ աշխատանքների բարելավմանը, ինչպես և վերականգնողական բուժման կազմակերպմանը: Ավելի լայնորեն են օգտագործվում հիվանդների հետազոտման ապարատուրային, գործիքային ու լաբորատոր մեթոդները:

Ապախոշորացվում են թերապևտիկ և մանկաբուժական տեղամասերը, մեկ տեղամասում մինչև 14 տարեկան երեխաների թիվը հասցնելով մինչև 800-ի, ձեռնարկվում են հիվանդությունների կանխարգելմանն ու ազգաբնակչության դիսպանսերացմանն ուղղված միջոցներ: Զգալիորեն բարելավվել է մասնագիտական բուժօգնությունը, ստեղծվել է սրտաբանական ծառայություն: Երևանի № 3 մանկական բազմապրոֆիլ հիվանդանոցի բացմամբ ընդլայնվել է երեխաների վիրաբուժական և թերապևտիկական օգնության ծավալը: Միջոցներ են ձեռնարկվել ստոմատոլոգիական ծառայության հետագա կատարելագործման ասպարեզում:

Սոցիալիստական հասարակարգի օրենք է դարձել մայրության ու մանկության պահպանումը: Այդ մասին են վկայում վերջին տարիներս կուսակցության ու կառավարության ընդունած որոշումները: Դրանցից մեկը՝ «Երեխաներ ունեցող ընտանիքներին պետության կողմից ցույց տրվող օգնությունն ուժեղացնելու միջոցառումների մասին» որոշումը, նախատեսում է տնտեսական ու սոցիալական բազմապլանային միջոցառումներ, որոնք հնարավորություն են ընձեռում մայրերին՝ նպաստավոր պայմաններում դաստիարակելու երեխաներին: Հանրապետությունում շարունակվում են աշխատանքները մոր ու մանկան առողջության պահպանման գործը բարելավելու նպատակով: Կատարելագործվել են երեխաների ու հղի կանանց նկատմամբ սահմանվող դիսպանսեր հսկողությունը և կանխարգելիչ աշխատանքների կազմակերպման ձևերը: Բացվել են հղիության պաթոլոգիայի, նորածինների բուժման, անհասների խնամքի, վերակենդանացման բաժիններ, ինտենսիվ բուժման հիվանդասենյակներ: Ընթացիկ հնգամյակի առաջին տարիներին շահագործման են հանձնվել Երևանի № 3 մանկական ստոմատոլոգիական պոլիկլինիկան, «Արզնի» ու «Սևան» առողջարանների դպրոցական մասնաշենքերը, Սիսիանի ու Ղափանի կենտրոնական շրջանային հիվանդանոցների մանկական պոլիկլինիկական բաժանմունքները: Ընթացքի մեջ է «Օշական» առողջարանի և Երևանի Սովետական շրջանի ծննդատան նոր շենքերի շինարարությունը:

Սովետական առողջապահության գլխավոր նպատակը եղել և մնում է հիվանդությունների կանխարգելումը: Հիվանդությունների կանխումը, ազգաբնակչության հիգիենիկ դաստիարակությունը, առողջ ապրելակերպի ապահովումը առողջապահության ողջ սիստեմի կարևոր խնդիրներն են: Այդ նպատակին են ուղղված և սանիտարահակահամաճարակային ծառայության զարգացման մարզում ձեռնարկվող միջոցները: Ուժեղացվել է պետական սանիտարական հսկողությունը շրջակա միջավայրի պահպանման ասպարեզում նախատեսվող միջոցառումների կատարման, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման վրա:

Ավելի լիարժեք են բավարարվում բնակչության և բժշկական հաստատությունների պահանջները դեղամիջոցների հարցում: Կատարելագործվել են դեղատնային հիմնարկությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները: Ժողովրդական տնտեսության զարգացման պլանի համաձայն, տասնմեկերորդ հնգամյակում հանրապետությունում կազմակերպվելու է 25 նոր դեղատուն: Կառուցվելու են 10,2 հազար քառակուսի մետր մակերեսով դեղապահեստներ՝ Երևանում, Լենինականում, Կիրովականում:

Բժշկագիտության տեսության ու պրակտիկայի զարգացման գործում նշանակալի ավանդ են ներդրել մեր հանրապետության բժիշկ-գիտնականները: Հիմնարար հետազոտությունների հետ միասին հաջողություններ են ձեռք բերվել կանխարգելիչ ու կլինիկական բժշկության կոմպլեքս պրոբլեմների մշակման խնդրում: Ներդրվել են մի շարք տարածված հիվանդությունների կանխարգելման, ախտորոշման ու բուժման նոր, արդյունավետ մեթոդներ: 1982 թ. մարտի 24-ին Երևանում հրավիրվեց ՍՍՀՄ առողջապահության մի-



նիստրության գիտական բժշկական խորհրդի հերթական պլենումը, որին մասնակցելու համար այստեղ էին ժամանել Միության՝ բժշկագիտության բնագավառի առաջատար մասնագետներ: Քննարկվեց «Բժշկական գիտության կառավարման ձևերի ու մեթոդների կատարելագործման ուղիները և գիտական բժշկական խորհուրդների խնդիրները՝ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո» հարցը:

Արդյունաբերության զարգացման ներկա պայմաններում առավել կարևորվում են բանվորների առողջության պահպանումը, այն ապահովող բոլոր օղակների աշխատանքի կատարելագործումը: Առողջապահական օրգանները շարունակում են ամրապնդել բուժմասերի նյութատեխնիկական բազան՝ լայնորեն օգտագործելով նաև արդյունաբերական ձեռնարկությունների կոոպերացված միջոցները: Բարելավվել է բանվորների դիսպանսեր սպասարկումը, նվազել նրանց հիվանդացությունը: Հատուկ ուշադրություն է նվիրվում արտադրամասային բժիշկների աշխատանքային պայմանների բարելավմանը, նրանց մասնագիտական պատրաստականության բարձրացմանը:

Ուշադրության կենտրոնում են գյուղական բնակչության առողջության պահպանման հարցերը: Առողջապահական մարմինների առաջնահերթ խնդիրն է դարձել բժշկական ամբուլատոր-պոլիկլինիկական ստացիոնար, մասնագիտացված օգնությունը հողի աշխատավորին մոտեցնելը: Ընթացիկ հնգամյակում զգալի գործ է արվում ամրապնդելու համար շրջանային կենտրոնական հիվանդանոցները, ընդլայնելու բժշկական ամբուլատորիաների ցանցը, ծավալելու նրանց գործունեությունը հիմնականում կանխարգելիչ լայն միջոցառումների անցկացման, հիվանդությունների վաղ և ակտիվ հայտնաբերման ուղղությամբ: Այդ իմաստով կոնսուլտատիվ օգնության լավագույն ձև է «Առողջապահության շաբաթ»-ի կազմակերպումը, որ իրականացվել է Արարատի, Նաիրիի, Ստեփանավանի, Գուգարքի շրջաններում. այս օգտակար ձեռնարկումը պետք է տարածել նաև հանրապետության այլ շրջաններում:

Հիվանդությունների կանխարգելիչ միջոցառումների կոմպլեքսում մեծ է բնակչության շրջանում բժշկական գիտելիքների պրոպագանդման նշանակությունը: Մեր հանրապետությունում այդ կարևոր խնդրով հիմնականում զբաղվում են «Գիտելիք» ընկերության քաղաքային ու շրջանային կազմակերպությունները և, հարկ է ասել, որ շնորհակալ գործ է կատարվել այդ բնագավառում:

Ընկերությունը բժշկական գիտելիքների պրոպագանդման գլխավոր խնդիրը համարել ու համարում է բժշկագիտության և առողջապահության վերաբերյալ կուսակցության ընդունած որոշումների խոր ու համակողմանի պարզաբանումը. կյանքից առնված ցայտուն օրինակներով ցույց տալ սովետական առողջապահության առավելությունները՝ պետական հովանավորվածությունը, պլանային զարգացումը, ախտականխիչ նպատակամետությունը, համընդհանուր և անվճար բուժօգնությունը, առողջության պահպանման հարցերում ժողովրդի լայն մասնակցությունը, կուսակցության ու կառավարության մշտական հոգատարությունը սովետական ժողովրդի առողջության պահպանման և բուժսպասարկման որակի բարձրացման նպատակով:

Կարևոր նշանակություն ունի հիվանդությունների դեմ մղվող պայքարում, առողջության հետագա ամրապնդման, երկարակեցության և կենսունակության բարձրացման նոր մեթոդների և ձևերի մշակման գործում սովետական բժշկության նվաճումների լուսաբանումը: Մեր ընկերության խնդիրն է նաև աշխատանքի, հանգստի և ֆիզիկական զբաղվածության սկզբունքների պրոպագանդումը, հասարակական ու անհատական հիգիենայի, ախտականխիչ կանոնների պարզաբանումը, ակտիվ պայքարը տնաբուժության, հեքիմության դեմ: Բժշկական գիտության և պրակտիկայի, առաջավոր փորձի և աշխատանքի գիտական կազմակերպման նվաճումները մատչելի դարձնել ո՛չ միայն բժշկական անձնակազմին և առողջապահության աշխատողներին, այլև ազգաբնակչության լայն խավերին: Բնակչությունը զինվելով անհրաժեշտ գիտելիքներով՝ ակտիվ կմասնակցի ախտականխիչ և առողջարարացման համաժողովրդական միջոցառումների իրականացմանը:

Հակաալկոհոլային թեմային նվիրված դասախոսություններում և զրույցներում հետևողական և համոզիչ վեր հանել այն աղետաբեր վնասը, որ պատճառում է հարբեցողությունը մարդկանց առողջությանը, երեխաների և դեռահասների դաստիարակությանը, արտադրությանը և ողջ հասարակությանը: Այս ամենի կատարումն է համարում իր ամենօրյա պարտականությունը հանրապետական «Գիտելիք» ընկերությունը, ուր այսօր ներգրավված են տարբեր պրոֆիլների մոտ 1.600 մասնագետներ: Նրանցից 688-ը Երևան քաղաքում են, 839-ը՝ հանրապետության մյուս քաղաքներում և շրջաններում: Այդ մասնագետների կողմից 1982 թ. կարդացվել է տարբեր թեմաներով 5.620 դասախոսություն, որոնցից 2.000-ը՝ Երևան քաղա-

քում: Դասախոսական պրոպագանդան Երևանում հիմնականում տարվում է խոշոր արդյունաբերական օբյեկտներում, տարբեր հիմնարկություններում ու գերատեսչություններում, բարձրագույն ուսումնական հաստատություններում ու գիտահետազոտական ինստիտուտներում, ինչպես նաև զորամասերում: Գյուղական վայրերում այն տարվում է հիմնականում կոլտնտեսություններում ու սովխոզներում, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկություններում:

Հայաստանի քաղաքներում ու գյուղական շրջաններում դասախոսություններով հանդես են եկել ՀՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչության առընթեր բժշկական գիտելիքների պրոպագանդայի գիտամեթոդական խորհրդի անդամները (պրոֆ. Ա. Լ. Միքայելյան, պրոֆ. Գ. Ա. Ղազարյան, դոցենտ Ռ. Ա. Գրիգորյան, բժշկ. գիտ. թեկնածու Ա. Ա. Մաթևոսյան), անհրաժեշտ օգնություն ցույց տվել տեղի բժիշկ դասախոսներին:

Սովետական բժշկագիտության նորագույն նվաճումների լուսաբանման գործում հաճախ ներգրավվել են և «Գիտելիք» համամիութենական ընկերության ներկայացուցիչներ, ինչպես Երևան քաղաքում, նույնպես և հանրապետության շրջաններում: Նրանց օգնությամբ կարդացվել են մի շարք դասախոսություններ:

Անհրաժեշտ է նշել, որ բժշկական գիտելիքների պրոպագանդման գործը համեմատաբար լավ է կազմակերպված Ազիզբեկովի շրջանում, որտեղ անցյալ տարի կարդացվել է 279 դասախոսություն (տվյալ շրջանում այդ պայմանավորված է «Ջերմուկ» առողջարանում հանգստացողների համար կարդացված դասախոսությունների մեծ թվով), Լենինականում՝ 434, Կիրովականում՝ 284, Ախուրյանում՝ 132 դասախոսություն:

Հարկ է նկատել, որ այդ շրջաններում կուսակցական ու սովետական մարմինները համակողմանի օգնում են «Գիտելիք» ընկերության տեղական կազմակերպություններին: Սակայն ունենք ընկերության շրջանային կազմակերպություններ, որտեղ դեռևս անբավարար է բժշկական գիտելիքների պրոպագանդման վիճակը: Արթիկի շրջանում անցած մեկ տարում կարդացվել է ընդամենը 12 դասախոսություն, Մասիսի շրջանում՝ 9, Արագածի՝ 30, Գորիսի՝ 24, Մեղրու շրջանում՝ 8: Այս փաստերն անհանգստացնող են: Այդ շրջանների «Գիտելիք» ընկերության կազմակերպությունների վարչությունները պետք է օգտագործեն տեղում աշխատող տարբեր պրոֆիլի մասնագետ-բժիշկներին ու կենսաբաններին: Կարծում ենք, որ գործի պատշաճ կազմակերպման դեպքում կարելի է ամենուր բարձր հիմքերի վրա դնել բժշկական գիտելիքների պրոպագանդումը:

Նկատենք նաև, որ մի շարք շրջաններում բժիշկ-մասնագետները ինչպես հարկն է չեն ընդգրկված դասախոսական աշխատանքում: Արտաշատում՝ հանրապետության ամենամեծ շրջաններից մեկում, որտեղ աշխատում են տարբեր մասնագիտությունների ավելի քան 100 բժիշկներ, կա ընդամենը մեկ բժիշկ-դասախոս, Արագածի շրջանում՝ 2, Կալինինոյի՝ 8, Մասիսի՝ 9, Սևանի շրջանում՝ 9 դասախոս: Մինչդեռ վերոհիշյալ շրջանները լրիվ ապահոված են բժշկական կադրերով:

Մեր քաղաքներում ու շրջաններում կան համարյա բոլոր պրոֆիլների բարձրորակ բժիշկ-մասնագետներ, միայն պետք է ավելի եռանդուն օգտագործել նրանց հնարավորությունները, մասնակից դարձնել նրանց աշխատավորների շրջանում բժշկական գիտելիքների տարածմանը:

Այժմ հանրապետության «Գիտելիք» ընկերության վարչության բժշկական գիտելիքների պրոպագանդայի բաժանմունքում ներգրավված են Հայկական ՍՍՀ ԳԱ 5 ակադեմիկոս և թղթակից-անդամ, բժշկական գիտությունների 40 դոկտորներ, բժշկական գիտությունների 25 թեկնածուներ, որոնց խնդիրն է բարձրորակ դասախոսություններով հանդես գալ աշխատավորների առաջ, անհրաժեշտ գիտամեթոդական օգնություն ցույց տալ տեղի դասախոսներին:

Ժողովրդի առջև հանդես եկող առողջապահության ճակատի աշխատողները, ելնելով կուսակցության արդի պահանջներից, այսուհետ ևս ջանք ու եռանդ չեն խնայի բնակչության շրջանում տարածելու բժշկական գիտելիքները, նպաստելու ժողովրդի առողջության պահպանության գործի բարելավմանը: Երբեք չպետք է մոռանալ, որ անվճար առողջապահության՝ աշխարհում առաջին մեր համակարգի դեմոկրատական բնույթը հույժ պարտավորեցնող է: Հարկ է ամեն ինչ անել, որ ինչպես բուժսպասարկման, առողջապահության, նույնպես և բժշկական լուսավորության, բժշկական գիտելիքների տարածման գործը կազմակերպվի պատշաճ, զարգացած սոցիալիզմի պահանջներին համապատասխան մակարդակով:

**Վ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**Պրոֆեսոր, ՀՍՀ «Գիտելիք» ընկերության վարչությանն առընթեր բժշկական գիտելիքների պրոպագանդայի բաժանմունքի նախագահ**



# ԱՄՐԱՊՆԴԵԼ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՏԱԿԱՐԱՐՈՒՄՆԵՐԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՄԱՆ և միջճյուղային տնտեսական կապերի բարդացման պայմաններում յուրաքանչյուր կոլեկտիվի աշխատանքի վերջնական արդյունքները ավելի ու ավելի են պայմանավորվում հարակից ձեռնարկությունների մատակարարումներով: Նույնիսկ մեկ ճյուղում կամ ձեռնարկությունում արտադրանքի մատակարարումների ձախողումը, որպես կանոն, խախտում է փոխկապակցված գործարանների ու ֆաբրիկաների ամբողջ շղթայի աշխատանքի ռիթմը, իջեցնում արտադրության արդյունավետությունը:

ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց զարգացնել ձեռնարկությունների, մատակարարող մարմինների, տրանսպորտային և մյուս կազմակերպությունների արտադրական փոխհարաբերությունների առաջավոր ձևերն ու մեթոդները, ուժեղացնել դրանց փոխադարձ նյութական պատասխանատվությունը արտադրանքի մատակարարումների առաջադրանքների ու պայմանագրային պարտավորությունների ժամանակին ու բարձրորակ կատարման համար: Կուսակցության Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը որոշակիությամբ նշեց, որ ամբողջ տնտեսական մեխանիզմի լավ կարգավորված անխափան աշխատանքի ապահովումը թե՛ այսօրվա պահանջմունքն է և թե ապագայի ծրագրային խնդիրը: Պլենումը պահանջեց ամրապնդել պետական և պլանային կարգապահությունը, ռացիոնալ օգտագործել հիմնական արտադրաֆոնդերը, նյութական ու աշխատանքային ռեսուրսները, լայնորեն ներդնել տնտեսավարման ինտենսիվ եղանակները:

Մինչդեռ տնտեսական շատ ղեկավարներ, կուսակցական կազմակերպություններ շարունակում են աշխատել հին ոճով, երբեմն մի կերպ ապահովելով համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի իրացման պլանի կատարումը՝ անտեսելով տեսականին, խախտելով իրենց իսկ կնքած և օրենքի ուժ ստացած պայմանագրային պարտավորությունները, որի հետևանքով խափանվում է տնտեսական կապերում ներգրավված մյուս ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը, ձախողվում պետական առաջադրանքների կատարումը:

Ժողովրդատնտեսական այս կարևոր խնդիրներին էր նվիրված մեր ամսագրում զետեղված՝ Կ. Պապյանի **Պայմանագրային կարգապահության ամրապնդման համար** հոդվածը («Լենինյան ուղիով», № 7, 1982 թ.), որը լայն արձագանք է գտել: Հանրապետության մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ, միավորումներ ու ձեռնարկություններ խմբագրությանը գրած նամակներում նշում են, որ պայմանագրային պարտավորությունների խախտումների վերաբերյալ հոդվածում բերված փաստերը համապատասխանում են իրականությանը: Ամսագրի բարձրացրած հարցերը ժամանակին են և հրատապ: Կուսակցական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները գործնական միջոցառումներ են մշակում և իրականացնում հասարակական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, բոլոր օղակներում պետական ու աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և պայմանագրային պարտավորությունները կատարելու համար:

ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության կոլեգիան ամեն եռամսյակ քննարկում է արտադրության և մատակարարումների վիճակը, բացահայտում առաջադրանքների թերակատարման պատճառները: Մինիստրության հաշվողական կենտրոնը մատակարարումների առաջադրանքի կատարման ամենօրյա և ամենամսյա օպերատիվ հաշվառում է անցկացնում: Դա հնարավորություն է ընձեռում ժամանակին ձեռնարկելու անհրաժեշտ միջոցներ՝ բացահայտված թերությունները շտկելու համար: Թողարկվող արտադրանքի որակի հարցը նույնպես գտնվում է մինիստրության ուշադրության կենտրոնում: Պար-

բերաբար քննարկվում են առանձին ձեռնարկություններում արտադրանքի որակի վիճակը, «Ն» ինդեքսով և որականիշով արտադրանքի թողարկման ավելացման, բարձրորակ և գեղեցիկ ապրանքների նկատմամբ ազգաբնակչության պահանջարկն առավել լիովին բավարարելու խնդիրները:

Հանրապետության սննդարդյունաբերության մինիստրության «Հայաստանի հանքային ջրեր» և «Հայծխախոտարդ» արտադրամիավորումներում պայմանագրային պարտավորությունների խախտման ու մեծ գումարով տուգանքների վճարման հիմնական պատճառների թվում, հումքի մատակարարման գործում տեղ գտած խախտումներից բացի, պլանային առաջադրանքների թերկատարումն է, ու երկաթուղային վագոնների անկանոն մատակարարումը: 1982 թ. մինիստրությունը ձեռնարկել է մի շարք միջոցառումներ արտադրության պլանային առաջադրանքների կատարման և պայմանագրային կարգապահության խախտումներն ու դրանց դիմաց տուգանքների վճարումները նվազագույնի հասցնելու նպատակով: Ձեռնարկված միջոցների շնորհիվ սննդարդյունաբերության ձեռնարկությունները 1982 թ. պլանից ավելի առաքել են 24, այդ թվում հանրապետության առևտրական կազմակերպություններին՝ 7,6 մլն ռուբլու արտադրանք:

Մեր ամսագրում տպագրված հոդվածը քննարկվել է Երևանի «Էլեկտրաշարժիչ» գործարանի կուսբյուրոյի ընդլայնված նիստում: Քննարկումը ցույց է տվել, որ չնայած գումարային առումով կատարվել են 1982 թ. առաջադրանքները, սակայն թերակատարվել են պլաններն ըստ տեսականու, որի հետևանքով գործարանը տարբեր ձեռնարկությունների մուծել է շուրջ 35 հազար ռուբլու տուգանք: Պայմանագրային պարտավորությունների խախտման հիմնական պատճառն այն է, որ Լենինականի «Մագնիսահաղորդակ» գործարանից ստատորի ծրարները ստացվել են շատ անկանոն և առանց տիպաչափերի պահպանման, որի հետևանքով մի տեսակի շարժիչներից շատ է արտադրվել, մյուսից՝ քիչ: Լուրջ թերություններ են բացահայտված նաև արտադրության կազմակերպման և արտադրանքի իրացման աշխատանքներում, որի համար համապատասխան ղեկավար աշխատողներ ենթարկվել են կուսակցական տույժի: 1983 թ. առաջին եռամսյակի արդյունքներով նկատելիորեն բարելավվել է պայմանագրային պարտավորությունների կատարման վիճակը: Իրացման պլանն ըստ պատվիրատուների կատարվել է 98,6 տոկոսով, առանց ֆոնդերի առաքումներ չեն եղել: Կուսբյուրոն հաստատել է պայմանագրային պարտավորությունների կատարման ուղղությամբ մշակված միջոցառումների պլան:

Հոդվածը քննարկվել է նաև Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարանի կոլեկտիվի ժողովում: Արտադրանքի որակի բարձրացման և պայմանագրային պարտավորությունները բոլոր ցուցանիշներով կատարելու նպատակով մշակվել և իրականացվում են կազմակերպական-տեխնիկական մի շարք միջոցառումներ: Արտադրության մեջ ներդրվել են նոր կոնստրուկցիաներ, բարձր արտադրողական նոր ավտոմատներ, հոսքագծեր ու սարքեր:

Երևանի ոսկերչական ֆաբրիկայի կուսբյուրոյի ընդլայնված նիստում քննության է առնվել պետական պլանային առաջադրանքների և թողարկվող արտադրանքի որակի բարելավման նպատակով ադմինիստրացիայի կատարած աշխատանքը: Հարցի նախապատրաստման ու քննարկման ընթացքում բացահայտվեցին մի շարք լուրջ թերություններ: Գործարանը պատշաճ կերպով նախապատրաստված չէր շուկայի պահանջարկի կտրուկ փոփոխմանը, որը լրջորեն անդրադարձել է պլանային առաջադրանքների կատարման և թողարկվող արտադրանքի որակի վրա: Կուսբյուրոն կուսակցական պատասխանատվության է ենթարկել գործարանի մի քանի ղեկավարների: Ընդունված որոշման մեջ արտացոլվել են կազմակերպական, տեխնիկական մի շարք միջոցառումներ: Դրանց թվում կարևոր է արտադրության վերակառուցումը լարված պլանների կատարման պայմաններում: Կուսբյուրոն, ի կատարումն ընդունած որոշման, հաջորդ ամսվա ժողովի քննարկման առարկա դարձրեց գործարանի տեխնիկական ծառայության գործունեությունը՝ թողարկվող արտադրանքի տեսականու ընդլայնման և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ասպարեզում: Սույն թվականի մայիսին ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի բյուրոն, անդրադառնալով ձեռնարկության գործունեությանը, կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց գործարանի դիրեկտոր Կ. Իսկանդարյանին: Նա ազատված է դիրեկտորի պարտականություններից: Պայմանագրային պարտավորությունների կատարումը չապահովելու համար խիստ տույժեր ստացան նաև գործարանի այլ ղեկավարներ:

Վերոհիշյալ հոդվածի հրապարակումից հետո, Երևանի «Էլեկտրասալարատ» գործարանում ուսումնասիրվել է պայմանագրային պարտավորությունների կատարման վիճակը: Պայմանագրերի խախտումների համար մեղավոր պաշտոնական անձինք ենթարկվել են



վարչական պատասխանատվության: Արտադրանքի մատակարարումների գործը բարելավելու նպատակով ձեռնարկվել են մի շարք կազմակերպական և տեխնիկական միջոցներ: Գործարանի իրացման բաժինը վերակառուցվել է պլանավորման և պատրաստի արտադրանքի իրացման բաժնի: Դրանով ուժեղանում է իրացման ծառայության կապը արտադրության հետ: Նշված բաժինն անմիջականորեն մասնակցում է առաքվող իրերի արտադրության պլանավորմանը, որից հետո միայն այդ պլանները հանձնարարվում են արտադրամասերին: Իրացման նոր բաժնին վերապահված է նաև արտադրանքի թողարկման և պայմանագրային պարտավորությունների կատարման նկատմամբ վերահսկողության ֆունկցիա: Պատրաստի արտադրանքի բեռնումը և փոխադրումը ժամանակին կատարելու նպատակով ստեղծված է տրանսպորտային-բեռնող արտադրամաս: Ներդրվում է առաքման բոլոր պրոցեսների մեքենայական հաշվարկման նոր տեխնոլոգիա:

«Երազ» ավտոմոբիլային արտադրամիավորումում նույնպես մշակված են կոնկրետ միջոցառումներ արտադրանքի թողարկման և մատակարարումների առաջադրանքները կատարելու համար: Ներդրվում է դետալների և հանգույցների արտադրության պլանավորման ու հաշվառման կատարելագործված համակարգ, ինչպես նաև արտադրության կազմակերպման ու խթանման այլ առաջավոր ձևեր, որոնք ապահովում են արտադրության պրոցեսի կայուն ռիթմը: Լայնորեն ներդրվում է աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային եղանակը: Այժմ այդպիսի բրիգադների թիվը հասել է 38-ի, 1982 թ. վերջերի 4-ի փոխարեն: Մի շարք միջոցառումներ են իրականացված հիմնական արտադրամասերի (հավաքման, թափքի, նախապատրաստական-դրոշմման) ղեկավար աշխատողների տեղաբաշխման և պատասխանատվության բարձրացման նպատակով: Այդ աշխատանքն այժմ շարունակվում է միջին օղակում: Լուրջ ուշադրություն է նվիրվում արտադրական և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդմանը, աշխատաժամանակն արդյունավետ օգտագործելուն: Նշված արտադրական և կազմակերպական միջոցառումների կոմպլեքսի հետևողական իրականացման շնորհիվ ավտոմեքենաշինարարները 1983 թ. առաջին եռամսյակի արտադրանքի թողարկման պլանը կատարել են 101,7, իսկ մատակարարումների պարտավորությունները՝ 100,3 տոկոսով:

«Պոլիվինիլացետատ» արտադրամիավորումում բարելավվել է աշխատանքը արտադրանքի իրացման առաջադրանքի և պայմանագրային պարտավորությունների հաջող կատարման համար: Կատարելագործվում է առաքման ծառայությունների գործունեությունը: Կարգավորվում են վագոնների, ցիստեռնների, կոնտեյներների առանձնացման պլանավորումն ու տնտեսական հիմնավորումը: Բարելավվում է պահեստային տնտեսությունը: Այնուամենայնիվ, միավորման կոլեկտիվին դեռևս չի հաջողվել լիովին հաղթահարել արտադրության և իրացման առաջադրանքների կատարման ասպարեզում առկա բացթողումները, որոնք հիմնականում հումքի և նյութերի անբավարար մատակարարումների հետևանք են: Միության մի շարք միավորումներից ու ձեռնարկություններից բացի, մատակարարումները ձախողում է նաև Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը:

Հանրապետության արդյունաբերության աշխատողները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը տարեկան պլանի կատարման ու գերակատարման, աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման համար, ժամկետից շուտ կատարեցին արտադրանքի իրացման և կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի արտադրության ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը: Պլանից ավելի արտադրվել և իրացվել են տասնյակ միլիոնավոր ռուբլիների սարքեր, ավտոմատացման միջոցներ ու դրանց պահեստամասեր, հաշվողական տեխնիկայի միջոցներ, ծծմբաթթու, հանքային պարարտանյութ, ժողովրդական սպառման շատ ապրանքներ, այդ թվում՝ գուլպեղեն ու կարվածքեղեն, կաշվե կոշիկ, պանիր, պահածո, հրուշակեղեն և այլ ապրանքներ:

Դրա հետ մեկտեղ պայմանագրային պարտավորությունների հաշվառմամբ արտադրանքի իրացման առաջադրանքները թերակատարված են: Հանրապետության բազմաթիվ ձեռնարկություններ չեն մատակարարել մի քանի միլիոն ռուբլու արտադրանք: Շատ միավորումներ ու ձեռնարկություններ չնայած կատարել են արտադրանքի թողարկման և իրացման պլանները, սակայն խախտել են իրենց պայմանագրային պարտավորությունները:

Փաստերը վկայում են, որ առանձին մինիստրություններում ու ձեռնարկություններում շարունակում են թերագնահատել պայմանագրային կարգապահության նշանակությունը: Կուսակցությունը խնդիր է դնում կատարելագործել մատակարարողների և սպառողների տնտհաշվարկային հարաբերությունները ու

